ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 4
ԱՊՐԻԼ
1960 Թ.



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





## СОДЕРЖАНИЕ



---





# ԼԵՆԻՆԻԶՄԸ ՄԵՐ ԴՐՈՇՆ Է

Իննսուն տարի առաջ, մերձվոլգյան հինավուրց Սիմբիրսկ (Ուլյանովսկ) քաղաքում ծնվեց ռևոլյուցիայի մեծագույն առաջնորդ և մտածող, բոլոր աշխատավորների խոհերի և իղձերի արտահայտիչ, Սովետական Միության Կոմունիստական հզոր պարտիայի և աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր ԼԵՆԻՆԸ։

Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան օրը սովետական մարդիկ և սոցիալիստական բոլոր երկրների ժողովուրդները դիմավորում են քաղաքական ու աշխատանքային աննախընթաց խանդավառության պայմաններում։ Մեզ հետ միասին մեծ Լենինի ծննդյան տարեդարձը նշում են ամբողջ աշխարհի առաջադեմ մարդիկ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX և XXI համագումարների պատմական որոշումները, որոնց մեջ ստեղծագործաբար զարգացվեց մարքս-լենինյան տեսությունը, սովետական մարդկանց զինեցին արդի դարաշրջանի խոր ըմբռնումով։ Հանճարեղ մեծ Լենինի իմաստուն պատգամները մեր ժողովրդին նորանոր սխրագործությունների են կոչում ամենաարդարացի հասարակարգի՝ կոմունիստական հասարակարգի կառուցման համար։

Մեծ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Բուլղարիայի, Ռումինիայի և կապիտալիզմի շղթաները թոթափած սոցիալիստական մյուս երկրների ազատ ժողովուրդներն արագ զարգացնում են իրենց էկոնոմիկան, գիտությունը, կուլտուրան և հաջողությամբ կառուցում են սոցիալիզմ։

Իր դարն ապրող կապիտալիզմի նույնիսկ ամենաթունդ երկրպագուներն այժմ ստիպված են խոստովանել սոցիալիստական հասարակարգի առավելությունները կապիտալիստականի նկատմամբ։ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման հսկայական տեմպերը շփոթմունք են առաջացրել կապիտալիզմի ջատագովների շրջաններում և նրանց տագնապահար արել։ Նրանք ավելի ու ավելի շատ են վախենում երկու սիստեմների խաղաղ մրցության՝ ընկեր Խրուշչովի ազնիվ ու հստակ կոչից։ Երիտասարդ և ուժերով լեցուն սոցիալիստական հասարակարգը արդեն կրնկակոխ հետապնդում է կապիտալիզմին։ Հոյակապ յոթնամյա պլանը կկատարվի ժամկետից շուտ։ Մոտակա տարիներում Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով կհասնի ու կանցնի ԱՄՆ-ից և կդառնա աշխարհի ամենաբարձր կենսամակարդակ ունեցող երկիրը։

Մեր ապրած դարը, հիրավի, դարձավ մարքսիզմ-լենինիզմի հաղթանակի դարաշրջան: Լենինի հանճարեղ գաղափարներն այժմ ավելի խոր են տոգորում ժողովուրդներին, նրանց նոր ուժեր են տալիս և ոգեշնչում իմպերիալիզմի ու գաղութակալության դեմ մղվող վճռական պայքարում՝ հանուն խաղաղ ու երջանիկ կյանքի:

Աշխարհում առաջին, լենինյան տիպի Սովետական Սոցիալիստական պետության օրինակով արդեն ավելի քան մեկ միլիարդ մարդ հաստատ ու վճռականորեն կանգնել են Լենինի հաղթական դրոշի ներքո և հաջողությամբ սոցիալիզմ ու կոմունիզմ են կառուցում:

***

Տակավին պատանեկան տարիներին, որոշելով իր կյանքի ուղին, Լենինն ասել է, որ իր առջև կա մի ճանապարհ՝ ռևոլյուցիոն պայքարի ճանապարհը: Եվ նա հաստատ ու աներեր, մինչև իր սքանչելի ու պայծառ կյանքի վերջը, ընթացավ այդ ճանապարհով: Լենինը մարմնավորում էր մեր ժամանակի ամենաառաջավոր՝ բանվոր դասակարգի մարտական ոգին, նրա ստեղծագործական ուժերն ու կազմակերպվածությունը: Նրա անվան հետ է կապված համաշխարհային պատմության նոր դարաշրջանը՝ իմպերիալիզմի կործանման և սոցիալիզմի հաղթության դարաշրջանը:

Լենինը, հենվելով իր ժամանակի գիտական նվաճումների վրա, ստեղծագործաբար զարգացրեց մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը՝ փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, գիտական կոմունիզմի տեսությունը: Նա Ռուսաստանի բանվոր դասակարգին և միջազգային ամբողջ բանվորական շարժումը զինեց սոցիալիստական ռևոլյուցիայի նոր տեսությամբ, է՛լ ավելի զարգացրեց պրոլետարիատի դիկտատուրայի մարքսյան ուսմունքը, մեր պարտիային և սովետական ժողովրդին տալով սոցիալիզմի կառուցման մեծ ծրագիր:

Բուրժուազիայի գաղափարախոսները, ժամանակակից ռևիզիոնիստները նենգաբար շարունակում են հերքել մարքսիզմը, պնդելով, թե այժմ այն հնացել է, որ կապիտալիզմն իբր թե արմատապես փոխվել է: Բուրժուազիայի այդ երդվյալ ջատագովները լռության են մատնում այն փաստը, որ Մարքսից հետո ապրել և ստեղծագործել է ամենահետևողական մարքսիստը՝ մեծ Լենինը, որը ստեղծագործաբար զարգացրել և հարստացրել է մարքսիզմը: Մարքսիզմ-լենինիզմը երբեք քարացած չի եղել. այն միշտ զարգացել ու ավելի հարստացել է նոր փորձով, նոր ընդհանրացումներով: Այդ գործում մեծ է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և աշխարհի բոլոր կոմունիստական պարտիաների ծառայությունը, որոնք նոր պայմաններում շարունակում են զարգացնել լենինիզմը:

Ամեն մի տեսության վեհությունն ու ճշմարտացիությունը ստուգվում է կյանքով, համաշխարհային-պատմական պրակտիկայով: Աշխարհում չկա մի այլ տեսություն, որն այնպես փայլուն կերպով հաստատվի պրակտիկայով, ինչպիսին մարքսիզմ-լենինիզմն է: Սոցիալիստական լագերի երկրները, կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ առաջնորդվելով Լենինի ուսմունքով, հաստատ ու վստահորեն ընթանում են վերընթաց գծով: Կոմունիզմն ստատ-



հայտում է աշխարհի բոլոր մարդկանց գերակշռող մեծամասնության արմատական շահերը: Ահա թե ինչու սոցիալիզմի և կոմունիզմի փառքը ավելի ու ավելի պայծառորեն է վառվում, և մասսաները հաղթականորեն ընթանում են դեպի կոմունիզմ: Աշխարհում չկա այնպիսի ուժ, որը կարողանար փոխել հասարակական զարգացման օրենքները և կանգնեցնել ժողովուրդների առաջընթացը դեպի սոցիալիզմ, դեպի կյանքի կոմունիստական ապրելակերպը:

Կյանքը լիովին հաստատեց իմպերիալիզմի դարաշրջանի լենինյան հոյակապ վերլուծությունը, բանվոր դասակարգի պայքարի՝ Լենինի կողմից մշակված ստրատեգիայի ու տակտիկայի, կապիտալիզմի անհավասարաչափ զարգացման նրա հայտնագործած օրենքների ճշտությունը, սկզբում մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության տեսությունը: Լենինիզմն ամբողջությամբ վերցրած իր կենսականությունն ապացուցեց ՍՍՌՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում սոցիալիզմի հաղթական կառուցման փորձով:

Արդի բուրժուազիայի գաղափարական սնանկությունը դրսևորվում է նրա «ուժի դիրքի» կոպիտ և անմիտ քաղաքականության մեջ, որը մի ավելորդ անգամ վկայում է նրա բարոյական ու գաղափարական անկման մասին: Ժամանակակից բուրժուազիայի այդպիսի քաղաքականությունը բացատրվում է հենց նրա թուլությամբ և հաղթականորեն մոտեցող կոմունիզմի հանդեպ ունեցած վախով:

***

ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները լենինիզմի մեծ գաղափարների կենդանի մարմնացումն են: ՍՄԿՊ Կենտկոմը ելնելով լենինիզմի սկզբունքներից, մեր օբյեկտիվ հնարավորությունների ճշգրիտ վերլուծմամբ մշակեց սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ծավալուն ծրագիրը: Ռևոլյուցիոն տեսության և պրակտիկայի սերտ կապի օրինակ են հանդիսանում պարտիայի XXI համագումարում Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումը և համագումարի որոշումները, որտեղ խոր ու բազմակողմանի կերպով, գիտականորեն հիմնավորված են կոմունիզմի կառուցման կարևորագույն պրոբլեմները և իրենցով նշանավորում են արդի պայմաններում լենինիզմի հետագա ստեղծագործական զարգացումը: Պարտիայի XXI համագումարը մեր ժողովրդի ուշադրությունը կենտրոնացրեց առաջին հերթին, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, արտադրողական ուժերի հզոր աճի և աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա:

Կոմունիստական հասարակարգի կառուցման հոյակապ յոթնամյա պլանը մարմնավորում է պարտիայի լենինյան գլխավոր գիծն արդի էտապում: Յոթնամյա պլանում նախատեսվում է երկրի արտադրողական ուժերի բազմակողմանի զարգացում, արտադրության մեծ ու ներդաշնակ աճ բոլոր բնագավառներում և ամենից առաջ՝ ծանր արդյունաբերության ճյուղերում: Յոթնամյա պլանը մասշտաբների վիթխարիությամբ իրեն հավասարը չունի անցյալում, և դրա իրականացումը վճռական քայլ է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում ու կապիտալիզմի հետ տնտեսական խաղաղ մրցության մեջ ՍՍՌՄ-ի վճռական ճաղթանակն ապահովելու գոր-

ծում: Առաջիկա մի քանի տարում արագ տեմպերով կզարգանան սև ու գունավոր մետալուրգիան, նավթի ու գազի արդյունաբերությունը, էներգետիկան, մեքենաշինությունը և տրանսպորտը: Յոթնամյա պլանում մեծ նշանակություն է տրվում երկրի էլեկտրիֆիկացման հետագա զարգացմանը: Մինչև 1965 թվականը նոր էլեկտրակայանների կարողությունը կկազմի շուրջ 60 միլիոն կիլովատ: Դա մոտավորապես հավասար է 100 Դնեպրոգէսի կարողության: Էլեկտրիֆիկացման հեռանկարային պլանը կոմունիզմի կառուցման բաղկացուցիչ մասն է: Մենք թևակոխել ենք զարգացման այնպիսի ստադիա, որը վճռական կլինի երկրի համատարած էլեկտրիֆիկացման լենինյան մեծ գաղափարների իրականացման գործում:

ՍՍՌՄ-ում հիանալի կենսագործվում են երկրի էլեկտրիֆիկացման վերաբերյալ Վլադիմիր Իլյիչի պատգամները: Էներգետիկ շինարարության հարցերին նվիրված 1959 թվականի նոյեմբերին կայացած համամիութենական խորհրդակցությունում ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Այն, ինչով ապրում էր Լենինը, ինչ նա պլանավորում էր, ինչի մասին նա երազում էր, այժմ մեր ժողովուրդը, պարտիան հաջողությամբ կենսագործում են: Մշակելով ԳՈԷԼՌՈ-ի պլանը, Վլադիմիր Իլյիչը երազում էր մեր Հայրենիքի ապագայի մասին, կոմունիզմի մասին, նա տեսնում էր շատ հեռուն, նույնիսկ քայքայվածության և սովի պայմաններում նա շատ համարձակ ու վիթխարի պլան էր առաջադրում: Այն ժամանակվա համեմատ դա բոլորովին աներևակայելի էր: Այնպիսի ֆանտաստիկ գրող, ինչպիսին էր Հերբերտ Ուելսը, Լենինին անվանեց երազող, ոչ ռեալ մտածող մարդ: Իսկ ի՞նչ կասեր այժմ Ուելսը»:

Այո, Լենինի մեծ գաղափարները, երկրի էլեկտրիֆիկացման նրա հանճարեղ պլանը, կոմունիզմի կառուցման պլանը լենինյան պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ իրագործվում են սովետական ժողովրդի կողմից:

«Սովետական իշխանություն՝ պլյուս էլեկտրիֆիկացիա՞: Որպիսի՞ լենինյան պարզություն ու հստակություն»,—ասում է ընկեր Խրուշչովը երկրի էներգետիկների մոտ ունեցած իր ելույթում: Լենինյան լոզունգի առաջին մասը՝ Սովետական իշխանությունը, արդեն վաղուց լուծված հարց է: Մենք ունենք իսկական ժողովրդական, ամենաամուր իշխանությունը: Այժմ աշխարհի ամբողջ առաջադեմ մարդկությունը համոզված է, որ Սովետական իշխանությունը քաղաքական կառուցվածքի առավել լավագույն ձև է, մի այնպիսի հասարակություն, որն ամենալայն ասպարեզ է տալիս աշխատավորների ստեղծագործական ուժերի զարգացման համար, նոր կյանքի կառուցման, հասարակության կառավարմանը նրանց ակտիվ մասնակցության համար: Լենինի «Պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիա» բառերը, այսինքն՝ կոմունիզմի կառուցման տնտեսական կողմը, տվյալ էտապում ավելի ու ավելի վճռական նշանակություն է ստանում:

Ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը ժողովրդական տնտեսության զարգացման հիմքերի հիմքն է: Միայն էլեկտրիֆիկացման պլանի լայն իրականացման պայմաններում կարելի է հաջողությամբ և արագորեն զարգացնել ծանր ինդուստրիան, շինարարությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունը, ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրությունը, ինչպես նաև բարձրացնել արտադրության կուլտուրան և ժողովրդի կենսամակարդակը: Ահա թե ինչու յոթնամյա պլանում առանձնահատուկ



նշանակություն է տրվում երկրի էլեկտրիֆիկացման շուտափույթ զարգացման վերաբերյալ Լենինի գաղափարների իրականացմանը:

Յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի արդյունքներն ամբողջ աշխարհին ցույց են տալիս, որ սովետական մարդիկ Կոմունիստական շինարարության պլանը կկատարեն ժամկետից շուտ: Արդեն կասկածի ենթակա չէ, որ կապիտալիզմի հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ անվիճելիորեն հաղթանակ կտանի սոցիալիզմը: Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ձեռք բերած վիթխարի հաջողությունները ցույց են տալիս մարքսիզմ-լենինիզմի հզոր ուժը գործողության մեջ և հանդիսանում են մեր պարտիայի լենինյան գլխավոր գծի հաղթանակը:

Պարտիան հետևողականորեն կենսագործում է լենինյան ազգային քաղաքականությունը, որը ցայտուն դրսևորվեց Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական վերելքի, նրանց իրավունքների ընդլայնման ուղղությամբ իրագործվող կարևորագույն միջոցառումների մեջ: Այդ քաղաքականության կենսականությունը փայլուն կերպով երևում է նաև Սովետական Հայաստանի օրինակով, որը ՍՍՌՄ ժողովուրդների համերաշխ ընտանիքում մեծ հաջողություններ է ձեռք բերել էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի զարգացման բնագավառներում:

Այս տարվա նոյեմբերին մենք նշում ենք Հայաստանում Սովետական իշխանության հաստատման քառասնամյակը: Մի հայացք նետելով ռեսպուբլիկայի անցած ուղու վրա, տեսնում ենք, թե ինչպես անցյալում բոլոր տեսակետներից հետամնաց երկիրը՝ մեր պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ հսկայական առաջընթաց քայլ է կատարել և դարձել է ինդուստրիալ-կոլտնտեսային առաջավոր ռեսպուբլիկաներից մեկը՝ բարձր զարգացած գիտությամբ, տեխնիկայով և կուլտուրայով: Բավական է ասել, որ ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1959 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան 60 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ ավելի քան 500 անգամ: Այդ տարիներին ռեսպուբլիկայում արագորեն զարգացան արդյունաբերության բազմաթիվ ճյուղեր, այդ թվում՝ էներգետիկ, քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, էլեկտրատեխնիկական, սարքաշինական, հաստոցաշինական արդյունաբերությունը և այլն: Արդյունաբերության տեխնիկական բարձր մակարդակի մասին է վկայում այն փաստը, որ մեր ռեսպուբլիկան արդյունաբերական արտադրանք է արտահանում 32 երկրներ, այդ թվում 20 կապիտալիստական երկրներ:

Արագ կերպով է զարգանում նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը: Պարտիան և կառավարությունը բարձր գնահատեցին գյուղատնտեսության աշխատավորների ջանքերը, և 1958 թվականին Սովետական Հայաստանը մսի, կաթի, բրդի, պտուղների ու գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ասպարեզում ձեռք բերած նվաճումների համար արժանացավ բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի: Չտեսնված չափով աճել են գիտությունն ու կուլտուրան: Մեր խոշոր նվաճումները համոզիչ կերպով ցույց են տալիս սովետական սոցիալիստական կարգի առավելությունները, լենինիզմի կենարար ուժը և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի իմաստուն ազգային քաղաքականության հաղթանակը:

***

ՍՄԿԿ XXI համագումարը ամբողջ աշխարհին ազդարարեց սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը մեր երկրում: Այդ հաղթանակի մեջ, կոմունիզմի ուղիով մեր շեշտակի առաջընթացում մենք տեսնում ենք լենինյան անմահ գաղափարների կենդանի մարմնավորումը: Մեր ժողովրդի բոլոր նվաճումները սովետական մարդկանց հերոսական աշխատանքի արդյունքն են, Կոմունիստական պարտիայի կազմակերպող ու ղեկավար գործունեության արդյունք: Լենինիզմին հավատարիմ լինելը՝ Կոմունիստական պարտիայի ու սովետական ժողովրդի համաշխարհային պատմական հաղթանակի անսպառ աղբյուրն է: Մեր մեծ Հայրենիքը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը:

Մեր պարտիան մեծ կամ փոքր գործում առաջնորդվում է անմահ Լենինի ուսմունքով: Նա ոչ ոքի թույլ չի տվել և թույլ չի տա խախտել լենինիզմի ռևոլյուցիոն սկզբունքները: Լենինյան հետևողական քաղաքականության, բարձր գաղափարայնության, իր շարքերի համախմբվածության և աշխատավորների շահերի համար անձնվեր պայքարի շնորհիվ Կոմունիստական պարտիան նվաճել է ժողովրդական մասսաների անսահման սերն ու վստահությունը:

Լենինն ուսուցանում է, որ մասսաների փորձի ընդհանրացումը, նրանց կենսական շահերն ու պահանջները գիտենալը, մասսաների հետ մշտական շփումը պարտիայի գործունեության անհրաժեշտ պայմանն են:

Վերջին տարիներին Կոմունիստական պարտիան վերականգնեց և է՛լ ավելի զարգացրեց պարտիական կյանքի լենինյան նորմերը: Նա հետևողականորեն կիրառում է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները, պարտիական, պետական և տնտեսական շինարարության բոլոր օղակներում կոլեկտիվ ղեկավարության մեթոդը: Պարտիայի այդ միջոցառումների իրականացման շնորհիվ է՛լ ավելի է բարձրացել կոմունիստների և ամբողջ սովետական ժողովրդի ակտիվությունը:

Լենինիզմն ուսուցանում է, որ կոմունիզմին անցնելու համար պահանջվում է մեր պետության բոլոր քաղաքացիների կուլտուրայի, կրթության և գիտակցության բարձր մակարդակ: Ելնելով դրանից, մեր պարտիայի Կենտկոմը աշխատավորների Կոմունիստական դաստիարակության, նոր հասարակության մարդու ձևավորման հարցերը որպես կենտրոնական խնդիր դնում է բոլոր պարտիական, սովետական, ինչպես նաև կոմերիտական, արհմիութենական և մյուս հասարակական կազմակերպությունների առջև:

Պատահական չէ, որ յոթնամյակի առաջին տարվա պլանի կատարման համար մղվող պայքարում մեր երկրում ծնունդ է առել և լայնորեն զարգացել կոմունիստական աշխատանքի բրիգադաների շարժումը: Այդ բրիգադաների անդամները պարտավորվում են աշխատել ո՛չ միայն կոմունիստաբար, այսինքն՝ աշխատել արտադրողաբար, արմատավորել նոր տեխնիկա, տալ բարձրորակ արտադրանք, այլև ապրել կոմունիստաբար: Դա նշանակում է սովորել, անընդհատ հարստանալ նոր գիտելիքներով, բարձրացնել կուլտուրական մակարդակը և դառնալ սոցիալիստական պետության գիտակից քաղաքացի:



***

Լենինիզմը ինտերնացիոնալ մեծ ուսմունք է, որի մեջ արտահայտված են ամբողջ աշխարհի աշխատավորության իղձերն ու հույսերը: Մենք դեպի կոմունիզմ ենք գնում՝ բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդների հետ եղբայրական դաշինք կնքած: Համաշխարհային սոցիալիստական լագերը աշխատավորների պատմական մեծագույն նվաճումն է, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տրիումֆը:

Սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդները, աշխարհի բոլոր երկրների կոմունիստական, բանվորական պարտիաները սերտորեն համախմբված են Լենինի դրոշի ներքո և այդ դրոշով պայքարում են խաղաղության ու սոցիալիզմի համար: Տարեցտարի ավելի ու ավելի են աճում կապիտալիստական երկրների եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների հեղինակությունն ու ազդեցությունը: Սոցիալիստական երկրների աճի և առաջադիմության վառ օրինակով ամբողջ աշխարհի ժողովուրդները, հատկապես, գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդները, համոզվում են, թե զարգացման ինչ ուղիով իրենք պետք է ընթանան:

Իրականանում են Լենինի մարգարեական խոսքերն այն մասին, որ գաղութային և կախյալ երկրները «...կթևակոխեն այնպիսի զարգացում, որը չի կարող չհանգեցնել համաշխարհային ամբողջ կապիտալիզմի ճգնաժամին»: Խորտակվում է գաղութային խայտառակ սիստեմը: Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի նորանոր երկրներ տարեցտարի կանգնում են զարգացման նոր ուղու վրա: Մոտենում է այն ժամանակը, երբ ժողովուրդների գրոհի ներքո վերջնականապես կխորտակվեն գաղութային ռեժիմի մնացորդները: Դա կլինի մարդկության մեծ հաղթանակը իմպերիալիզմի նկատմամբ:

Առաջնորդվելով Լենինի ուսմունքով, Սովետական Միությունը եղել է և կլինի իրենց ազատության և ազգային անկախության համար պայքարող բոլոր ժողովուրդների հավատարիմ բարեկամը: Վերջերս ընկեր Ն. Ս. Խրուշչովի Հնդկաստան, Ինդոնեզիա, Բիրմա և Աֆղանստան կատարած ուղևորությունը մեկ անգամ ևս ամբողջ աշխարհին ցույց տվեց, թե այդ երկրների ժողովուրդները ինչպիսի սեր են տածում Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի ծնունդ Սովետական Միության նկատմամբ:

Վարելով լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքականություն, Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները վերջին տարիներս խոշոր հաջողություններ են ձեռք բերել խաղաղության համար մղվող պայքարում: Անչափ աճել են Սովետական Միության հզորությունն ու միջազգային հեղինակությունը: Սոցիալական տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության համար Կոմունիստական պարտիայի քաղաքականությունն ավելի ու ավելի լայն արձագանք է գտնում երկրագնդի բոլոր անկյուններում: Բուրժուական պրոպագանդիստների համար ավելի ու ավելի դժվար է դառնում զրպարտել Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը: Նույնիսկ այնպիսի երկրում, ինչպիսին ԱՄՆ-ն են, որը ժամանակակից կապիտալիզմի միջնաբերդն է, հատկապես ընկեր Խրուշչովի այցելությունից հետո ավելի պարզորոշ են դարձել սոցիալիզմի երկրի ազնիվ ձգտում-

ները և մեր պայքարը խաղաղության, բոլոր ժողովուրդների երջանկության ու բարեկեցության համար:

Կյանքը ցույց է տալիս, որ սոցիալիստական սիստեմն անխուսափելիորեն կհաղթի կապիտալիստականին, որովհետև այն զինված է և անշեղորեն առաջնորդվում է մեծ ուսմունքով՝ լենինիզմով: Ժամանակը գործում է ոչ թե կապիտալիզմի, այլ սոցիալիզմի օգտին: Ժամանակը նորի, առաջավորի՝ սոցիալիզմի դաշնակիցն է:

Ամբողջ աշխարհում կապիտալիզմի դեմ սոցիալիզմի հաղթանակի անխուսափելիության մարքս-լենինյան ուսմունքը հենվում է ո՛չ միայն արդիականության համոզիչ փաստերի, այլև համաշխարհային պատմության փորձի վրա:

Պատմական զարգացման դիալեկտիկան այնպիսին է, որ եթե կապիտալիզմն իր ժամանակին առաջադիմական հասարակական-տնտեսական ֆորմացիա էր, ապա հետագայում դարձավ հետադիմական: Մեր դարաշրջանում կապիտալիզմը վերածվել է ռեակցիոն, հակաժողովրդական ուժի, որը թշնամի է մարդկությանը: Այդ են վկայում մեկ սերնդի կյանքի ընթացքում իմպերիալիստների սանձազերծած համաշխարհային երկու պատերազմները, այդ է վկայում նաև այն, որ բուրժուազիայի առավել հետադիմական շրջանները, պատմական ոչ մի հետևություն չանելով, նախապատրաստում են երրորդ համաշխարհային պատերազմ, կազմակերպում են ռազմական բլոկներ, խոչընդոտում են զինաթափումը, փորձում պահպանել միջազգային լարվածությունը, կոնֆլիկտների նոր օջախներ են ստեղծում:

Երկու հասարակական-քաղաքական սիստեմների գոյակցության, նրանց միջև խաղաղ մրցության լենինյան տեսությունն ամենևին չի նշանակում հրաժարումն կոմունիզմից, որին պատկանում է ամբողջ աշխարհի ապագան: Կոմունիստ լենինյանները միշտ հավատարիմ կմնան իրենց ուսմունքին և աշխարհայացքին: Պայքարը իդեոլոգիաների միջև շարունակվում է:

Մեր պետության հեռատես, ճկուն և լենինյան ռեալիստական արտաքին քաղաքականությունն ապահովեց Սովետական Միության հսկայական ազդեցությունն ու հեղինակությունը միջազգային ասպարեզում: ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայում ընդհանուր և լիակատար զինաթափման մասին Սովետական Միության առաջարկները արժանացան աշխարհի բոլոր ժողովուրդների հավանությանը:

Յոթնամյա պլանի, ինչպես նաև բոլոր սոցիալիստական երկրների պլանների հաջող կատարումը էլ ավելի է հզորացնում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը: Այժմ նույնիսկ «ուժի դիրքի» քաղաքականության թունդ կողմնակիցները հասկանում են թե իրենց համար ինչպիսի վտանգ է ներկայացնում սոցիալիստական երկրների դեմ պատերազմ սանձազերծելը: Հենց դա էլ նրանց ստիպում է դիմել բանակցությունների և ավելի բանական քաղաքականություն վարել Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների նկատմամբ:

Շատ տարիներ է, ինչ մեր թշնամիները զրպարտում են կոմունիզմը և կոմունիստներին: Բայց հակառակ այդ ամենին, մարքսիզմ-լենինիզմը, կոմունիզմի գաղափարները տարածվում են ամբողջ աշխարհում: Ընկեր Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ «Ինչպես շոգ ժամանակ



արևի շողերը ցրում են գիշերային խավարը և ամեն ինչ պարզվում է, այդպես էլ կոմունիզմի գաղափարներն ավելի ու ավելի են թափանցում մարդկանց գիտակցության և սրտերի մեջ: Ինչպես արևն է միշտ ծագում Արևելքից, այդպես էլ կոմունիզմը անկասելիորեն տարածվում է երկրագնդում»:

Մեր դարաշրջանը կոմունիզմի կառուցման և մարքս-լենինյան գաղափարների հաղթանակի դարաշրջան է: Այժմ աշխարհում չկա մի այնպիսի ուժ, որը կասեցներ կոմունիզմի գաղափարների տարածումը:

Մեր պարտիայի ամբողջ պատմությունը, կոմունիստական հասարակարգի կառուցման համար աշխատավորների մղած ամբողջ հերոսական պայքարը անխզելիորեն կապված են մեծ Լենինի անվան հետ:

Միանգամայն բնորոշ է այն իրողությունը, որ ավելի քան կես դար առաջ Լենինի հայ զինակիցների հերոսական պայքարի շնորհիվ հայ աշխատավորությունը ներգրավվեց ռուսական ռևոլյուցիոն շարժման հորձանուտում: Լենինյան հանճարի ճաճանչները թափանցելով մեր իրականության մեջ, լուսավորեցին Հայաստանի պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիության գիտակցությունը, ոտքի հանելով նրանց խավարի, կեղեքման և բուրժուական լծի դեմ: Հայերեն լեզվով հրատարակվող Լենինի հոդվածներն ու գրքերը, հայ բոլշևիկների՝ անձնվեր լենինյանների բոցաշունչ երկերը, Լենինի վեհ գաղափարներն անդուլ պրոպագանդող բոլշևիկյան մամուլը՝ հսկայական դեր խաղացին Հայաստանի աշխատավորության քաղաքական դաստիարակության գործում: Զինելով և կոփելով ռևոլյուցիայի ջոկատները ռուսաստանյան պրոլետարիատի օգնությամբ՝ Հայաստանի բոլշևիկները մեր ժողովրդին տարան Լենինի ուղիով, սոցիալիզմի հաստատման ուղիով:

Միայն Սովետական իշխանության տարիներին մեր ռեսպուբլիկայում լույս են տեսել Լենինի աշխատություններից 321 անուն գիրք և բրոշյուրներ՝ երկու միլիոն տիրաժով: Լենինի աշխատությունների այս մասսայական տարածումը լավագույն վկայությունն է լենինիզմի գաղափարների կենսունակության և անհաղթելիության:

Նշելով Վ. Ի. Լենինի ծննդյան 90-րդ տարեդարձը, Սովետական ժողովուրդը համախմբված կոմունիստական պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, սոցիալիստական լագերի բոլոր երկրների ժողովուրդների սերտ միասնությամբ, վստահ ընթանում է դեպի կոմունիզմ:

Լենինի ուսմունքից, այդ լուսատու աստղից սովետական ժողովուրդը, սոցիալիզմի բոլոր երկրները, ամբողջ առաջադեմ մարդկությունը կորով և ոգևորություն են քաղում: Լենինիզմի դրոշով մենք հաղթեցինք Հոկտեմբերյան ռևոլյուցիայի օրերին: Լենինիզմի դրոշով մենք կառուցեցինք սոցիալիզմ: Այդ մեծ դրոշի ներքո սովետական ժողովուրդը կիրագործի մարդկության ամենաազնիվ և ամենավեհ իդեալը՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը:

---

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ


## Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար


Վ. Ի. Լենինի անմահ ուսմունքը հզոր լուսարձակի նման լուսավորում է համայն աշխարհի աշխատավոր մարդկության ուղին, նրա ապագան։ Լենինիզմը կենդանի մարմնացում է գտել ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի, ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիզմի կառուցման ողղությամբ ձեռք բերած փայլուն նվաճումների, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հաջողությունների մեջ։ Ընթանալով Վ. Ի. Լենինի նշած ուղիով, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկիրը՝ աշխարհում բանվորների և գյուղացիների առաջին սոցիալիստական Հայրենիքը դարձրեց հզոր ինդուստրիալ տերություն՝ տեխնիկապես հագեցած սոցիալիստական գյուղատնտեսությամբ, առաջավոր գիտությամբ ու կուլտուրայով, մի տերություն, որի հաղթանակների մեջ երկրագնդի բոլոր ազատատենչ մարդիկ տեսնում են իրենց փրկությունը իմպերիալիզմի աղետներից, իրենց լուսապայծառ գալիքը։

Վ. Ի. Լենինի ծննդյան օրը մեր մեծ ժողովրդի նվիրական տոնն է։ Սովետական ժողովուրդը դիմավորում է Լենինի ծննդյան 90-ամյակը լայն մասսաների աննախընթաց քաղաքական ակտիվության ու աշխատանքային խանդավառության, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման, յոթնամյա պլանի հաջող կատարման համար մղած նրանց անձնվեր պայքարի պայմաններում։ Սովետական ժողովուրդը հաջողությամբ կառուցում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան։

Վ. Ի. Լենինի ամբողջ կյանքն ու գործունեությունը աշխատավոր մարդկությանն անձնվիրաբար ծառայելու, աշխատավորների երջանկության, կոմունիզմի հաղթանակի համար խիզախաբար պայքարելու վառ օրինակ է։ Լենինիզմն իր մեջ մարմնավորում է միլիոնավոր աշխատավոր մասսաների ձգտումներն ու բաղձանքները, նրանց վեհ գործը, որը գտնվում է վստահելի ձեռքերում. Լենինի ստեղծած Սովետական Միության Կոմունիստական պարտիան անշեղորեն առաջնորդում է մեր ժողովրդին դեպի կոմունիզմի հաղթանակը։



***

Մեր առաջնորդ Լենինի—մեծագույն հանճարի անվան հետ է կապված մարդկության պատմության նոր շրջանը՝ կոմունիզմի դարաշրջանը, որի սկիզբը դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։ Պատմությունը չգիտե ուրիշ որևէ ռևոլյուցիա, որն իր մասշտաբով և նշանակությամբ հավասարվեր Հոկտեմբերյան ռևոլյուցիային։ Բանվորների և գյուղացիների հաղթանակը բուրժուազիայի և կալվածատերերի նկատմամբ վերջ տվեց սոցիալական անարդարությանը մեր երկրում և սկիզբ դրեց աշխատավոր մարդու ազատագրմանն ամբողջ աշխարհում։ Նախապատրաստելով պրոլետարիատի ազատագրումը, Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր դարձնում նաև ճնշված ազգերի ազատագրմանը։ Նա բազմիցս ընդգծել է, որ ճնշված ազգերի ազատագրումը նրանց սոցիալական ազատագրման անբաժանելի մասն է։

Վլադիմիր Իլյիչ Լենինը գտնում էր, որ ազգային հարցի լուծումը հնարավոր է միայն սոցիալիստական ռևոլյուցիայի միջոցով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից։ «Զանազան ազգերի շահերի նկատմամբ հըսկայական ուշադրությունն է միայն,— ասել է Վ. Ի. Լենինը,— որ վերացնում է կոնֆլիկտների հողը, վերացնում է փոխադարձ անվստահությունը» (Երկեր, հատ. 33, էջ 457)։

Հայ ժողովուրդը պատմության արհավիրքներին ենթարկված այն ժողովուրդներից է, որոնցից շատ քչերին է վիճակվել պահպանել իրենց գոյությունը։ Նրա ազատագրումը և ազգային վերածնունդը ամբողջությամբ կապված է Վ. Ի. Լենինի անվան հետ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից դեռևս շատ տարիներ առաջ Վ. Ի. Լենինը առաջինը նշեց հայ ժողովրդի ազգային ու սոցիալական վերածննդի ուղին, նրա բախտը սերտ կապելով Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հետ։ XIX դարի վերջին և XX դարի սկզբներին, երբ Անդրկովկասում հանդես եկան լենինյան-իսկրայական սոցիալ-դեմոկրատական առաջին կազմակերպությունները, Վլադիմիր Իլյիչը սկզբից ևեթ մեծ ջանքեր գործադրեց այդ կազմակերպությունները պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով կառուցելու, աշխատավոր մասսաներին ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու նպատակով։

Դեռևս մեր փառապանծ պարտիայի ձևավորման արշալույսին հայ ժողովրդի լավագույն զավակները ճիշտ ընկալեցին Լենինի գաղափարները և անվերապահորեն զինվորագրվեցին նրա բանակին։ Լենինյան «Իսկրա»-ի գաղափարների անմիջական ազդեցության տակ 1902 թ. ստեղծվեց ՌՍԴԲՊ տեղական կազմակերպություններից մեկը՝ Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը։ Ուշագրավ է լենինյան-իսկրայական ուղղության հայերեն անդրանիկ «Պրոլետարիատ» թերթում լույս տեսած այդ միության Մանիֆեստը։ Այն չվրիպեց Լենինի ուշադրությունից։ 1903 թ. փետրվարի 1-ին «Իսկրա»-ում Լենինը հանդես եկավ Մանիֆեստի առթիվ հատուկ հոդվածով. «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» Մանիֆեստը և մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքի նրա ուշագրավ փորձը» (Երկեր, հատ. 6, էջ 411)։

Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ Անդրկովկասի, այդ թվում՝ Հայաստանի

բոլշևիկյան կազմակերպությունները քաղաքական պայքարի մեծ դպրոց անցան։ Նրանք վճռական պայքար ծավալեցին Անդրկովկասում ռևոլյուցիայի կատաղի թշնամիների՝ բուրժուա-նացիոնալիստական պարտիաների և հակառևոլյուցիոն այլ հոսանքների դեմ։ Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի մոլի թշնամիներից էր դաշնակցությունը—Կովկասի հայ բուրժուազիայի «շահերի լավագույն արտահայտիչն ու պաշտպանը» (Ստ. Շահումյան, Երկեր, հատ. 1, էջ 284)։ Մերկացնելով դաշնակցության և մյուս բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ու հոսանքների հակառևոլյուցիոն էությունը, Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները քայլ առ քայլ ջանում էին աշխատավոր մասսաներին դուրս բերել նացիոնալիստական պարտիաների կործանարար ազդեցությունից։

Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ինտերնացիոնալ միասնությունը, նրանց ռևոլյուցիոն տրադիցիաները, որոնք օրինակ էին հանդիսանում ազգային հարցի պրոլետարական լուծման համար։ «Մեզ մոտ և Կովկասում,—գրել է Լենինը Մաքսիմ Գորկուն, 1913 թվականի փետրվարին,—ս. դ. վրացիները, հայերը, թաթարները, ռուսները աշխատում էին միասին տասը տարուց ավելի միասնական ս.-դ. կազմակերպության մեջ։ Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում։ Միակ լուծումը» (Լենին, հատ. 35, էջ 79)։

Անդրկովկասի ռևոլյուցիոն բանվորներն ու գյուղացիները, ռուսական պրոլետարիատի հետ միասին, ոտքի ելան բուրժուազիայի տիրապետությունը տապալելու, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակն ապահովելու համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, որի կազմակերպիչն ու ղեկավարը Վ. Ի. Լենինի ստեղծած Կոմունիստական մեծագործ պարտիան էր, պատմական շրջադարձ նշանավորեց համաշխարհային պատմության մեջ։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան Ռուսաստանում առաջինը ճեղքեց իմպերիալիզմի օղակը, հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա և մեկընդմիշտ լուծեց ազգային հարցը մեր երկրում։ Մեծ Հոկտեմբերն իմպերիալիզմի ճնշումից ազատագրեց և սոցիալական ու քաղաքական ազատություն բերեց Ռուսաստանի բոլոր ժողովուրդներին, այդ թվում նաև հայ ժողովրդին։ Լենինիզմը կանխորոշեց բոլոր ճնշված ազգերի ազատագրման ուղին։

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի լուրը մեծ խանդավառությամբ ընդունեց Անդրկովկասի աշխատավորությունը, որը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ ոտքի ելավ ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանելու համար։ Ռևոլյուցիոն ալիքը ընդգրկեց երկրամասի բանվորներին, գյուղացիների և Կովկասյան ճակատի զինվորների լայն խավերին։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականությունն ամուր բազա ստեղծեց Ռուսաստանի ժողովուրդների բարեկամության համար։

Ազգային ճնշման իմպերիալիստական քաղաքականությանը Սովետական Ռուսաստանի Ժողովրդական Կոմիսարների Սովետը հակադրեց ճնշված ժողովուրդների լիակատար ազատագրության քաղաքականությունը։ 1917 թ. դեկտեմբերի 29-ին ՌՍՖՍՌ-ի Ժողկոմսովետը դեկրետ ընդունեց «Թուրքահայաստանի մասին», նրա ինքնորոշման իրավունքը հռչակելով։ Սովետական իշ-



խանության այդ Դեկրետը հայ ժողովրդի նկատմամբ լենինյան հոգատարության վառ արտահայտություններից մեկն է։ Սակայն Արևմտյան Հայաստանում և Անդրկովկասում ստեղծված արտաքին ու ներքին բարդ պայմանները (հատկապես. գերմանա-թուրքական զավթիչների ներխուժումն Անդրկովկաս), ինչպես նաև օտարերկրյա իմպերիալիստների օգնությամբ իշխանության գլուխ անցած բուրժուա-նացիոնալիստական պարտիաները խանգարեցին հայ ժողովրդին՝ ազատորեն տնօրինելու իր բախտը, միավորվելու Սովետական Ռուսաստանի բանվորների ու գյուղացիների եղբայրական ընտանիքում։ Ստեղծված դժվարին պայմաններում Անդրկովկասի բանվորներն ու գյուղացիները ՌՍԴ(բ)Պ ղեկավարությամբ մաքառում էին արտաքին և ներքին թշնամիների դեմ։

1917 թ. դեկտեմբերի 16-ին ՌՍՖՍՌ Ժողովրդական Կոմիսարների Սովետը Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ Ստ. Շահումյանին նշանակեց Կովկասի Գործերի ժամանակավոր Արտակարգ կոմիսար։ Պարտիայի Կենտկոմի անդամ, Բաքվի Սովետի նախագահ Ստ. Շահումյանը անվեհեր լենինյաններ Ա. Ջափարիձեի, Մ. Ցխակայայի, Մ. Ազիզբեկովի, Ա. Միկոյանի, Ի. Ֆիոլետովի և ուրիշների հետ միասին Լենինի անմիջական ցուցումներով ղեկավարում էր երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների ամբողջ գործունեությունը։ 1917 թ. հոկտեմբերի 31-ին (նոյեմբերի 13-ին), Բաքվի Սովետի ընդլայնված նիստը (Ստ. Շահումյանի գլխավորությամբ), վճռականապես կանգնեց Վ. Ի. Լենինի ստեղծած Ժողովրդական Կոմիսարների կողմը և պահանջեց բուրժուա-կալվածատիրական հին կառավարության տեղական օրգանից իր լիազորությունները հանձնել նոր իշխանությանը, որը հենվելու է բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների վրա։

Անդրկովկասում ստեղծված ներքին և արտաքին յուրահատուկ պայմանները՝ օտարերկրյա իմպերիալիստների միջամտությունը, նրանց կողմից հրահրվող և օգնություն ստացող հակառևոլյուցիոն պարտիաների բուրժուա-նացիոնալիստական բլոկը (որին հաջողվեց ժամանակավորապես զավթել իշխանությունը), մեծ չարիք հանդիսացան Անդրկովկասում Սովետական իշխանության հաղթանակի ճանապարհին։

Ռևոլյուցիայի գործը, ինչպես նշել է այդ օրերին Ստ. Շահումյանը, ոչ մի տեղ այնպիսի վտանգի տակ չէր, ինչպես Անդրկովկասում։ Երկրամասի բոլշևիկները, կատարելով մեծ Լենինի ցուցումները լայն աշխատանք ծավալեցին բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն դաշինքի ամրապնդման, սովետական զինված ուժերի ստեղծման, երիտասարդությանը ռևոլյուցիոն պայքարի մեջ ներգրավելու, Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ։ Կովկասի, այդ թվում և Բաքվի բոլշևիկների վճռական քաղաքականությունը հիացմունք էր պատճառում Վ. Ի. Լենինին։ «Մենք,—գրում էր Վ. Ի. Լենինը Շահումյանին 1918 թ. փետրվարին,—հրճվանքի մեջ ենք ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից»։ Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս Կովկասի բոլշևիկներին սովորել դիվանագիտություն, օգտագործել իմպերիալիստների հակասությունները, կոնֆլիկտներն ու գզվռտոցը։

ՌԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն, անձամբ Վ. Ի. Լենինը, սիստեմատի-

կաբար հետևում էին Անդրկովկասում Սովետական իշխանության առաջին ջահակրի՝ Բաքվի Կոմունայի գործունեությանը, կազմակերպում նրան ամեն տեսակի օգնություն: Բաքվի հերոսական Կոմունան խոշոր դեր խաղաց Անդրկովկասի, այդ թվում և Հայաստանի աշխատավորության ռևոլյուցիոն պայքարի կազմակերպման գործում:

Կոմունայի ծանր օրերին, երբ Սովետական Բաքվի վրա հարձակվել էին մի կողմից՝ գերմանա-թուրքական զավթիչները, մյուս կողմից՝ անգլիական իմպերիալիստները, իսկ քաղաքի ներսում խռովություն էին պատրաստում հակառևոլյուցիոն պարտիաները, պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ միջոցներ էր ձեռնարկում Բաքվի պրոլետարիատին օգնելու համար:

Արևմտյան իմպերիալիստների ողորմածությամբ 1918 թ. գարնանը ստեղծվեցին Անդրկովկասի այսպես կոչված «անկախ» ռեսպուբլիկաները: Բուրժուա-նացիոնալիստական պարտիաները երկրամասը կտրեցին Սովետական Ռուսաստանից և այն դարձրին իմպերիալիստական տերությունների հակասովետական պլացդարմ: Հայաստանում իշխանությունը զավթած հայ ժողովրդի ոխերիմ թշնամիները՝ դաշնակները, իրենց կարճատև և անփառունակ տիրապետության ժամանակաշրջանում Հայաստանը վերածեցին սովի, արցունքի, ավերածության երկրի:

Թուրքական զավթիչների 1918 թվականի արշավանքը ծանր պայմաններ ստեղծեց երկրամասի աշխատավորության, հատկապես հայ ժողովրդի համար: Հարյուր հազարավոր հայեր ընկան թուրք օկուպանտների սրից: Թուրքական յաթաղանից պրծած հայ ժողովրդի բեկորները ապաստան գտան Սովետական Ռուսաստանի քաղաքներում: Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ Ազգությունների ժողկոմատին կից ստեղծվեց Հայկական գործերի ժողովրդական կոմիսարիատ, որը խոշոր դեր խաղաց Մեծ Հոկտեմբերի գաղափարները հայ աշխատավորությանը լուսաբանելու, նրան նյութական ու բարոյական օգնություն ցույց տալու գործում: ՌՍՖՍՌ ժողկոմսովետը միայն 1918 թ. առաջին կեսին ավելի քան 6 միլիոն ռուբլի հատկացրեց գաղթած հայերին օգնելու համար:

Ա. Ի. Միկոյանը ՌԿ(բ)Պ Կենտկոմին 1919 թ. վերջերին ներկայացրած «Կովկասյան հարցի շուրջը» թեզիսներում դիպուկ կերպով գնահատելով Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական «անկախ» կառավարությունների քաղաքական վարքագիծը, գրել է. «Որպես պրոֆեսիոնալ ծառաներ, կատարելով իմպերիալիզմի ստոր լակեյների և ծախու դրածոների դերը, չունենալով ո՛չ արտաքին, ո՛չ էլ ներքին սեփական քաղաքականություն, կովկասյան կառավարությունները շարունակ գտնվում էին իմպերիալիստական սատրապների և դերժիմորդաների կրունկի տակ: «Անկախ» ռեսպուբլիկաների փոխարեն Կովկասում ստացվեց մեծ ճանապարհի վրա գտնվող մի քարվանսարա, ավականների մի կեղտոտ որջ, որտեղ մերթ հերթով, մերթ միասին մտնում են իմպերիալիզմի գիշատիչները՝ քաղաքակիրթ բանդիտները, մերթ գերմանացիները, մերթ թուրքերը, անգլիացիները, ամերիկացիները, իտալացիները և ամեն տեսակ այլ սրիկաներ գալով, տերտնօրինություն են անում, կողոպտում, բռնություններ գործում և բավականաչափ ծաղրուծանակի ենթարկելով աշխատավոր մասսաներին, հեռանում են հարուստ ավարով, որպես երախտապարտություն թքելով որջը պահողների՝ կովկասյան ռեսպուբլիկաների կառավարությունների ռեխին, որոնք, զրկվելով որոշ տերերից ինչպես անվայել պրոֆեսիայի տեր կանայք, փնտրում են նոր տերեր»:



Ահա թե ինչու բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության մեջ կարևորագույն տեղ էր բռնում Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ու կառավարությունների հակաժողովրդական քաղաքականության մերկացումը:

1918—1920 թվականներին Վ. Ի. Լենինը բազմաթիվ հանդիպումներ է ունենում Անդրկովկասի, այդ թվում և Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավար գործիչների հետ, զրուցում, խորհուրդներ և ցուցումներ է տալիս նրանց Սովետական իշխանության համար մղվող պայքարի կազմակերպման նպատակով: ՌԿ(բ)Պ Երկրային Կոմիտեն և այնուհետև ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոն (որոնք միավորում և ղեկավարում էին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը), հետևողականորեն կենսագործում էին մեծ Լենինի ցուցումները: ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոն, ինչպես նաև Կազմբյուրոն, բազմաթիվ առիթներով անդրադարձել են Անդրկովկասում տիրող դրության և գործնական օգնություն կազմակերպել Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի աշխատավորությանը:

1919 թ. երկրորդ կեսերից, երբ անգլիական իմպերիալիստների զինված ինտերվենցիան պարտություն կրեց, Անդրկովկասի հակառևոլյուցիոն ուժերը դեմ առ դեմ կանգնեցին բանվորներին ու գյուղացիներին: Բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության ակտիվացմանը զուգընթաց, ուժեղացավ նաև բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ռեակցիան, որոնք արյան գնով ճգնում էին պահպանել իրենց իշխանությունը: Բոլշևիկյան կազմակերպությունները ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով, կարողացան Անդրկովկասի բանվորներին ու գյուղացիներին համախմբել պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո և նրանց վճռական մարտի հանել հանուն Սովետական իշխանության:

Լենինյան ազգային քաղաքականության կիրառումն Անդրկովկասում, ազգային Սովետական ռեսպուբլիկաների լողունգի հռչակումը զգալիորեն նպաստեցին աշխատավորական լայն մասսաների նացիոնալիզմի մոլուցքից ազատվելուն: Վ. Ի. Լենինը, Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն խնդիր դրին ստեղծել Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի կոմունիստական պարտիաներ, որոնց կազմակերպական ձևավորումն ավարտվեց 1920 թվականին:

1920 թվականի մարտին Կովկասի աշխատավորները դիմում են մեծ Լենինին, խնդրելով Սովետական Ռուսաստանի օգնությունը բուրժուա-նացիոնալիստական կառավարությունները տապալելու և Սովետական իշխանություն հաստատելու համար: 1920 թ. ապրիլի 28-ին եղբայրական Ադրբեջանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները, հերոսական Կարմիր Բանակի օգնությամբ, տապալեցին մուսավաթիստների արյունոտ լուծը և Անդրկովկասում առաջինը հաստատեցին սովետական կարգեր:

Վ. Ի. Լենինը սրտանց ողջունեց Ադրբեջանի աշխատավորների ազատագրումը: Ադրբեջանում սովետական կարգերի հաղթանակը խոշոր նշանակություն ունեցավ Անդրկովկասի մյուս ժողովուրդների ռևոլյուցիոն պայքարի









հաջողության համար, որի ալիքն արագորեն ընդգրկեց նաև Հայաստանը։ 1920 թ. մայիսին Հայաստանի աշխատավորությունը զինված ապստամբության դրոշ բարձրացրեց ընդդեմ դաշնակ բռնակալների արյունոտ տիրապետության։ Ապստամբությունը, որը մասսայական բնույթ էր կրում, ընդգրկեց համարյա ամբողջ Հայաստանը և հող նախապատրաստեց Սովետական իշխանության հաստատման համար։

Դաշնակցական կառավարությունը գազազած դիմում էր նորանոր պրովոկացիաների։ Անտանտի իմպերիալիստների թելադրանքով նա հրահրեց հայ-թուրքական նոր պատերազմ, որի բոցերի մեջ դաշնակները կամենում էին խեղդել ռևոլյուցիոն նոր ցասումը, Հայաստանը վերածել Սովետական Ռուսաստանի դեմ կազմակերպվող ռազմական ինտերվենցիայի պլացդարմի։

Վ. Ի. Լենինը, Սովետական կառավարությունն ամեն կերպ ջանում էին պաշտպանել հայ ժողովրդի շահերը, փրկել նրան ֆիզիկական բնաջնջման վտանգից։ Սովետական կառավարության նախաձեռնությամբ Մոսկվայում բանակցություններ սկսվեցին Սովետական կառավարության և դաշնակցական կառավարության ներկայացուցիչների միջև։ Սովետական կառավարությունը ձգտում էր խաղաղ բանակցությունների միջոցով լուծել վիճելի հարցերը։ Սակայն դաշնակները Անտանտի իմպերիալիստների թելադրանքով ամեն կերպ խոչընդոտում էին այդ բանակցությունների հաջողությունը։ Եվ երբ 1920 թ. օգոստոսի 10-ին կնքվեց համաձայնագիր ՌՍՖՍՌ կառավարության և դաշնակցական կառավարության ներկայացուցիչների միջև, դաշնակները ուխտադրժորեն հրաժարվեցին իրենց ստանձնած պարտավորությունները կատարելուց։

Թուրքական զավթիչների ներխուժումը Հայաստան նոր աղետներ պատճառեց բազմաչարչար հայ ժողովրդին։ Այդ օրհասական պահին միայն Սովետական Ռուսաստանը օգնության ձեռք մեկնեց հայ ժողովրդին։ Այդ օրերին, երբ օկուպանտները անկաշկանդ գրավում էին Հայաստանի գյուղերն ու քաղաքները, Սովետական Ռուսաստանն առաջարկեց իր միջնորդությունը՝ թուրքական առաջխաղացումը կասեցնելու համար։ Բայց դաշնակցական կառավարությունը, վախենալով Հայաստանում Սովետական իշխանության հեղինակության ամրապնդումից և նպատակ ունենալով իմպերիալիստների օգնությամբ քարշ տալ իր գոյությունը, մերժեց Սովետական Ռուսաստանի առաջարկությունը։ Երկիրը կանգնեց վերջնական կործանման առջև։ Հայ ժողովրդի փրկության միակ ուղին կարող էր լինել սովետական կարգերի հաստատումը։

Դաշնակ պնակալեզները մինչև այժմ էլ վայրահաչում են այն մասին, որ իբր թե Հայաստանում սովետական կարգերը հաստատվել են «ռուսական սվինի» միջոցով՝ Կարմիր Բանակի բռնի ուժով։ Թե որքան են բոլոր տեսակի հիմքերից զուրկ այդ հերյուրանքները, ցույց է տալիս թեկուզ ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի Լենինի առաջարկած 1920 թ. նոյեմբերի 27-ի որոշումը, որում ասված է. «Վրաստանի, Հայաստանի, Թուրքիայի և Պարսկաստանի նկատմամբ վարել մաքսիմալ հաշտ քաղաքականություն, այսինքն մի քաղաքականություն, որն ուղղված է ամենից շատ այն բանին, որպեսզի խուսափել պատերազմից։



Խնդիր չդնել արշավանք կազմակերպել ո՛չ Վրաստանի, ո՛չ Հայաստանի, ո՛չ էլ Պարսկաստանի դեմ» (Լենինյան ժողովածու, XXXVI, էջ 144)։

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, տապալեցին դաշնակների տխրահռչակ տիրապետությունը և երկրում հաստատեցին Սովետական իշխանություն։ Հայաստանի ապստամբ աշխատավորության խնդրանքով այդ օրերին եղբայրական օգնության ձեռք մեկնեցին ռուս մեծ ժողովուրդը, Սովետական Ադրբեջանը և հերոսական XI Կարմիր Բանակի զորամասերը, կատարելով իրենց ազատագրական մեծ միսիան։

Հայ ժողովրդի ջերմ բարեկամ Վ. Ի. Լենինը Հայաստանի Ռազմառևոլյուցիոն Կոմիտեի Նախագահ Ս. Կասյանին ուղարկած հեռագրով սրտանց ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։

Վ. Ի. Լենինը մեծ հոգատարություն էր ցուցաբերում նորաստեղծ Սովետական ռեսպուբլիկայի ամրապնդման, նրա ավերված տնտեսության վերականգնման, հայ ժողովրդին սովի ճիրաններից փրկելու, նրա ազգային ու սոցիալիստական վերածնունդն ապահովելու համար։

Եվ ահա, հայ ժողովրդի համար դժվարին այդ օրերին, ռուս մեծ ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, կրկին անգամ իր եղբայրական օգնության ձեռքը մեկնեց նրան։ Հայաստանում սովետական կարգերի հաստատումից երկու շաբաթ անց Վ. Ի. Լենինն ընդունում և երկար զրույց է ունենում Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեի անդամներ Ս. Տեր-Գաբրիելյանի և Ա. Մռավյանի հետ, խոստանում է ամեն կերպ օգնել հայ ժողովրդին՝ ծանր դրությունից դուրս գալու համար։

Վ. Ի. Լենինի ցուցումով Սովետական Ռուսաստանի կառավարությունը միջոցառումներ է կիրառում Հայաստանի տնտեսական դրության բարելավման ուղղությամբ։ 1920 թվականի դեկտեմբերի 13-ին, Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակի օրից երկու շաբաթ անց, Սովետական Ռուսաստանի Ժողովրդական Կոմիսարների Սովետը Վ. Ի. Լենինի ստորագրությամբ որոշում է ընդունում բաց թողնելու երեք միլիարդ ռուբլի՝ Հայաստանի Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկային օգնելու համար։ Նույն թվականի վերջին Սովետական Հայաստան է ուղարկվում 600 հազար ռուբլի (ոսկով), 40 վագոն առաջին անհրաժեշտության տարբեր ապրանքներ, ավելի քան 1200 հազար փութ նավթամթերք, 36 հազար զույգ սպիտակեղեն, 5 հազար փութ շաքար, 12 վագոն դեղորայք, 7 վագոն բրինձ, 1500 գլուխ անասուն, 325 հազար փութ հացահատիկ և այլ ապրանքներ։ Ընդ որում, պետք է ասել, որ Սովետական Ռուսաստանը Հայաստանին այդ օգնությունը ցուցաբերում էր անվճար կարգով և այն էլ այն օրերին, երբ ինքը հացի ու ժողովրդական սպառման այլ առարկաների խիստ կարիքի մեջ էր։

Սովետական կառավարությունը միջոցներ ձեռնարկեց՝ նաև Թուրքիայի օկուպացրած Հայաստանի տերիտորիաների ազատագրման համար։

Երիտասարդ ռեսպուբլիկայում ստեղծված տնտեսական ծանր դրությունից օգտվելով, օտարերկրյա իմպերիալիստները դաշնակ թափթփուկների միջոցով խռովություն բարձրացրին բանվորա-գյուղացիական իշխանության դեմ։ Սակայն Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, Ռուսաստանի Կար-

միր Բանակի եղբայրական օգնությամբ, ճնշեցին փետրվարյան խռովությունը և հաղթանակով դուրս եկան քաղաքացիական կռիվներից։

1921 թվականի ապրիլի 9-ին Վ. Ի. Լենինը հեռագրում է Օրջոնիկիձեին. «Ստացա Ձեր ծածկագիրը Անդրկովկասի պարենային հուսահատական դրության մասին։ Մենք ձեռք առանք մի շարք միջոցներ, Հայաստանին մի քիչ ոսկի տվինք, հաստատեցինք Պարենկոմին արված ամեն տեսակ հանձնարարությունները» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 521)։ Վ. Ի. Լենինի անմիջական ցուցումով ստեղծվում է «Հայաստանին օգնություն ցուցաբերող Մոսկովյան Կոմիտե», որը մեծ աշխատանք է կատարում Սովետական Հայաստանի աշխատավորությանը պարենով, վառելիքով ու այլ ապրանքներով մատակարարելու գործում։ Այդ օրերին Սովետական Հայաստանին տնտեսական խոշոր օժանդակություն են ցուցաբերում նաև սովետական մյուս ռեսպուբլիկաները, մասնավորապես Ադրբեջանը և Վրաստանը։

Ռուս մեծ ժողովրդի ու եղբայրական մյուս ժողովուրդների անշահախնդիր տնտեսական այդ խոշոր օգնությունը հնարավորություն է տալիս կարճ ժամանակում հաղթահարել իմպերիալիստական ու քաղաքացիական պատերազմների, հայ ժողովրդի ոխերիմ թշնամիների՝ դաշնակների մղձավանջային տիրապետության հետևանքով առաջացած սովն ու համաճարակը, բարելավելու Սովետական Հայաստանի բնակչության կենսամակարդակը։

1921 թվականի գարնանը Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչ Ալ. Մյասնիկյանն ընտրվում է Հայաստանի Ժողկոմսովետի նախագահ։ Ապրիլին ընդունելով Ալ. Մյասնիկյանին, Վ. Ի. Լենինը երկար զրույց է ունենում նրա հետ, խորհուրդներ ու ցուցումներ է տալիս Կովկասի կոմունիստներին երկրամասում սոցիալիզմի կառուցման ուղիների մասին։

«Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկաների կոմունիստ ընկերներին» 1920 թ. ապրիլի 14-ին գրած նամակում Վ. Ի. Լենինը ծրագրային խնդիրներ է դնում Կովկասի, այդ թվում և Հայաստանի կոմունիստների առջև։ Վ. Ի. Լենինը պահանջում է նրանցից ուշադիր կերպով հաշվի առնել յուրաքանչյուր ազգության շահերն ու առանձնահատկությունները, ավելի՛ դանդաղ, ավելի՛ զգույշ, ավելի՛ սիստեմատիկաբար կատարել անցումը դեպի սոցիալիզմ։ Լենինը պահանջում էր լուրջ կերպով զբաղվել Կովկասի սովետական ռեսպուբլիկաների արդյունաբերության ու գյուղատնտեսության վերելքի և ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդման հարցերով։

1922 թ. դեկտեմբերին Ալ. Մյասնիկյանը կրկին հանդիպեց Վ. Ի. Լենինին, որն այդ ժամանակ հիվանդ պառկած էր Գորկայում։ Վ. Ի. Լենինը ամենայն ուշադրությամբ լսելով Մյասնիկյանին, բազմաթիվ հարցեր էր տալիս նրան Անդրկովկասում և Հայաստանում տիրող դրության մասին։ Վ. Ի. Լենինը, հիշատակում է Մյասնիկյանը, «Հարցնում էր, թե արդյոք ոտքի կանգնե՞լ է Հայաստանը, ի՞նչ դրության մեջ է այնտեղ բամբակը, ոռոգումը, պարենամթերքը, բավականաչափ ամո՞ւր է արդյոք ազգային Կարմիր Բանակը, չեն նեղացնում արդյոք «մանր մարդկանց», ագիտացիա չի՞ մղվում արդյոք բուրժուական ինտելիգենցիայի կողմից, չե՞ն խոսում արդյոք «ռուսական սվինների» մասին և այլն»։ Վ. Ի. Լենինը կոնկրետ խորհուրդներ ու ցուցումներ է



տալիս Մյասնիկյանին Հայաստանում սոցիալիզմի տնտեսական հիմքի կառուցման վերաբերյալ։

Անդրկովկասում լենինյան պատգամների կենսագործման, Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի ժողովուրդների եղբայրական միասնության ամրապնդման գործում վիթխարի դեր խաղաց Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1922 թ. գարնանը ստեղծված Անդրկովկասյան Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաների ֆեդերացիան։ Անդրֆեդերացիայի կազմավորումը կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության փայլուն հաղթանակն էր։ Հայաստանի, Ադրբեջանի ու Վրաստանի տնտեսական-քաղաքական միավորումը հնարավորություն տվեց արագորեն վերականգնելու Անդրկովկասի քայքայված ժողովրդական տնտեսությունը, տնտեսական ու քաղաքական հիմք ստեղծեց Անդրկովկասի ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխության և եղբայրական բարեկամության համար։ Երկրամասի ժողովրդական տնտեսության արագ վերականգնման, սոցիալիստական շինարարության հետագա ծավալման համար կարևորագույն նշանակություն ունեցավ ՌՍՖՍՌ-ի և եղբայրական սովետական մյուս ռեսպուբլիկաների կողմից Հայաստանի, Վրաստանի ու Ադրբեջանի աշխատավորությանը ցույց տրված անշահախնդիր օգնությունը։

1922 թվականի վերջերին Վ. Ի. Լենինի անմիջական նախաձեռնությամբ ռեսպուբլիկաները միավորվեցին մեկ ընդհանուր միության՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ։ Պատմության մեջ գոյություն չի ունեցել բազմազգ մի այլ պետություն, որտեղ բոլոր ազգերի ու ժողովուրդների շահերի այնպիսի ներդաշնակություն լինի, ինչպես ՍՍՌՄ-ում։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան Անդրֆեդերացիայի միջոցով մտավ ՍՍՌՄ-ի կազմի մեջ որպես իրավահավասար ռեսպուբլիկա։ ՍՍՌՄ-ի ստեղծումը լիովին ապահովեց նրա կազմի մեջ մտնող բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում և Հայաստանի պետական ու քաղաքական անկախությունը, նրա էկոնոմիկայի ու կուլտուրայի բուռն վերելքը։

Կատարելով մեծ Լենինի ցուցումները, Հայաստանի աշխատավորները Սովետական իշխանության տարիներին, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ցարական Ռուսաստանի ծայրամասային հետամնաց ագրարային երկիրը դարձրին ծաղկող ինդուստրիայի, սոցիալիստական գյուղատնտեսության ու առաջավոր կուլտուրայի երկիր։

Խաղաղ տնտեսական շինարարության առաջին իսկ օրերից Վ. Ի. Լենինը մշակեց ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման հոյակապ պլանը, որը հանդիսացավ Կոմունիստական պարտիայի տնտեսական գործունեության ծրագիրը։ Լենինյան պլանի հիմքում ընկած էր նախ և առաջ ծանր ինդուստրիայի ստեղծումը, որը Վ. Ի. Լենինը համարում էր մեր մեծ Հայրենիքի՝ Սովետական Միության ինքնուրույնության ու անկախության ապահովման վճռական պայմանը։

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կենսագործեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը, վճռաբար խափանելով այն բոլոր փորձերը, որոնց նպատակն էր կասեցնել մեր առաջընթացը։ Երկրի ինդուստրացումը, շահագործող դասակարգերի վերացումը և կուլտուրական ռևոլյուցիան ապահովեցին ՍՍՌՄ-ում սոցիալիզմի

*վերջնական ու լիակատար հաղթանակը. այսօր Սովետական երկիրը թևակոխել է պատմական զարգացման մի նոր ժամանակաշրջան՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։*

*ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման վճռական պայմաններից մեկը Վ. Ի. Լենինը համարում էր Սովետական Միության բազմազգ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության ապահովումը։ 1921 թվականի ապրիլի 14-ին Վ. Ի. Լենինը գրում էր. «Ջերմագին ողջունելով Կովկասի սովետական ռեսպուբլիկաները, ես ինձ թույլ եմ տալիս հույս հայտնել, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հատ. 32, էջ 402)։*

*Հիրավի, մեծ Լենինի դրոշի ներքո քայլող ՍՍՌՄ ժողովուրդների բազմազգ ընտանիքն իր հերոսական աշխատանքով ապահովեց արտադրողական ուժերի զարգացման չտեսնված վերելք և այսօր հաղթականորեն ընթանում է դեպի Կոմունիզմի շողշողուն բարձունքները։ Սովետական բազմազգ ժողովրդի եղբայրության արգասիքն է Սովետական Հայաստանի արտադրողական ուժերի հուժկու զարգացումը։ Ամենայն իրավամբ պետք է ասել, որ ՍՍՌՄ-ի բոլոր ազգերն այսօրվա իրենց խոշոր նվաճումների համար առաջին հերթին պարտական են իրենց անդրանիկ եղբորը՝ ռուս մեծ ժողովրդին։*

*Վ. Ի. Լենինի ամենօրյա ուշադրության կենտրոնում էին ազգային ռեսպուբլիկաների էկոնոմիկայի զարգացման, նրանց ինդուստրացման, բնակչության կենսամակարդակի և կուլտուրայի բարձրացման հարցերը։ 1921 թվականի ապրիլին Կովկասի կոմունիստներին գրած իր նամակում Վ. Ի. Լենինը նշում էր, որ անհրաժեշտ է «իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքներ։ Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերաստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմը» (Երկեր, հատ. 32, էջ 404)։*

*Վլադիմիր Իլյիչի այդ ցուցումները ծրագրային մեծ նշանակություն ունեցան Կովկասի ռեսպուբլիկաների ծաղկման համար։ Հայաստանի աշխատավորությունը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնման հետ միասին, խոշոր աշխատանք տարավ երկրի ջրային ռեսուրսների օգտագործման ուղղությամբ. կառուցեց ու շահագործման հանձնեց մի շարք էլեկտրակայաններ, որոնց էներգետիկ բազայի վրա զարգացավ Հայաստանի արդյունաբերությունն իր բազմաթիվ ճյուղերով։ 1926—1929 թվականներին, այսինքն՝ ռեսպուբլիկայի ինդուստրացման տարիներին շահագործման հանձնվեցին Երևանի առաջին և Լենինականի հիդրոէլեկտրակայանները, սկսվեց Ձորագետի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Սովետական իշխանության հետագա տարիներին կառուցվեցին մի շարք այլ հզոր հիդրոկայաններ՝ Քանաքեռգէսը, Սևանգէսը, Գյումուշգէսը, Արզնիգէսը—Սևան-Հրազդան կասկադի խոշոր կայանները։ 1959 թվականի նոյեմբերին՝ Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձի նախօրյակին շահագործման հանձնվեց կասկադի մյուս խոշոր գէսը՝ Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանը։*

*Վառելիքի բնական ռեսուրսների բացակայության պայմաններում ջրային*



*էժան էլեկտրաէներգիայի օգտագործումը ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի վերելքի ապահովման վճռական պայմանը դարձավ։ Ներկայումս բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայկական ՍՍՌ-ն ետ է թողել կապիտալիստական շատ երկրների։ Այժմ ռեսպուբլիկայում մեկ օրում արտադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան արտադրվում էր նախառևոլյուցիոն Հայաստանում 1915 թվականին՝ մեկ տարում։ Հայկական ՍՍՌ-ն դարձավ համատարած էլեկտրականության ռեսպուբլիկա։ Վաղեմի պապենական ճրագի փոխարեն այժմ Իլյիչի լամպերն են վառվում ռեսպուբլիկայի ամենահեռու գյուղերում անգամ։*

*Հայկական ՍՍՌ-ի ջրային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման նպատակով խոշոր աշխատանքներ տարվեցին ոռոգման բազմաթիվ ջրանցքների կառուցման ուղղությամբ։ Մինչդեռ 1913 թվականին Հայաստանում ոռոգելի հողատարածությունները կազմում էին 97 հազար հեկտար, ապա 1959 թվականին՝ 225 հազար հեկտար։ Ջրաշինարարական աշխատանքների զարգացումը ռեսպուբլիկայում ինտենսիվ գյուղատնտեսության վերելքի ապահովման վճռական պայմաններից մեկը եղավ։*

*Սովետական իշխանության անցած տարիները դարձան Հայկական ՍՍՌ-ի արտադրողական ուժերի բուռն զարգացման շրջան։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման, արտադրողական ուժերի սոցիալիստական տեղաբաշխման շնորհիվ նախկինում ագրարային Հայաստանն այժմ դարձել է առաջավոր ինդուստրիալ ռեսպուբլիկա։ Մեր Սովետական Հայաստանն այժմ գերազանցապես գունավոր մետաղների արտադրության, ճշգրիտ մեքենաշինության և քիմիական արդյունաբերության ռեսպուբլիկա է։ 1959 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, աճեց 61 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 7 անգամ։ Ներկայումս ռեսպուբլիկայի ավելի քան 600 արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք գրեթե բոլորն էլ ստեղծվել են Սովետական իշխանության տարիներին, երկրին տալիս են արդյունաբերական բազմապիսի արտադրանք։*

*Սովետական իշխանության տարիներին աննախընթաց վերելք ապրեց թեթև ու սննդի արդյունաբերությունը։ Միայն ետպատերազմյան տարիներին, 1959 թ. ներառյալ, 1940 թվականի համեմատությամբ, բրդյա գործվածքների արտադրությունը ռեսպուբլիկայում աճեց ավելի քան 310 անգամ, մետաքսյա գործվածքներինը՝ 30 անգամ, կաշվե կոշկեղենինը՝ 5,1 անգամ, մսինը և կենդանական յուղինը (առանց կոլտնտեսականների ու բնակչության տնային արտադրության)՝ ավելի քան երկու անգամ։ Այժմ ռեսպուբլիկայի համապատասխան ձեռնարկությունները երկրին տալիս են տարեկան մոտ 80 միլիոն մետր բրդյա, մետաքսյա ու բամբակյա կտորներ, 5 մլն զույգ կաշվե կոշիկ, ավելի քան 90 մլն պայմանական տուփ պահածո ու մեծ քանակությամբ այլ ապրանքներ։*

*Ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի զարգացմանն էլ ավելի խթանեց Հայկական ՍՍՌ վարչական-տնտեսական շրջանի ստեղծումը։ Այդ միջոցառումը բարձրացրեց ռեսպուբլիկայի ինքնուրույնությունը արդյունաբերության ու շինարարության կառավարման գործում և կրկին անգամ դրսևորեց լենին-*

յան ազգային քաղաքականության իրականացման ուղղությամբ պարտիայի հետևողական պայքարը։ Ներկայումս Հայկական ՍՍՌ-ն տնտեսական ամուր կապերով կապված է մեր մեծ Միության բոլոր վարչական շրջանների հետ։ Պետական միասնական պլանի հիման վրա փոխադարձ պայմանավորվածության լայն կապերը՝ սովետական բազմազգ ժողովուրդների եղբայրության ու տնտեսական համագործակցության, կոմունիստական հասարակարգի կառուցման վճռական պայմաններից մեկն են։

Տնտեսական նման կապերից մեկը, որը խոշոր դեր խաղաց ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման գործում, դա գազամուղի շինարարությունն էր, որը հայ աշխատավորությունը իրականացրեց ուս-ուսի տված ռուս, ադրբեջանցի, վրացի և ուրիշ ազգությունների կառուցողների ջանքերով և պատմության մեջ մտավ իբրև բարեկամության գազամուղ։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXI համագումարին հղած իր ողջույնի մեջ Ադրբեջանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն գրում է. «Եղբայրական Վրաստանի մայրաքաղաքում վառվեց բարեկամության ջահը, շուտով նա կբոցավառվի նաև եղբայրական Հայաստանի մայրաքաղաք Երևանում։ Սնվելով Ադրբեջանի բնական հարուստ գազով, այդ ջահերը հավիտյան կվառվեն, ամրապնդելով Սովետական Անդրկովկասի ժողովուրդների դարավոր բարեկամությունը»։

1960 թվականի փետրվարի 12-ին բարեկամության ջահը վառվեց. մեր մայրաքաղաքի մեծ Լենինի անունը կրող հրապարակում։

Արդյունաբերության բուռն վերելքի շնորհիվ Հայկական ՍՍՌ-ն մեծ քանակությամբ ապրանքներ է արտահանում ինչպես Սովետական Միության մյուս տնտեսական շրջանները, այնպես էլ արտասահմանյան շատ երկրներ։ Այսօր Հայաստանը տնտեսական կապերով կապված է թվով 32 արտասահմանյան երկրների հետ, որտեղ արտահանում է շուրջ 50 անուն սարքավորումներ և այլ ապրանքներ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքի շատ նմուշներ ցուցադրվում են միջազգային ցուցահանդեսներում և տոնավաճառներում՝ էլ ավելի մեծ ճանաչում ձեռք բերելով համաշխարհային շուկայում։

Դեռևս 1917 թվականին, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախօրյակին, հանդես գալով Գյուղացիական դեպուտատների համառուսաստանյան առաջին համագումարում, Վ. Ի. Լենինը ասում էր. «Եթե հին ձևով մենք շարունակենք նստել մանր տնտեսությունների վրա, թեկուզ և որպես ազատ քաղաքացիներ ազատ հողի վրա, միևնույն է, մեզ անխուսափելի կործանում է սպառնում...

Սա դժվար գործ է, բայց անհրաժեշտ է անցնել ընդհանուր մշակման օրինակելի խոշոր տնտեսություններում» (Երկեր, հատ. 24, էջ 638—639)։

Կոլտնտեսային կարգի հաղթանակը արմատապես փոխեց սոցիալիստական գյուղի դեմքը, հայ գյուղացիության աշխատանքի, կյանքի ու կենցաղի պայմանները, խթանեց գյուղատնտեսության զարգացումը։ Դեռ շատ տարիներ առաջ հնությունների թանգարան ուղարկվեց նախառևոլյուցիոն գյուղացու արտադրության անբաժանելի միջոց՝ պապենական արորը։ Ծանր արդյունաբերության գերակշռող զարգացումն ապահովեց ինչպես ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի, այնպես էլ գյուղատնտեսության զինումը



ժամանակակից մեքենայական տեխնիկայով։ Այժմ մեր կոլտնտեսություններն ու սովխոզները տեխնիկապես ու առաջավոր գիտությամբ զինված խոշոր տնտեսություններ են և մեծ հնարավորություններ ունեն ավելի ընդլայնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ 1959 թվականին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացավ 4 անգամ։ Անհամեմատ բարձրացել են կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների եկամուտները։

Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության վերջին տարիներին իրականացրած միջոցառումների շնորհիվ Հայկական ՍՍՌ-ի աշխատավորությունը գյուղատնտեսության ասպարեզում խոշոր հաջողություններ ձեռք բերեց, որի համար մեր Ռեսպուբլիկան պարգևատրվեց Լենինի շքանշանով։ Դա Հայաստանի աշխատավորության, կոլտնտեսային գյուղացիության աշխատանքային սխրագործության արժանի գնահատումն էր։

Սովետական իշխանության տարիներին աննախընթաց ծաղկեցին հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, գիտությունը, արվեստն ու գրականությունը։ Նախառևոլյուցիոն Հայաստանը չուներ բարձրագույն ուսումնական որևէ հաստատություն, գիտության զարգացման որևէ օջախ։ Այժմ ռեսպուբլիկայում կան 11 բուհ, 37 տեխնիկում, 65 գիտա-հետազոտական ինստիտուտներ ու հիմնարկներ, որոնցում աշխատում են գիտության բազմաթիվ դոկտորներ ու թեկնածուներ, որոնք իրենց համեստ լուման են մտցնում սովետական առաջավոր գիտության գանձարանը։ 1959—1960 թթ. ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում է 1383 դպրոց, որոնցում սովորում է 312 հազար աշակերտ, կամ 19 անգամ շատ, քան 1913 թվականին։

Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են հատկացնում առողջապահության զարգացման գործին։ Մինչև ռևոլյուցիան բժիշկների գերակշռող մասը կենտրոնացված էր ռեսպուբլիկայի 2—3 քաղաքներում, գյուղական բնակչությունը զրկված էր բժշկական օգնությունից։ Այժմ Հայկական ՍՍՌ-ի համարյա բոլոր գյուղերում կան ամբուլատորիաներ կամ բժշկական կետեր, իսկ շատ գյուղական վայրերում՝ նաև հիվանդանոցներ։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար 73 բժիշկ և մեկ բժշկին ընկնում էր 13.700 մարդ, ապա 1959 թվականին ռեսպուբլիկայում աշխատում էին ավելի քան 4,2 հազար բժիշկ և ամեն մի բժշկին ընկնում էր 450 մարդ։

Սոցիալիզմը նշանակում է ոչ միայն մարդու ազատագրում կապիտալիզմի շղթաներից, այլև հասարակական կյանքի արմատական վերակառուցում, աշխատավորների նյութական բարեկեցության անընդհատ բարձրացում։ Վ. Ի. Լենինը սովորեցնում է, որ պրոլետարիատի հաղթանակից և արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը հանրային սեփականությամբ փոխարինելուց հետո՝ հասարակական արտադրության ամբողջ պլանաչափ կազմակերպումը կոչված է «ապահովելու հասարակության բոլոր անդամների բարեկեցությունն ու բազմակողմանի զարգացումը»։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հուժկու վերելքի, բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի աննախընթաց բարձրացման ասպարեզում ձեռք բերած մեծագույն նվաճումների համար հայ ժողո-

վուրդն իր երախտագիտությունն է հայտնում Հարազատ Կոմունիստական պարտիային ու նրա հիմնադիր մեծ Լենինին։

Հայաստանի աշխատավորությունն այսօր Սովետական Միության բազմազգ ժողովուրդների հետ միասին, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, անխոնջ կերտում է իր լուսավոր ապագան՝ կոմունիզմը։ Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյակը հանդիսանում է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման վճռական էտապը, նախատեսում է սոցիալիստական էկոնոմիկայի, ՍՍՌ ժողովուրդների կենսամակարդակի ու կուլտուրայի վերելքի չտեսնված տեմպեր։

Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 2,2 անգամ, տարեկան աճի միջին տեմպը կկազմի 12%։ Ընդ որում այդ աճի յուրաքանչյուր տոկոսի բացարձակ մեծությունը համեմատելի գներով հավասար կլինի 79,5 մլն ռուբլու, 1952—1958 թթ. 37,2 մլն ռուբլու փոխարեն։ Առավել արագ տեմպերով կզարգանան ծանր արդյունաբերության ճյուղերը, որի գերազանց աճը հանդիսանում է սոցիալիստական ընդլայնված վերարտադրության իրականացման գլխավոր պայմանը։ Յոթնամյակում ռեսպուբլիկայում կկառուցվեն ինչպես արտադրության միջոցների, այնպես էլ սպառման միջոցների արտադրության բազմաթիվ նոր ձեռնարկություններ։ Առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման, ձեռնարկությունների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման հետևանքով էլ ավելի կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը, անշեղորեն կընդլայնվի արտադրանքի թողարկումը։ Արդյունաբերական նոր ձեռնարկությունների կառուցման ու ժողովրդական տնտեսության զարգացման այլ խնդիրների իրականացման նպատակով հատկացվող կապիտալ ներդրումների գումարը յոթնամյակի տարիներին կկազմի 12 մլրդ ռուբլի, որը 2,3 անգամ կգերազանցի 1952—1958 թվականին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությանը հատկացված կապիտալ ներդրումների գումարին։

Յոթնամյակի ընթացքում մեծ չափով կզարգանա նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Նախատեսվում է 1959—1965 թվականներին գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճ 1,7 անգամ։ Այդ աճը տեղի կունենա հիմնականում բերքատվության ու անասնապահության մթերատվության բարձրացման հաշվին։

Արտադրության միջոցների արտադրության զարգացման բարձր տեմպերի և տեխնիկապես զինված սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի բազայի վրա յոթնամյակում զգալիորեն կընդարձակվի ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, որը, բնակչության դրամական ռեալ եկամուտների սիստեմատիկ աճի հետ միասին, հնարավորություն կտա ավելի լայն ծավալելու ապրանքաշրջանառությունը, էլ ավելի բարձրացնելու սովետական ժողովրդի կենսամակարդակը։

Այն խոշոր տեղաշարժերը, որոնք տեղի կունենան յոթնամյակում, կապահովեն սոցիալիստական հասարակության անդամների սպառման աճի այնպիսի մակարդակ, որը երբեւից չի ունեցել մեր երկիրը։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, ամփոփելով ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր բնագավառներում վերջին երկու տարում ռեսպուբլիկայի ձեռք բերած խոշոր նվաճումները, մեծ գոհունակությամբ նշեց կոմունիստական աշխատանքի բրիգադաների շարժման դերը, որն այժմ ծավալվում է ռեսպուբլիկայում յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու ուղղությամբ։ Հաջողությամբ, ժամկետից շուտ կատարելով ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյակի առաջին տարվա պլանը, Հայկական ՍՍՌ-ի աշխատավորությունն աշխատանքային մեծ ակտիվությամբ է դիմավորում Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության հիմնադիր, միջազգային պրոլետարիատի մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 90-ամյակը։

Այս տարի լրանում է նաև Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40 տարին։ Այդ հոբելյանը, որը հայ ժողովրդի ազատագրության, նրա վերածննդի, էկոնոմիկայի և կուլտուրայի ծաղկման տոնն է, ռեսպուբլիկայի աշխատավորությունը պատրաստվում է դիմավորելու նոր խանդավառությամբ, Հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջն ավելի սերտ համախմբվածությամբ։

Տակավին Ռուսաստանում կոմունիստական շարժման արշալույսին մեծ Լենինի անհաղթ պարտիային զինվորագրվեցին հայ ժողովրդի լավագույն զավակները, որոնք իրենց ռևոլյուցիոն անձնուրացությամբ, լենինյան վեհ գաղափարներին իրենց նվիրվածությամբ համակեցին ամբողջ հայ աշխատավորությանը, ներգրավելով նրան կոմունիզմի հաղթական երթում։ Լենինյան բանակի հայ զինվորները ռուս, ուկրաինացի, վրացի, ադրբեջանցի և մյուս եղբայրական ժողովուրդների զավակների հետ ձեռք-ձեռքի տված ընթացան Լենինի գլխավորված աշխարհացունց մարտերի բովով, անթառամ հիշատակ թողնելով կոմունիստական պարտիայի հաղթանակների տարեգրության մեջ։

Հայ ժողովուրդն իր սոցիալիստական վերածնունդը պարտական է Լենինին, կոմունիստների անհաղթ պարտիային։ Հայ ժողովուրդն անսահման հպարտ է, որ այսօր քառասնամյա, բայց հավերժ երիտասարդ Սովետական Սոցիալիստական Հայաստանը, սնունդ առնելով մեծ Լենինի աշխարհաշեն գաղափարների հորդառատ ակունքից, Սովետական բոլոր ժողովուրդների շարքերում դյուցազնաքայլ ընթանում է դեպի պայծառ ապագան՝ կոմունիզմը։

---

# ԼԵՆԻՆԻ ՀԵՏ, ԼԵՆԻՆԻ ՈՒՂԻՈՎ

## ԱԴՐԲԵՋԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՄԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՍՏԵՂԾՄԱՆ 40-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ


**Ս. ՋԱՖԱՐՈՎ**

Ադրբեջանական ՍՍՌ Գերագույն Սովետի
Նախագահության Նախագահ


*Ադրբեջանական ժողովրդի վաղեմի, բազմադարյան պատմությունը հարուստ է կարևոր իրադարձություններով, նշանակալի տարեթվերով։ Բայց մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր քաղաքացու սրտի համար դրանցից ամենահիշարժանը, ամենաթանկը, անկասկած, 1920 թվականի ապրիլի 28-ն է, այն օրը, երբ հաղթականորեն ավարտվեց Ադրբեջանի աշխատավորների պայքարը հանուն իրենց ազատագրման։*

*Ադրբեջանական ժողովուրդը համառ, կատաղի պայքար է մղել, որպեսզի փոխի իր կյանքը, դառնա իր բախտի տերը։ Նրան ռևոլյուցիոն պայքարի է հանել ռուսական բանվոր դասակարգի ոգեշնչող օրինակը, այդ պայքարը ղեկավարել, նրան ուղղություն է տվել մեծ Լենինի ստեղծած և դաստիարակած Կոմունիստական պարտիան։*

*Իրենց մեծ տոնը՝ Ադրբեջանի Կոմունիստական պարտիայի ստեղծման և Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակի 40-ամյակը ռեսպուբլիկայի աշխատավորները նշում են սովետական ժողովուրդների եղբայրական մեծ ընտանիքում։ Տոնական հանդիսակատարումներն անցնում են այն նշանակալի ժամանակներում, երբ Սովետական Միությունը մտել է իր զարգացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։*

*Ամբողջ սովետական ժողովուրդը այժմ աշխատանքային չտեսնված խանդավառությամբ է համակված։ Այդ խանդավառությունն առաջացել է ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումներից, համագումար, որը նշել է մեր երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման վիթխարի հեռանկարներ բացող մեծ աշխատանքների ծրագիրը։ Սովետական մարդիկ հաղթանակով ավարտեցին յոթնամյակի առաջին տարին։ Չտեսնված վերելք են ապրում մեր արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան։ Այս բոլոր բնագավառներում մենք զգալիորեն գերազանցեցինք պլանային կանխանշումները։*



*Խոշոր են մեր երկրի հաղթանակները նաև միջազգային կյանքում։ Վերջին տարիներում աննախընթաց բարձունքի է հասել մեր երկրի հեղինակությունը միջազգային գործերում։ Առանց Սովետական Միության մասնակցության այժմ արդեն չի կարող լուծվել արդիականության քիչ թե շատ կարևոր որևէ պրոբլեմ։*

*Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության խաղաղասիրական լենինյան արտաքին քաղաքականության այս պատմական հաղթանակների նվաճման մեջ բացառիկ կարևոր դերը պատկանում է Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին, որն աշխարհի բոլոր երկրներում ձեռք է բերել խաղաղության համար, մարդկության երջանկության համար պայքարող մեծ, անխոնջ մարտիկի համբավ։*

*Ընկեր Ն. Ս. Խրուշչովի Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած պատմական ուղևորությունը, որն սկիզբ դրեց միջազգային մթնոլորտի ջերմացմանը, աչքի ընկնող իրադարձություն հանդիսացավ ժողովուրդների կյանքում։ Սովետական մարդիկ, երկրագնդի բոլոր ծայրերում ապրող բարի կամքի տեր մարդիկ ջերմ, անկեղծ երախտագիտությամբ են համակված դեպի Ն. Ս. Խրուշչովը՝ հանուն աշխարհի բարօրության նրա ազնիվ գործունեության համար։*

*Ձեռք բերված հաջողությունները նոր աշխատանքային սխրագործությունների են ոգեշնչում արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսային և սովխոզային դաշտերի աշխատավորներին։ Մեր անծայրածիր Հայրենիքի քաղաքներում և գյուղերում նոր ուժով է բոցավառվում յոթնամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցության հուրը։ Հազարավոր գործարանների և ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների կոլեկտիվներ իրենց համար նոր սահմաններ են նշում, պարտավորություն են ստանձնում յոթնամյակը կատարել 5 տարում, 4 տարում և նույնիսկ ավելի շուտ։*

*Այս ամենը կրկին ու կրկին անգամ վկայում է այն մասին, որ կոմունիզմըն այսօր արդեն դադարել է մարդկության միայն լուսափայլ երազը լինելուց, այն դարձել է մերձավոր, շոշափելի ապագայի գործ։*

*Ադրբեջանի աշխատավորների 40 տարի առաջ տարած հաղթանակը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն էր։ Ե՛վ ռևոլյուցիոն գոտեմարտերի տարիներին, և՛ Ադրբեջանում Սովետական իշխանության հաստատումից հետո մեր ժողովուրդը յուրաքանչյուր օր զգացել և զգում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի իսկական եղբայրական մեծ օգնությունը։*

*Ադրբեջանի նկատմամբ մշտապես բացառիկ հոգատարություն է ցուցաբերել, նրա զարգացման ընթացքին ուշադրությամբ է հետևել մեծ Լենինը։ Նրա իմաստուն խորհուրդներն ու ցուցումները օգնում էին ադրբեջանական պրոլետարիատին՝ բազմաթիվ թշնամիների դեմ նրա մղած պայքարում, դրանք մեր ժողովրդին անգնահատելի օգնություն են ցույց տվել երիտասարդ ռեսպուբլիկայի գոյության առաջին, ամենադժվարին տարիներում։*

*Ահա թե ինչու իր մեծ տոնի այս բերկրալի օրերին ադրբեջանական ժողովուրդը նորից ու նորից անհուն սիրով հիշում է Վլադիմիր Իլյիչ Լենինի*

պայծառ անունը, որի անմահ հանճարը նրան տվեց այն մեծ երջանկությունը, որի մասին դարեր շարունակ երազել են նրա լավագույն որդիներն ու դուստրերը։

Ադրբեջանական ժողովուրդն այս օրերին համակված է ջերմ սիրով, սրտաբուխ շնորհակալությամբ իր մեծ եղբոր՝ ռուս ժողովրդի նկատմամբ, որը խոշոր ավանդ է ներդրել այդ հաղթանակի նվաճման գործում։

Սերտ, անխզելի կապերով է կապված ադրբեջանական և ռուս ժողովուրդների ճակատագիրը։ Ադրբեջանի միացումը Ռուսաստանին, որը պետական մի իմաստուն մեծ ակտ էր, վերջ դրեց ադրբեջանական հինավուրց հողի վրա կատարվող օտարերկրյա զավթիչների բազմաթիվ ներխուժումներին։ Ռուսաստանի հետ ստեղծված սերտ տնտեսական և կուլտուրական կապերը բարերար ազդեցություն գործեցին Ադրբեջանի զարգացման վրա։ Եվ թեպետ ադրբեջանական ժողովրդի համար ծանր էր ցարական բռնակալ-գաղութարարների ճնշումը, բայց կալվածատերերի և ազնվականների Ռուսաստանի հետ միասին գոյություն ուներ նաև Ռադիշչևի ու Պուշկինի, Գերցենի և Չերնիշևսկու Ռուսաստանը։ Ազատատենչ ադրբեջանցիներն այդ Ռուսաստանին էին ուղղում իրենց հայացքները, նրա հետ էին կապում իրենց իղձերը, նրան համարում էին իրենց մերձավոր բարեկամը և ուսուցիչը։

Ադրբեջանական կառավարությանը 1920 թվականի մայիսի 5-ին ուղարկած հեռագրում Վլադիմիր Իլյիչ Լենինը բացառիկ սրտակցությամբ, հայրական ջերմությամբ ողջունեց Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակը։ Նա հաստատ համոզվածություն հայտնեց այն մասին, որ երիտասարդ Ադրբեջանական ռեսպուբլիկան կպահպանի իր ազատությունն ու անկախությունը։ «Կեցցե՛ Ադրբեջանի և Ռուսաստանի բանվորների և գյուղացիների դաշինքը»,— այսպիսի բոցաշունչ խոսքերով էր ավարտվում Իլյիչի հեռագիրը։ Մեծ առաջնորդի այս խոսքերը ցույց են տալիս, թե ինչ հսկայական նշանակություն ունի ադրբեջանցի և ռուս աշխատավորների, մեր երկրի բոլոր ժողովուրդների համատեղ պայքարը։ Այդ միասնության մեջ է մեր ուժը, մեր հզորությունը, երկրի բոլոր ժողովուրդների էկոնոմիկայի և կուլտուրայի ծաղկման կենսատու աղբյուրը, ՍՍՌՄ ժողովուրդների ազատության ու անկախության հուսալի երաշխիքը։

Ադրբեջանական ժողովուրդը, նրա պարտիական կազմակերպությունը հարուստ են իրենց պանծալի ռևոլյուցիոն և ինտերնացիոնալ տրադիցիաներով։ Մ. Գորկուն ուղղած իր հայտնի նամակում Վ. Ի. Լենինը դեռևս 1913 թվականին բացառիկ բարձր գնահատական տվեց Անդրկովկասի, այդ թվում և Ադրբեջանի բոլշևիկյան կազմակերպությունների ռևոլյուցիոն աշխատանքին, այն համարելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների կենսագործման օրինակ, ազգային հարցի պրոլետարական լուծման օրինակ։

Ռևոլյուցիոն ալ դրոշի ներքո Ադրբեջանում ձեռք ձեռքին մարտնչում էին մեր երկրի շատ ազգությունների ներկայացուցիչներ։ Ադրբեջանում ապրում և աշխատում էին բազմաթիվ հիանալի ռևոլյուցիոներներ։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները հպարտ են նրանով, որ Ադրբեջանական բոլշևիկյան կազմակերպությունում են աշխատել Կոմունիստական պարտիայի այնպիսի ականավոր գործիչներ, ինչպես՝ Ստալինը, Շահումյանը, Կալինինը, Ազիզբեկովը, Ջափարիձեն, Ֆիոլետովը, Կիրովը, Նարիմանովը, Օրջոնիկիձեն,



Վորոշիլովը, Միկոյանը և ուրիշներ։ Ադրբեջանի աշխատավորները երբեք չեն մոռանա նրանց, ովքեր մարտնչել են հանուն ադրբեջանական ժողովրդի ազատության, իրենց սրտում ընդմիշտ կպահպանեն Բաքվի պանծալի 26 կոմիսարների պայծառ հիշատակը, որոնք մարմնավորեցին սովետական ժողովուրդների բարեկամությունը, դարձան Ադրբեջանի աշխատավոր ժողովրդի ինտերնացիոնալ տրադիցիաների անմար սիմվոլը։ Ռևոլյուցիոն ճակատամարտերի կրակում ծնված, սոցիալիստական շինարարության տարիներին կոփված մեր ժողովուրդների բարեկամությունն է՛լ ավելի ամրապնդվեց ֆաշիստական զավթիչների դեմ մղված պայքարի ընթացքում, երբ պարտիայի կոչով Ադրբեջանի որդիներն ու դուստրերը, մեր Հայրենիքի մյուս ժողովուրդների հետ միասին, մեծ արիություն էին ցուցաբերում Սովետական բանակի շարքերում և աշխատանքային ճակատում։

Բարեկամական սերտ, իսկական եղբայրական կապերով են կապված Անդրկովկասյան ռեսպուբլիկաների՝ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի աշխատավորները, որոնք միասին են կռվել հանուն Սովետների իշխանության և այժմ ձեռք ձեռքի տված, իրար հետ միասին, մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական ընտանիքում կոմունիզմ են կառուցում։

Դարերի խորքից են գալիս ադրբեջանական և հայ ժողովուրդների անխորտակելի, սրտաբուխ բարեկամության արմատները։ Բազմաթիվ օտարերկրյա զավթիչների դեմ համատեղ դաժան պայքարում կոփված այդ բարեկամությունը ամրացվում էր նաև երկու ժողովուրդների էկոնոմիկայի, կուլտուրայի, գրականության և արվեստի ընդհանրությամբ։ Պատմական ճակատագրերի և դարերի ընթացքում զարգացած սերտ կապերի շնորհիվ հայերի և ադրբեջանցիների մեջ արմատացել են միատեսակ սովորություններ ու բարքեր, իրար նմանվող կացութաձևեր, նրանք երգում են նույն երգերը, պարում են միևնույն մեղեդիներով։

Երկու ժողովուրդների եղբայրությունն իր վառ արտացոլումն է գտել նրանց լավագույն որդիների ամուր բարեկամության մեջ։ Հենց այդպիսի բարեկամությունն էր կապում հայ և ադրբեջանական ժողովուրդների մեծ զավակներ Խաչատուր Աբովյանին և Միրզա Ֆաթալի Ախունդովին, Շիրվանզադեին, Ա. Հախվերդիևին և Ջ. Մամեդկուլիզադեին, Ավետիք Իսահակյանին և Սամեդ Վուրղունին, և այդ բարեկամությունն իր ցայտուն արտահայտությունն էր գտնում նրանց ստեղծագործությունների մեջ։ Ժողովրդական մեծ երգիչ Սայաթ-Նովան իր անգին գործերը հյուսում էր անդրկովկասյան երեք եղբայրական ժողովուրդների լեզուներով։ Ադրբեջանցիների և հայերի բարեկամության նշանավորումը հանդիսացավ սովետական ադրբեջանական դրամատուրգիայի հիմնադիր Ջաֆար Ջաբարլիի «1905 թվականին» անմահ պիեսը, որի մեջ նա մեծ վարպետությամբ ցույց տվեց այդ բարեկամության ամբողջ խորությունը, անկեղծությունն ու անխզելիությունը։

Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորության դասակարգային թշնամիների՝ մուսաֆաթիստների և դաշնակների ամեն տեսակ բանսարկությունները, ինչպես նաև իմպերիալիստների պրովոկացիաները չկարողացան գժտություն սերմանել հայ և ադրբեջանական ժողովուրդների միջև, թուլացնել նրանց սերտ կապերը։ Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակի համար

մղվող պայքարում ադրբեջանական պրոլետարիատի հետ ուս-ուսի մարտնչում էին նաև աշխատավոր հայերը։ Սովետական Ադրբեջանի բանվորներն ու գյուղացիները օգնության եկան Հայաստանի աշխատավորներին, երբ նրանք պայքար ծավալեցին այն բանի համար, որպեսզի սեփական ձեռքն առնեն իրենց ճակատագիրը։

Սովետական Ադրբեջանի քաղաքների և գյուղերի աշխատավորները սրբությամբ են հարգում հայ ժողովրդի պանծալի զավակների հիշատակը, որոնք իրենց կյանքը տվին հանուն եղբայրական Ադրբեջանի ժողովրդի երջանկության։ Նրանց անունները հավերժացել են. ռեսպուբլիկայի շատ բնակավայրեր, շրջաններ և քաղաքներ, փողոցներ կրում են նրանց անունը։ Ադրբեջանի Կոմպարտիայի XXIV համագումարի նախօրյակին Բաքվում դրվեց Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչներից մեկի, Մեծ Լենինի հավատարիմ զինակցի և աշակերտի, հայ ժողովրդի պանծալի զավակ Ստեփան Շահումյանի հուշարձանի հիմքը։

Մեր ժողովուրդը ընդմիշտ աչքի լույսի պես կպահպանի և կամրացնի ազգությունների եղբայրությունն ու անխախտ բարեկամությունը, կբազմապատկի իր պանծալի ինտերնացիոնալիստական տրադիցիաները։

Մեծ տոնի այս բերկրալի օրերին ադրբեջանական ժողովուրդը հատուկ հպարտությամբ է նայում իր անցած ուղու վրա։ Ընդամենը 40 տարի է անցել այն օրից, երբ Ադրբեջանում հաղթանակեց Սովետական իշխանությունը։ Դա ոչ մեծ ժամկետ է մեկ մարդու և բոլորովին աննշան ժամկետ՝ ժողովրդի կյանքի համար։ Բայց ինչպիսի՜ թռիչք է կատարել այս չորս տասնամյակներում մեր ժողովուրդը։ Ազատության և անկախության, ժողովրդի ստեղծագործ բոլոր ուժերի ծաղկման պայմաններում մենք մեկ տարվա ընթացքում կարողանում ենք այնքան բան անել, որքան նախկինում ոչ մեկի մտքով չէր անցնի կատարել մի տասնամյակում, իսկ մեկ տասնամյակում կարողանում ենք կատարել այնքան, որքան չէր կարելի կատարել դարերի ընթացքում։ Ահա թե ինչու է այս 40 տարին իր նշանակությամբ գերազանցում մեր ամբողջ նախկին պատմությանը։

Չորս տասնամյակ առաջ Ադրբեջանը Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից մեկն էր, որի մեծ մասն այն ժամանակ դեռ չէր հասել զարգացման կապիտալիստական փուլին, պահպանվում էին նահապետական կենցաղի մնացուկները։ Եվ միմիայն լենինյան իմաստուն ազգային քաղաքականության անշեղ կենսագործման, մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ է, որ Ադրբեջանը հետամնաց ագրարային երկրից վերածվեց բարգավաճող սոցիալիստական ռեսպուբլիկայի՝ բարձր զարգացած արդյունաբերությամբ, ժամանակակից տեխնիկայով հագեցած խոշոր գյուղատնտեսությամբ և առաջավոր կուլտուրայով։

Պատկերացնելու համար, թե ինչ հսկայական թռիչք է կատարել մեր ռեսպուբլիկան այն ժամանակից ի վեր, երբ աշխատավորները իրենց ձեռքը վերցրին իրենց ճակատագիրը, բավական է բերել մի քանի թվեր. 1913 թվականի համեմատությամբ Ադրբեջանի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը, ներառյալ նաև նավթարդյունաբերությունը, ավելացել է 15,5 անգամ, այդ թվում նավթի հանույթը՝ 7 անգամ, գազինը՝ ավելի քան



150 անգամ։ Իսկ ինդուստրիայի մնացած բոլոր ճյուղերը, առանց նավթարդյունաբերության, Սովետական իշխանության տարիներին արտադրանքի թողարկումն ավելացրել են համարյա թե քառասուն անգամ։

Եթե մինչև վերջերս, տրադիցիոն կերպով, Ադրբեջանն անվանում էին նավթի և բամբակի ռեսպուբլիկա, ապա այժմ այդ սահմանումն արդեն ամենևին չի արտահայտում մեր ռեսպուբլիկայի տնտեսական նշանակությունը։ Ներկայումս Ադրբեջանում բուռն զարգացում են ստացել սև և գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, հանքային, էլեկտրատեխնիկական, քիմիական արդյունաբերությունը և մի ամբողջ շարք այլ ճյուղեր։ Հատկապես արագ տեմպերով են զարգանում մեքենաշինությունը և մետաղամշակումը, որոնք 1913 թվականի համեմատությամբ, 124 անգամ ավելացրել են արտադրանքի թողարկումը. 71 անգամ աճել է թեթև ինդուստրիայի ձեռնարկությունների համախառն արտադրանքի թողարկումը։

Անման բացառիկ բարձր տեմպերի է հասել Ադրբեջանի էներգետիկան։ Ռեսպուբլիկայում յուրաքանչյուր բնակչին այժմ ընկնում է 1.600 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա՝ շատ ավելի, քան ոչ միայն Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում, այլև այնպիսի բարձր զարգացած եվրոպական պետություններում, ինչպես Ֆրանսիան և Իտալիան։ Այդ բնագավառում տեղի ունեցած աճը ավելի ակնառու կերպով ցույց է տալիս հետևյալ համեմատությունը. անցյալ տարի Ադրբեջանում արտադրվել է երեք անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան արտադրվել էր ամբողջ ցարական Ռուսաստանում առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին։

Մինչռևոլյուցիոն Ադրբեջանում ամբողջ արդյունաբերությունը կենտրոնացված էր միայն Ապշերոնում։ Տնտեսական և կուլտուրական զարգացման ասպարեզում անդունդ գոյություն ուներ Բաքվի և Ադրբեջանի մյուս շրջանների միջև։ Մինչդեռ այժմ բոլորովին այլ է պատկերը։ Ռեսպուբլիկայում երևան եկան ինդուստրիալ այնպիսի նոր կենտրոններ, ինչպիսիք են՝ Սումգայիթը, Մինգեչաուրը, Դաշքեսանը, Ալի-Բայրամլին և այլն։

Քառասուն տարի առաջ Ադրբեջանը ներմուծում էր արդյունաբերական արտադրանքի համարյա բոլոր տեսակները, իսկ այժմ այն դարձել է մի խոշոր արտահանող, որը լավ հայտնի է համաշխարհային շուկայում։ Ադրբեջանից այժմ մեր Հայրենիքի սահմաններից դուրս են ուղարկվում ավելի քան 120 անուն զանազան արդյունաբերական արտադրանքի տեսակներ։

Վերջին 8—9 տարիներում Ադրբեջանի քաղաքներում և բանվորական ավաններում կառուցված են ավելի շատ բնակարաններ, քան ուներ ռեսպուբլիկայի ամբողջ քաղաքային բնակարանային ֆոնդը 1923 թվականին։ Այդ նույն ժամանակամիջոցում գյուղերում կառուցվել են տասնյակ հազարավոր բնակելի տներ։

Նույնպիսի խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել նաև գյուղատնտեսության մեջ։ Չէ՞ որ ընդամենը մի քանի տասնամյակ առաջ Ադրբեջանում հողի մշակման միակ գործիքն էր փայտյա արորը։ Եվ նույնիսկ այդ էլ գյուղացիական տնտեսությունների միայն քառորդ մասն ուներ։ Սովետական իշխանությունը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը արմատապես փոխեցին իրերի վիճակը, բացեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության մինչ այդ չտեսնված աճի աղբյուրներ, ադրբեջանական գյուղացուն փրկեցին

տրկական աշխատանքից, մուրացիկ կյանքից։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը զարգանում է ժամանակակից տեխնիկայի և առաջավոր գիտության բազայի վրա։ Ներկայումս կոլտնտեսություններում բոլոր հիմնական գյուղատնտեսական աշխատանքների 98,3 տոկոսը կատարվում է տրակտորներով և գյուղատնտեսական այլ մեքենաներով։

Գյուղատնտեսությունն արագ տեմպերով սկսեց զարգանալ վերջին տարիներում, պարտիայի և կառավարության ընդունած այն որոշումներից հետո, որոնք ուղղված էին գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման նպատակին։ Այդ որոշումների կենսագործման շնորհիվ կոլտնտեսությունները զգալիորեն ամրապնդվեցին տնտեսապես, բարելավվեց նրանց նյութա-տեխնիկական բազան, ընդարձակվեցին ցանքատարածությունները, աճեց գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, զարգացավ անասնաբուծությունը, ավելացավ նրա մթերատվությունը։ 1953 թվականի համեմատությամբ 1,5—2 անգամ ավելացել է հացահատիկի, թեյի, ծխախոտի, բանջարեղենի, շերամի բոժոժների, մսի, կաթի, ձվի, բրդի արտադրությունը։ Շեշտակիորեն աճել են ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների եկամուտները։

Նոր ջրանցքներից ջուր ստացան հարյուր հազարավոր հեկտարներով ապապակած տափաստաններ։ 1913 թվականի համեմատությամբ 3 անգամ ավելացան ոռոգվող հողատարածությունները։ Սովետական իշխանության տարիների ընթացքում գրեթե հինգ անգամ աճեց բամբակի՝ մեր գյուղատնտեսական հիմնական կուլտուրայի արտադրությունը։

Ադրբեջանական ժողովուրդը սոցիալական և ազգային կեղեքման դարավոր խավարի միջից է անցկացրել իր հոգևոր կուլտուրայի հարստությունը, իր անթառամ տաղանդը։ Սակայն ժողովրդի ստեղծագործ ուժերն իսկական ծաղկման հասան միայն այն ժամանակ, երբ նա դարձավ իր բախտի տերը։ Սովետական իշխանության տարիներին Ադրբեջանում իրագործվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա, որը ռեսպուբլիկայի էկոնոմիկայում տեղի ունեցած արմատական փոփոխությունների օրինաչափ արդյունքն էր։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անսահման հնարավորություններ ստեղծեցին գիտության և տեխնիկայի, գրականության ու արվեստի համակողմանի զարգացման համար, ժողովրդական տաղանդների ծաղկման համար։ Ադրբեջանական ժողովրդի բուռն զարգացող՝ ձևով ազգային բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի դարձյալ մի անհերքելի ապացույցն է։

Ադրբեջանը, որտեղ մինչև ռևոլյուցիան տասը մարդուց ինը ոչ կարդալ գիտեր, ոչ էլ գրել, այժմ 10 հազար բնակչին ընկնող ուսանողների թվով բավականին ետ է թողել ոչ միայն իր հարևան Թուրքիային, այլև այնպիսի երկրների, ինչպիսիք են Անգլիան և Ֆրանսիան։

Ներկայումս ռեսպուբլիկայում կա Գիտությունների երկու ակադեմիա, տասնյակ այլ գիտա-հետազոտական հիմնարկներ, 12 բուհ, 67 տեխնիկում և այլ ուսումնական հաստատություններ։ Ադրբեջանում ուսուցման բոլոր բնագավառներում ընդգրկված է մոտ 830 հազար մարդ։ Այդ նշանակում է, որ Ադրբեջանի յուրաքանչյուր չորրորդ մարդը սովորող է։ Ռեսպուբլիկայում



աճել է ազգային ինտելիգենցիայի մի մեծ բանակ։ Մեզանում ժողովրդական տնտեսության մեջ այժմ զբաղված է բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 121 հազար մասնագետ։

Հսկայական քանակությամբ հասարակական-քաղաքական, գեղարվեստական և տեխնիկական գրականություն են թողարկում ռեսպուբլիկայի հրատարակչությունները։ Սովետական իշխանության տարիներին Ադրբեջանում հրատարակվել է ավելի քան 200 միլիոն տպաքանակ գիրք, որից մեկ քառորդը՝ ադրբեջանական գեղարվեստական գրականություն։ Լայնորեն թարգմանվում են ՍՍՌՄ-ի և արտասահմանյան երկրների կլասիկ և ժամանակակից գրողների ստեղծագործությունները։

Զգալի հաջողությունների է հասել ռեսպուբլիկայի երաժշտական կուլտուրան, աճել է կոմպոզիտորների մի տաղանդավոր պլեադա։ Ադրբեջանական երաժշտությունը գնալով ավելի մեծ ճանաչում է գտնում ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։ Մոսկվայում և Լենինգրադում, եղբայրական ռեսպուբլիկաների քաղաքներում համերգային ծրագրերում հաջողությամբ կատարվում է ադրբեջանական երաժշտությունը, եթերում ավելի հաճախակի են հնչում մեր կոմպոզիտորների ստեղծագործությունները։ Գնալով ավելի շատ և ավելի լավ ճանաչում են գտնում Սովետական Ադրբեջանի կոմպոզիտորների ստեղծագործությունները ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, Արևմտյան Եվրոպայում և Ամերիկայում։ Հսկայական հաջողությունների են հասել նաև ադրբեջանական կինոն, թատրոնը և կերպարվեստը։ Ադրբեջանական արվեստի և գրականության՝ անցյալ տարի Մոսկվայում տեղի ունեցած դեկադայի ժամանակ մեր ստեղծագործական աշխատողները նվաճեցին մայրաքաղաքի աշխատողների բացառիկ բարյացակամ վերաբերմունքը և վերին աստիճանի խստապահանջ հանդիսատեսի բարձր գնահատականը։

Ադրբեջանի աշխատավորների առողջության պահպանմանն է ծառայում բժշկական աշխատողների բազմահազար բանակը։ Բավական է ասել, որ բնակչության հազար մարդուն հասնող բժիշկների թվով մեր ռեսպուբլիկան անցել է բոլոր կապիտալիստական երկրներից։

Սովետական իշխանության բացառիկ կարևոր նվաճումներից է ադրբեջանցի կանանց ազատագրումը, որոնք այժմ մեծ դեր են խաղում ռեսպուբլիկայի տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։

Սովետական Ադրբեջանը հանդիսանում է բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն, այն կառավարում են իրենք՝ աշխատավորները, նրանց ընտրած իշխանության օրգանի՝ աշխատավորների դեպուտատների Սովետների միջոցով։ Ամբողջ Ադրբեջանական ՍՍՌ-ում Սովետների մեջ ընտրված են ավելի քան 33.500 դեպուտատներ։ Նրանց կազմում կան ավելի քան 3.900 բանվորներ և 17.000 կոլտնտեսականներ։ Սովետներում լայն չափերով է ներկայացված ժողովրդական ինտելիգենցիան։ Դեպուտատների թվում մոտ 13.300-ը կանայք են։ Այս ամենը համոզիչ կերպով ասում է այն մասին, որ մեր ռեսպուբլիկայի իսկական տերերը աշխատավորներն են, որ սովետական կարգերն իրենցից ներկայացնում են դեմոկրատիայի բարձրագույն ձևը, որը դեմոկրատիա է ամենալայն ժողովրդական մասսաների համար։

Ադրբեջանի աշխատավորները, ինչպես և բոլոր սովետական մարդիկ, հատկապես մեծ հաջողությունների են հասել վերջին տարիների ընթացքում,

երբ պարտիան իրականացրեց մի շարք միջոցառումներ, որոնք ուղղված են տնտեսական և կուլտուրական շինարարության, օրենսդրության բնագավառներում միութենական ռեսպուբլիկաների իրավունքների հետագա ընդլայնման, տեղական Սովետների դերի բարձրացման, ազգային ռեսպուբլիկաներում էկոնոմիկայի և կուլտուրայի է՛լ ավելի արագ զարգացումն ապահովելու նպատակին, միջոցառումներ, որոնք ապահովում են ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների միջև լենինյան բարեկամության հետագա ամրապնդումը։

Ինչպես Սովետական Միության բոլոր ժողովուրդները, այնպես էլ ադրբեջանական ժողովուրդն այժմ ապրում է իր զարգացման մի նոր, պատմության մեջ հավասարը չունեցող ժամանակաշրջան։ Ադրբեջանի աշխատավորները, ոգեշնչված կոմունիստական շինարարության վիթխարի հեռանկարներով, մեր պարտիայի XXI համագումարի մշակած ծրագիրն ընդունեցին որպես գործողության մարտական մի պլան, որը կոչում է նոր խոյանքների ու նոր սխրագործությունների։

Առաջիկա յոթնամյակում նոր, աննախընթաց զարգացում կստանան Ադրբեջանի ժողովրդական տնտեսությունը և կուլտուրան։ Յոթնամյա պլանով նախատեսում են Ադրբեջանի ամենահարուստ բնական և տնտեսական ռեսուրսների առավել լրիվ և նպատակահարմար օգտագործում. դրանք ամբողջությամբ և լիովին բավարարում են մեր ռեսպուբլիկայի կենսական կարիքները։

Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կհասնի 29,3 միլիարդ ռուբլու, այսինքն՝ 1,6 անգամ կգերազանցի նախորդ յոթ տարվա կապիտալ ներդրումները։ Այդ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը կաճի 90 տոկոսով։ Նավթի հանույթը յոթնամյակի ընթացքում կաճի 33 տոկոսով և կհասնի 22 միլիոն տոննայի, իսկ գազի հանույթը, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 2,6 անգամ և կկազմի 11,6 միլիարդ խորանարդ մետր։ 32 տոկոսով կաճեն նավթի վերամշակման արտադրական հզորությունները, զգալիորեն կավելանա սպիտակ նավթամթերքների հանույթը։

Նավթային աշտարակների պողպատյա ոտքերը վաղուց դուրս են եկել մինչև վերջերս Ադրբեջանի միակ նավթային բազան համարվող Ապշերոնյան թերակղզու սահմաններից։ Յոթնամյակում ադրբեջանական նավթագործները կյուրացնեն վառելիքի նոր, հարուստ հանքավայրեր Մերձքուռյան հարթավայրում, բաց ծովում և այլ վայրերում։ Ծովային շերտերի արդյունաբերական մշակում կկատարվի ծովային այնպիսի խորքերում, որոնք գերազանցում են 45 մետրից։

Հզոր զարգացում կստանա նաև քիմիական արդյունաբերությունը, որը յոթնամյակի վերջում 1958 թվականի համեմատությամբ կթողարկի 6 անգամ ավելի արտադրանք։ Սինթետիկ կաուչուկի և ավտոդողերի գործարաններից անմիջապես հետո, գործարաններ, որոնք արդեն արտադրանք են տալիս, շարք կմտնեն նոր գործարաններ, որոնք երկրին մեծ քանակությամբ քիմիական նյութեր կտան։ Աշխատավորների կենցաղի մեջ հաստատուն կերպով կմտնեն թանկարժեք իրերի էժանագին և հարմարավետ այնպիսի փոխարինիչներ, ինչպիսիք են՝ արհեստական բրդանման թելը, արհեստական կաշին և այլն, որոնց արտադրությունը կազմակերպվում է ռեսպուբլիկայում։

Ռեսպուբլիկայի էներգետիկ բալանսում կարևոր դեր կխաղա ներկայումս Ալի-Բայրամլիում կառուցվող Անդրկովկասի խոշորագույն ջերմաէլեկտրակայանը։ Երկրի բաց տիպի առաջին այդ էլեկտրակայանը ամենից ավելի խնայողական էլեկտրակայանը կլինի ոչ միայն կապիտալ ծախսերով, այլև մշակվող էներգիայի ինքնարժեքով։

Յոթնամյակում 3 անգամ կավելանա մեքենաշինական արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը։ Նախագծվում է սարքերի արտադրությունն ավելացնել 7,6 անգամ, էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքը՝ 6,1 անգամ. գրեթե կկրկնապատկվի նավթային սարքավորումների արտադրությունը. 2,2 անգամ կավելանա մետալուրգիական և հանքային արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը, 2,6 անգամ՝ շինանյութերի արտադրությունը, 64 տոկոսով՝ թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը։ Բամբակյա կտորեղենի արտադրությունն, օրինակ, յոթնամյակում կաճի 62 տոկոսով, մետաքսեղենինը՝ 30 տոկոսով, բրդյա գործվածքեղենինը՝ ավելի քան 3,5 անգամ։

Յոթնամյակում նոր խոշոր քայլ կկատարի ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ 1965 թվականին Ադրբեջանը երկրին կտա 600 հազար տոննա բամբակի հումք. այդ երկու անգամ ավելի է, քան անցյալ տարի։ Հացահատիկի արտադրությունը կավելանա 1,9—2,2 անգամ, թթենու շերամի բոժոժինը՝ 1,2 անգամ, խաղողինը և պտուղներինը՝ 2,7 անգամ, մսինը՝ 1,8 անգամ և այլն։

Հսկայական թափ կստանա ջրային տնտեսության շինարարությունը։ Յոթնամյակում ջրովի հողերի տարածությունը կավելանա մոտավորապես 200 հազար հեկտարով։ Ավելի քան 140 հազար հեկտար տարածության վրա կբարելավվի ոռոգումը։ Նախագծվում է ջրարբի դարձնել ավելի քան մեկ միլիոն հեկտար ձմեռային արոտավայրեր։

Նախատեսվում է սովխոզային արտադրության հետագա զարգացում։ Ռեսպուբլիկայում կստեղծվեն բամբակագործական, բանջարաբուծական, անասնաբուծական և խաղողագործական նոր սովխոզներ, կընդլայնվեն գոյություն ունեցող տնտեսությունները։ Յուրաքանչյուր 100 հեկտար գյուղատնտեսական հողատարածության հաշվով սովխոզները պետք է ավելացնեն մսի արտադրությունը ավելի քան 3 անգամ, կաթինը՝ ավելի քան 5 անգամ, բրդինը՝ ավելի քան 1,5 անգամ։

Նոր խոշոր առաջընթաց քայլ կարվի նաև ժողովրդի բարեկեցության բարձրացման, նրա կուլտուրայի զարգացման գործում։ Աշխատավորների նյութական բարեկեցության աճն իր ցայտուն արտահայտությունը կգտնի բնակչության կողմից արդյունաբերական և մթերային ապրանքների սպառման զգալի բարձրացման մեջ։ Յոթնամյակում պետական և կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառությունը 8,5 միլիարդից կհասնի 13,3 միլիարդ ռուբլու։

Ադրբեջանում նախագծված է կառուցել դպրոցներ՝ 129 հազար աշակերտի համար, հիվանդանոցներ՝ 9.000 մահճակալով և այլն։ Աննախընթաց թափ կստանա բնակարանային շինարարությունը։ Մինչև 1965 թվականը ռեսպուբ-

լիկայում կկառուցվի 10 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, մինչդեռ նախորդ յոթ տարիներում կառուցվել է ընդամենը 3 միլիոն քառակուսի մետր

Կընդլայնվի գիտա-հետազոտական հիմնարկների ցանցը, կամրապնդվի նրանց նյութա-տեխնիկական բազան։ Միայն ռեսպուբլիկական Գիտությունների ակադեմիայի պահպանման վրա առաջիկա յոթնամյակում կծախսվեն երեք անգամ ավելի շատ միջոցներ, քան նախորդ յոթ տարիներում։

Կենսագործելով պարտիայի վիթխարի կանխագծումները, Ադրբեջանի բանվորները և կոլտնտեսականները, աշխատավոր ինտելիգենցիան վստահորեն հաղթահարեցին յոթնամյակի առաջին բնագիծը, արժանի ավանդ մտցրին կոմունիզմի կառուցման համար սովետական ժողովրդի մղած պայքարում։ Մեր արդյունաբերությունը տարեկան պլանը կատարեց 102 տոկոսով, նախորդ տարվա համեմատությամբ 6 տոկոսով ավելացնելով արտադրանքի ծավալը։ Ինչպես և նախորդ տարիներում, առավելագույն զարգացում ստացավ ծանր ինդուստրիան, որը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հիմքն է կազմում։ Նավթի հանույթը մեկ տարում աճեց 580 հազար տոննայով։ Բացվեցին նավթի և գազի նոր և մասամբ ուրվագծված, մինչև այդ հայտաբերված հանքավայրեր Նեֆտյանիե կամնիի, Ջիրի, Քյանիզադաղի, Քյուրովդաղի, Պեսչանի կղզու, Միշովդաղի շրջանում և այլն։

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել գազի հանույթի զարգացման և արդյունաբերական ձեռնարկությունների ու կոմունալ-կենցաղային օբյեկտների գազիֆիկացման գործում։ 1959 թվականին 400 միլիոն խորանարդ մետր ավելի գազ է հանված, քան նախորդ տարում։ Նշված ժամկետից 4 ամիս 20 օր շուտ ավարտվեց Անդրկովկասյան մագիստրալային գազամուղի կառուցումը։ Հոկտեմբերի 42-րդ տարեդարձի նախօրյակին Ղարադաղի գազը հասավ եղբայրական Վրաստանի մայրաքաղաքը՝ Թբիլիսի, իսկ այս տարվա հունվարի 12-ին՝ եղբայրական Հայաստանի մայրաքաղաքը՝ Երևան։ Այդ գազամուղի գործարկումը վերածվեց Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի ժողովուրդների անխորտակելի բարեկամության տոնի, դարձավ Անդրկովկասի ժողովուրդների եղբայրության սիմվոլը։

Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի աճը անցյալ տարի կազմեց 19 տոկոս։ Պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարեցին, զգալիորեն ավելացրին արտադրանքի թողարկումը մեքենաշինական, մետալուրգիական, հանքային, ինչպես նաև թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունները։

Ադրբեջանի գյուղատնտեսության աշխատավորները գերազանցեցին պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու պլանները բոլոր տեսակների գծով, բացառությամբ բամբակից, թեպետ պետությանը հումք է հանձնվել 30 հազար տոննա ավելի, քան 1958 թվականին։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսականները և սովխոզների բանվորները պարտավորություն են ստանձնել խաղողի, պտուղների, մսի, կաթի, բրդի և ձվի արտադրության յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները կատարել 5 տարում, բոժոժի, բանջարեղենի, թեյի կանաչ տերևի գծով՝ 4 տարում և ծխախոտինը՝ 3 տարում։

Ընթացիկ տարվա փետրվարին տեղի ունեցավ Ադրբեջանի Կոմպարտիայի



XXIV համագումարը. վերլուծելով ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատանքը, սահմանեց ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի ուղիները։ Համագումարը դիմեց բոլոր բանվորներին և բանվորուհիներին, կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, ինտելիգենցիային, պատանիներին ու աղջիկներին, ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորներին, կոչ անելով՝ Ադրբեջանի Կոմպարտիայի և Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակի 40-ամյակը դիմավորել յոթնամյակի երկրորդ տարվա չորս ամիսների ծրագիրը ժամկետից շուտ կատարելով։

Ոգեշնչված այդ կոչով, Ադրբեջանի աշխատավորներն իրենց մեծ տոնը դիմավորում են արտադրական խոշոր նվերներով։ Այդ օրերին նավթահորերից և գործարաններից, կոլտնտեսություններից և կառույցներից, ֆաբրիկաներից և տրանսպորտի ձեռնարկություններից անընդհատ հոսանքով ուրախ լուրեր են գալիս այն հիանալի աշխատանքային հաջողությունների մասին, որ ձեռք են բերվել Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակի և ռեսպուբլիկայի Կոմպարտիայի 40-ամյակի պատվին ծավալված աշխատանքային հերթափոխում։ Այդ հաջողություններն ամուր հիմք են ծառայում պետական պլանների և Ադրբեջանի աշխատավորների 1960 թվականին վերցրած սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարման համար։

Ներկայիս Ադրբեջանը՝ լենինյան իդեաների, Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության, բարեկամության և եղբայրության գաղափարների հաղթանակի ցայտուն օրինակն է։ Ազատ, բարգավաճող Սովետական Ադրբեջանը Արևելքի սահմանագլխում վեր է խոյանում որպես սոցիալիզմի և խաղաղության մի հզոր փարոս։

Ադրբեջանական ժողովրդի բոլոր նվաճումները մեր երկրի մեծագույն հաղթանակների անբաժանելի մասն են կազմում։ Այս բերկրալի օրերին ռեսպուբլիկայի աշխատավորների սրտերը լի են ջերմ սիրո և որդիական նվիրվածության զգացմունքներով հանդեպ մեր մեծ պարտիան, որի լենինյան դրոշը մեզ առաջնորդում է դեպի կոմունիզմ։

Իր ազգային տոնի օրը ադրբեջանական ժողովուրդը, սերտ համախմբված Կոմունիստական պարտիայի շուրջը, հավաստիացնում է նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեին, որ իր բոլոր ուժերը, իր ամբողջ կարողությունն ու էներգիան կտա ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող պայքարին, արժանի ավանդ կմուծի մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։

---

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՄՏՔԻ ՀԱՆՃԱՐԸ

*Ա. ԹԵԼՈՒՆՑ*

*Վլադիմիր Իլյիչ Լենինի ամբողջ տիտանական գործունեությունը ռևոլյուցիոն պրակտիկայի ու ռևոլյուցիոն թեորիայի միասնության մարմնացման անզուգական օրինակ է։ Մարդկության պատմության մեծագույն ռևոլյուցիայի ոգեշնչողն ու առաջնորդը միաժամանակ մեր դարաշրջանի մեծագույն մտածողն ու տեսաբանն էր։ Միայն ռևոլյուցիոն փոթորիկների դարաշրջանը, աշխատավոր ժողովրդի ազատագրական պայքարի դարաշրջանը կարող էր ծնել մտքի ու գործի, անսպառ եռանդի ու անհողդողդ կամքի այնպիսի հսկա, ինչպիսին Լենինն է, որն իր մեջ մարմնացնում էր բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավոր մարդկության նվիրական զգացմունքներն ու խոհերը, հույսերն ու իղձերը։*

*Գիտական կոմունիզմի հիմնադիր Կարլ Մարքսը գրել է. փիլիսոփաները միայն տարբեր ձևերով* բացատրել են *աշխարհը, բայց խնդիրը նրա* փոխելն է: *Այդպիսի խնդրի ծագումը պայմանավորված էր պատմության արենայում պրոլետարիատի, որպես աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման ռեալ ուժի, հանդես գալով։ Տեսական մտքի առջև ծառացավ աննախադեպ խնդիր՝ մշակել, գիտականորեն հիմնավորել ու պրակտիկայում կիրառել աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման ուսմունքը։ Դա գիտական մտքի մեծագույն խնդիրն էր, որը լուծեցին պրոլետարիատի մեծ առաջնորդները՝ Մարքսը, Էնգելսը և Լենինը։*

*Լենինիզմը առաջացավ մարքսիզմի գրանիտե հիմքի վրա, որպես նրա հետագա ստեղծագործական զարգացում ու հարստացում։ Մարքսիզմ-լենինիզմի անպարտելի ուժն այն է, որ արտացոլում է հասարակության օբյեկտիվ ընթացքն ու օրինաչափությունները պատմության պրոգրեսը կրողի՝ ռևոլյուցիոն պրոլետարիատի դիրքերից, արտահայտում է այդ դասակարգի արմատական ու կենսական շահերը։ Պրոլետարիատի ազատագրական պայքարի, ամբողջ աշխատավոր մարդկության պայծառ ապագայի կառուցման տեսությունն ու ուղեցույցը մարքսիզմ-լենինիզմն է, որն ամենազոր է, որովհետև ճշմարիտ է ու ստեղծագործ։*

*Վ. Ի. Լենինի ռևոլյուցիոն գործունեության սկիզբը համընկավ պատմական այնպիսի իրադարձության հետ, ինչպիսին ռևոլյուցիոն շարժման կենտրոնի Ռուսաստան տեղափոխվելն էր։ Ռուսաստանը, որտեղ կոփվում և առնանում էր պրոլետարիատը, և որը կանգնած էր մեծագույն ռևոլյուցիայի նախօրյակին, դարձավ լենինիզմի հայրենիքը, իսկ նրա ռևոլյուցիոն պրոլետա-*



*րիատը, լենինիզմի դրոշի տակ մաքառելով ու կործանելով հին հասարակարգը, դարձավ միջազգային պրոլետարիատի ավանգարդը։*

*Լենինը ռևոլյուցիոն մտքի հանճարն է։ Նա, ինչպես և Մարքսը, գիտության մեջ տեսնում էր ռևոլյուցիոն ու հասարակության առաջ մղիչ ուժ և գիտության ասպարեզում, ինչպես և բոլոր մյուս բնագավառներում, իր ամբողջ ընդունակություններն ու եռանդը ծառայեցնում էր մի նպատակի՝ մարդկության ազատագրման գործին։ Ուսումնասիրելով Մարքսի և Էնգելսի հանճարեղ ժառանգությունը, նա դեռևս իր ռևոլյուցիոն գործունեության սկզբին ընդգծեց ոչ միայն դրա պաշտպանության ու կիրառման, այլև ստեղծագործական զարգացման անհրաժեշտությունը։ «Մենք,— գրել է Վ. Ի. Լենինը 1899 թ.,—Մարքսի թեորիայի վրա բնավ էլ չենք նայում որպես մի ինչ-որ ավարտուն ու անձեռնմխելի բանի. մենք համոզված ենք, ընդհակառակը, որ այն դրել է միայն անկյունաքարերն այն գիտության, որը սոցիալիստները* պետք է *առաջ շարժեն բոլոր ուղղություններով, եթե նրանք չեն ցանկանում կյանքից ետ մնալ։ Մենք կարծում ենք, որ ռուս սոցիալիստների համար հատկապես անհրաժեշտ է Մարքսի թեորիայի* ինքնուրույն *մշակումը, որովհետև այդ թեորիան տալիս է միայն ընդհանուր* ղեկավար *դրույթները, որոնք կիրառվում են* մասնավորապես *Անգլիայի նկատմամբ այլ կերպ, քան Ֆրանսիայի նկատմամբ, Ֆրանսիայի նկատմամբ այլ կերպ, քան Գերմանիայի նկատմամբ, Գերմանիայի նկատմամբ այլ կերպ, քան Ռուսաստանի նկատմամբ (Երկեր, հ. 4, էջ 262)։*

*Վ. Ի. Լենինն անհաշտ էր տեսության հանդեպ ամեն մի անհոգության ու թերագնահատման նկատմամբ։ Առանց ռևոլյուցիոն տեսության չի կարող լինել և ռևոլյուցիոն շարժում,— այսպես է նա գնահատել տեսության վիթխարի դերն ու նշանակությունը։ Այդպիսի տեսություն, որը բանվոր դասակարգի շարժման մեջ մտցնում է գիտակցականություն, նպատակասլացություն ու կամքի միասնություն, կարող է լինել միայն* ստեղծագործական *մարքսիզմը, զարգացող ու հարստացող, կյանքի դիալեկտիկան խորապես արտահայտող ուսմունքը, որի հանճարեղ կորիֆեյը Վ. Ի. Լենինն էր։*

*Վ. Ի. Լենինը զարգացրեց Մարքսիզմը պատմական նոր պայմաններում, հարստացրեց նրա բաղկացուցիչ մասերը նոր դրույթներով ու եզրակացություններով, պատասխան տվեց այն հարցերին, որ պատմությունը դրել էր գիտական մտքի առջև մարքսիզմի հիմնադիրների մահից հետո։ Պատմական նոր դարաշրջանում մարդկային մտքի առջև դրված էին խնդիրներ, որոնք շոշափում էին ժողովուրդների կենսական շահերը, նրանց կյանքն ու պայքարը, ներկան ու ապագան։ Աշխատավոր մարդկությունը Լենինի հանճարին է պարտական այն բանով, որ նա ոչ միայն հարստացրեց ու զարգացրեց մարքսիզմը, այլև ղեկավարեց պրոլետարիատի ազատագրական մեծ պայքարը, որը պատմության մեջ առաջին անգամ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ պսակվեց հաղթանակով։*

*Մարքսիզմի զարգացման կլասիկ օրինակ է հանդիսանում կապիտալիզմի վերջին, իմպերիալիստական ստադիայի լենինյան վերլուծությունը։ Իմպերիալիզմին վերաբերող լենինյան աշխատությունները, հատկապես «Իմպե-* րիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա» *հանճարեղ երկը, կազմում են Մարքսի «Կապիտալի» անմիջական շարունակությունը։ Այդ եր-*

կը, որի ստեղծման համար Վ. Ի. Լենինը ուսումնասիրել է վիթխարի քանակությամբ փաստական նյութեր, վիճակագրական տվյալներ ու հարյուրավոր աշխատություններ, բացահայտում է իմպերիալիզմի տնտեսական էությունը, առանց որի ուսումնասիրության, ինչպես նշում էր Լենինը, ոչինչ չի կարելի հասկանալ ժամանակակից քաղաքականության ու ժամանակակից պատերազմի գնահատությունից։ Իմպերիալիզմի խոր վերլուծությունից Վ. Ի. Լենինը հանգեց այն եզրակացության, որ դա կապիտալիզմի զարգացման վերջին ստադիան է, որտեղ այդ հասարակարգի ներհատուկ հակասությունները հասնում են ծայրահեղ սրման, դարձնում կապիտալիզմը պարազիտային ու փտող։ Լենինյան դրույթն այն մասին, որ իմպերիալիզմը սոցիալիստական ռևոլյուցիայի նախօրյակն է, լիովին հաստատվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով և, հետագայում, ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիաների հաղթանակով Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում, այդ թվում և աշխարհի ամենաբազմամարդ երկրում՝ Չինաստանում։

Ամեն գույնի ռեֆորմիստներ ու ռևիզիոնիստներ անցյալում և այժմ ճըգնել ու ճգնում են ապացուցել, որ իբր կապիտալիզմը նոր պայմաններում փոխել է իր էությունն ու բնույթը, զերծ է վաղեմի հակասություններից ու արատներից, դարձել է «դեմոկրատական», «ժողովրդական» և այլն։ Բայց նրանց հորինած «թեորիաներն» ու կոնցեպցիաները ցնդում են օճառի պղպջակի նման, իսկ իրականությունը, կյանքը անհերքելիորեն ապացուցում են իմպերիալիզմի լենինյան վերլուծության ճշմարտացիությունն ու խորությունը։

Կապիտալիզմը, ինչպես և ամեն ինչ աշխարհում, իրոք գտնվում է շարժման ու փոփոխության մեջ. այդ բանն ամենից ավելի հայտնի է մարքսիստներին, որոնք զինված են մատերիալիստական դիալեկտիկայով։ Բայց ոչ մի փոփոխություն չի ոչնչացնում կապիտալիզմի հակասություններն ու արատները, չի վերացնում շահագործումն ու կեղեքումը, չի ստեղծում ժողովրդական կարգեր այնտեղ, որտեղ արտադրության միջոցները գտնվում են շահագործողների ձեռքում և ամբողջ սոցիալական սիստեմը խարսխված է մարդու կողմից մարդու շահագործման վրա։ Բայց քանի գոյություն ունի այդպիսի սոցիալական սիստեմ, անխուսափելիորեն գոյություն կունենան և նրա բացարձակ ու քողարկված ջատագովները, այդ թվում նաև ռեֆորմիստները և ռևիզիոնիստները, որոնց կոնցեպցիաների սոցիալական արմատներն ու էությունը բացահայտված են Վ. Ի. Լենինի կողմից։ Նա հատկապես ընդգծում էր, որ իմպերիալիստական բուրժուազիան աշխատավոր ժողովրդի տառապանքի ու քրտինքի հաշվին կորզում է գերշահույթ, որից և բաժին է հատկացնում բանվորական արիստոկրատիայի բարձր խավին, կաշառում նրան հազարավոր միջոցներով՝ ուղղակի և անուղղակի, բացարձակ ու քողարկված։ Վ. Ի. Լենինը գրել է. «Բուրժուականացած բանվորների կամ «բանվորական արիստոկրատիայի» այս խավը,— բանվորներ, որոնք լիովին քաղքենի են դարձել իրենց ապրելակերպով, աշխատավարձի չափերով, իրենց ամբողջ աշխարհայեցողությամբ,— II Ինտերնացիոնալի գլխավոր հենարանն է, իսկ մեր օրերում՝ բուրժուազիայի գլխավոր սոցիալական (ոչ զինվորական) հենարանը։ Որովհետև սրանք բուրժուազիայի իսկական գործակալներն են բանվորական շարժման մեջ, կապիտալիստների դասակարգի բանվոր գործակատարները... ռեֆորմիզմի ու շովինիզմի իսկական անցկացնողները» (Երկեր, հ. 22, էջ 250)։



Կապիտալիստական շահագործման փշրանքներով սնվող, իրենց ապրելակերպով ու աշխարհայացքով բուրժուականացած ռեֆորմիստներն ու շովինիստներն այժմ էլ բուրժուազիայի իսկական գործակատարներն ու գործակալներն են բանվորական շարժման մեջ, իսկ նրանց երկվորյակները՝ ռեվիզիոնիստները, մինչև այժմ էլ քողարկվելով մարքսիզմի դիմակի տակ, իրականում մնում են որպես բուրժուական գաղափարախոսության կրողներ և տարածողներ բանվորական շարժման մեջ։ Գունազարդելով ժամանակակից կապիտալիզմը և հավատացնելով, որ նա ինքնաբերաբար անցնում է սոցիալիզմի, ռևիզիոնիստներն իրենց ճիգերն ուղղում են պրոլետարական ռևոլյուցիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի մարքս-լենինյան ուսմունքի դեմ, «ազգային կոմունիզմի» քարոզով պայքարում սոցիալիստական լագերի երկրների անխախտ ու եղբայրական միասնության դեմ։

Կոմունիստական ու բանվորական պարտիաները, զինված մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով և շարունակելով իրենց մեծ ուսուցչի՝ Վ. Ի. Լենինի անհաշտ պայքարն ամեն տեսակ ռևիզիոնիստական սողոսկումների դեմ, գաղափարապես ու քաղաքականապես ջախջախել ու ջախջախում են ռևիզիոնիզմը կոմունիստական ու բանվորական շարժման մեջ։ Այդ գործում իր անգնահատելի ծառայությունն է մատուցում մեծ Լենինի հիմնադրած ու դաստիարակած պարտիան՝ ՍՄԿՊ-ն։ «Կոմունիստական մյուս պարտիաների հետ միասին,— ասված է ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևում,— ՍՄԿՊ-ն պատասխանատվություն է կրում սոցիալիստական լագերի բախտի համար, համաշխարհային կոմունիստական շարժման բախտի համար։ Նա առաջիկայում ևս աննահանջ կերպով կհետևի Մարքսի, Էնգելսի և Լենինի ինտերնացիոնալիստական մեծ ուսմունքին, կպայքարի ամեն գույնի ռևիզիոնիստների դեմ, հանուն մարքսիզմ-լենինիզմի անաղարտության, հանուն համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման նոր հաջողությունների»։

Վ. Ի. Լենինը գաղափարապես ջախջախեց ռեֆորմիստական ու ռևիզիոնիստական «թեորիան» այն մասին, որ իբր պատմական նոր պայմաններում վրա էր հասել «դասակարգային հաշտության» դարաշրջանը և հնացել ու անառարկայական դարձել սոցիալիստական ռևոլյուցիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի մարքսյան ուսմունքը։ Մարքսիզմի դիրքերից նահանջած ու նրա սկզբունքներին դավաճանած այդ մարդիկ մեծ ճակատամարտի նախապատրաստման ժամանակաշրջանը մեկնաբանում են այդ ճակատամարտերից հրաժարվելու իմաստով,— գրել է Վ. Ի. Լենինը։ Նա հանճարեղ խորաթափանցությամբ տեսնում էր, որ կարծեցյալ «սոցիալական խաղաղությունը» ամենից ավելի նման է վառոդի տակառի, որի պայթյունով կսկսվի ռևոլյուցիոն փոթորիկների դարաշրջանը։

Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայություններից մեկն այն է, որ նա զարգացրեց մարքսիստական ուսմունքը ռևոլյուցիայի մասին, ստեղծեց սոցիալիստական ռևոլյուցիայի նոր թեորիա և դրանով զինեց կոմունիստական պարտիային ռևոլյուցիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի համար մղվող պայքարում։ Նա հարստացրեց մարքսիզմը այնպիսի հանճարեղ հայտնագործությամբ, ինչպիսին իմպերիալիզմի ժամանակ կապիտալիզմի անհավասարաչափ ու թռիչքային զարգացման օրենքի բացահատումն է, որից

և բխեցրեց սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը սկզբնապես մի քանի, կամ անգամ մեկ, առանձին վերցրած, երկրում։ Վ. Ի. Լենինը բացահայտեց ռևոլյուցիայի հաղթանակի պայմաններն ու նրա շարժիչ ուժերը, կանխատեսեց նրա զարգացման հեռանկարները, հատկապես ընդգծելով պրոլետարիատի և գյուղացիության դաշինքի դերը, որպես պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի անհրաժեշտ նախապայմանի ու պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքի։

Սոցիալիստական ռևոլյուցիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի լենինյան թեորիան մշակվել է ռևոլյուցիոն շարժման բովում, դիմացել պատմության փորձությանը և դարձել կոմունիստական պարտիայի գործունեության ղեկավար սկզբունքը նոր հասարակարգի համար մղվող պայքարում։ Նրա հանճարեղ դրույթները սոցիալիստական ռևոլյուցիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի ընդհանուր օրինաչափությունների ու առանձնահատուկ գծերի մասին դարձան միջազգային կոմունիստական շարժման ծրագիրը, որով առաջնորդվում են բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները։

Լենինյան հանճարի լույսով է ողողված կոմունիստական հասարակարգի կառուցման ուղին։ Նախկինում կատարված ռևոլյուցիաների գլխավոր խնդիրը հանգել է հնի ոչնչացմանը, իսկ նոր հասարակարգի կազմակերպման գործը վարել է շահագործող դասակարգը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի և նրա կողմից ղեկավարվող գյուղացիության գլխավոր խնդիրը,— ուսուցանում էր Վ. Ի. Լենինը,— ընդհակառակը, պլանային արտադրության ու բաշխման նոր կազմակերպական հարաբերությունների ստեղծման ուղղությամբ ծառացած ստեղծագործական խնդիրն է։ Այդպիսի ռևոլյուցիան,— ընդգծում էր Վ. Ի. Լենինը,— կարող է հաջողությամբ կենսագործվել միայն բնակչության մեծամասնության ինքնուրույն պատմական ստեղծագործության դեպքում։ Պրոլետարիատի դիկտատուրան միայն հնի ոչնչացման համար չէ, նրա գլխավոր խնդիրը անդասակարգ հասարակության նյութական բազայի ստեղծումն է։ Վ. Ի. Լենինը հիմնադրեց սոցիալիստական բազմազգ պետություն, որը մարմնացնում ու իրականացնում է ամենաբարձր տիպի դեմոկրատիան, բացահայտեց նրա ֆունկցիաներն ու դերը կոմունիզմի համար մղվող պայքարում։

Դիմելով երիտասարդ սերնդին՝ կոմունիզմի մեծ տեսաբանն ասում էր. «Ձեր առաջ ծառացած է շինարարության խնդիրը, և դուք կարող եք վճռել այն, միայն տիրապետելով ժամանակից ամբողջ գիտելիքներին, կարողանալով կոմունիզմը սերտած պատրաստի ֆորմուլաներից, խորհուրդներից, դեղատոմսերից, առաջադրություններից, ծրագրերից վերածել ձեր անմիջական աշխատանքը միավորող կենդանի գործի, կոմունիզմը դարձնել ձեր գործնական աշխատանքի ուղեցույցը» (Երկեր, հ. 31, էջ 353)։

Դարձնել կոմունիզմը գործնական աշխատանքի ուղեցույց,— ահա սկզբունքային այն խնդիրը, որ դրել է Վ. Ի. Լենինը կոմունիզմ կառուցող սերնդի առջև, խնդիր, որ այսօր, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, իր ամբողջ հասակով մեկ կանգնած է սովետական ժողովրդի առջև։ Բայց Վ. Ի. Լենինը ոչ միայն դրել է այդ խնդիրը, այլև մշակել կոմունիզմի կառուցման գիտական ծրագիրը, որն ընդգրկում է հասարակական կյանքի



բոլոր բնագավառները՝ սկսած նրա նյութա-տեխնիկական բազայից, մինչև նրա քաղաքական ու պետական կառուցվածքը, աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, կուլտուրան ու գիտությունը։

Վ. Ի. Լենինը կոմունիզմի կառուցման հնարավորությունն ու անխուսափելիությունը հիմնավորում էր ամենից առաջ հասարակության տնտեսական զարգացման օբյեկտիվ օրենքներով, որոնք պրոլետարիատի կողմից իշխանությունը գրավելուց հետո սկսում են գործել ոչ թե կույր անհրաժեշտությամբ, այլ գիտակցվում են մարդկանց կողմից և օգտագործվում հօգուտ ամբողջ հասարակության։ Վ. Ի. Լենինն ուսուցանում էր, որ կոմունիստական հասարակություն կարելի է կառուցել զարգացած նյութա-տեխնիկական բազայի վրա ծանր ինդուստրիայի գերազանց աճի դեպքում, որը և միայն ընդունակ է ապահովելու արտադրական ուժերի աճն ամբողջապես և աշխատանքի բարձր արտադրողականությունը։ Լենինյան հանճարեղ ֆորմուլան—կոմունիզմը սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան — խորապես արտահայտում է կոմունիզմի կառուցման քաղաքական ու տնտեսական գործոնների միասնությունն ու փոխադարձ պայմանավորվածությունը։

Արտադրության միջոցների հանրային սեփականության առկայությունն ու արտադրության պրոցեսի ղեկավարությունը աշխատավորական պետության կողմից, արմատապես փոխում են արտադրության բնույթն ու նպատակը, ստեղծում համապատասխանություն արտադրական հարաբերությունների ու արտադրողական ուժերի միջև, լայն ասպարեզ բացում վերջիններիս անկաշկանդ ու պլանաչափ զարգացման համար, արտադրությունը ենթարկում աշխատավոր ժողովրդի աճող պահանջների բավարարման խնդրին։

Անդասակարգ հասարակարգի կառուցման նախադրյալը նրա տնտեսական բազայի ստեղծումն է։ Սոցիալիզմը խոշոր մեքենայական ինդուստրիայի ծնունդ է, ասում էր Վ. Ի. Լենինը։ Չի կարելի պատկերացնել այդպիսի հասարակարգ առանց տնտեսական հիմնավորվածության, բարձր զարգացած արդյունաբերության ու գյուղատնտեսության, աշխատանքի բարձր արտադրողականության։ Այդպիսի հասարակության կառուցումը հնարավոր է միայն ժողովրդական մասսաների ակտիվ ստեղծագործության դեպքում, որի դերի բացահայտումը կոմունիզմի կառուցման գործում Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայություններից մեկն էր։

Վ. Ի. Լենինը Մարքսի մասին ասում էր, որ նա մասսաների պատմական նախաձեռնությունն ամեն ինչից ավելի բարձր էր գնահատում։ Գիտական կոմունիզմի մեծ հիմնադրի տեսական ու պրակտիկ գործունեության այդ կարևորագույն սկզբունքն ամբողջապես ժառանգել էր Վ. Ի. Լենինը, որի համար ամեն ինչից ավելի բարձր էր մասսաների պատմական նախաձեռնությունը, ստեղծագործական եռանդն ու կենդանի փորձը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո նա ասաց. «Միայն նա կհաղթի և իշխանությունն իր ձեռքում կպահի, ով հավատում է ժողովրդին, ով սուզվում է ժողովրդական կենդանի ստեղծագործության աղբյուրի մեջ» (Երկեր, հատ. 26, էջ 351)։

Կոմունիստական հասարակության կառուցման լենինյան ծրագիրը խարսխված է մասսաների կենդանի ստեղծագործության ու նախաձեռնության

վրա, այն բանի վրա, որ այդ հասարակությունը կարելի է կառուցել, բարձրացնելով ժողովրդական մասսաների գիտակցականությունն ու կուլտուրան, լայն կերպով ներգրավելով նրանց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական բոլոր բնագավառները, լայն ասպարեզ բացելով նրանց ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության համար, ամենայն լրջությամբ ու խորությամբ ուսումնասիրելով նրանց կենդանի փորձը:

Վ. Ի. Լենինը աշխատավոր մասսաների մեծագույն ուսուցիչն էր. նա սովորեցնում էր մասսաներին, սովորում նրանցից, գնահատում, իմաստավորում նրանց կենդանի ստեղծագործությունն ու նախաձեռնությունը, նորի հազիվ բողբոջող ծիլերի մեջ տեսնում նրանց ապագան: Լենինն էր, որ ռուսական պրոլետարիատի պատմական այնպիսի նախաձեռնության մեջ, ինչպիսին առաջին Սովետների ստեղծումն էր, տեսավ պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևի սաղմը: Նա էր, որ ժողովրդական առաջին շաբաթօրյակների մեջ նկատեց ավելին, քան նկատում էին ուրիշները, այն է՝ կոմունիստական աշխատանքի ծիլերը: Նա էր, որ սոցիալիստական մրցության ակունքի մոտ կանխատեսեց ապագա հասարակարգի էական գծերից մեկը—համաժողովրդական մրցությունը, որպես աշխատանքի արտադրողականության բարձրացման կոմունիստական մեթոդ և կոմունիստական դաստիարակության կարևորագույն լծակ:

Լենինյան հայտնի դրույթն այն մասին, որ «Տասնյակ միլիոնավոր ստեղծագործողների խելքն ստեղծում է ինչ-որ անչափելիորեն ավելի բարձր բան, քան ամենամեծ ու հանճարեղ նախատեսումը», բնավ հանճարեղ կանխատեսության և առհասարակ տեսական մտքի թերագնահատումը չէ, այլ ընդգծումն այն բանի, որ տեսական մտքի իսկական աղբյուրը, նրա կենսունակության չափանիշը, նրա ազդեցության ուժը պայմանավորված է ամենից առաջ նրանով, թե ինչքանով է այն ճիշտ արտացոլում միլիոնների աշխատանքի ու պայքարի արժեքավոր փորձը, պատմության իսկական կերտողների խոհերն ու ակնկալումները: Հենց դրանց վրա էին հիմնված լենինյան հանճարեղ կանխատեսումները, որոնք սկեպտիկներին թվում էին պատրանք ու ուտոպիա, բայց որոնց ճշմարտությունը ապացուցում էր կենդանի կյանքը:

Գեղարվեստական ֆանտաստիկայի ականավոր ներկայացուցիչ Հ. Ուելսը Լենինին կրեմլյան երազող էր անվանել այն պատճառով, որ նա գրողի առջև պատկերել է ապագա Ռուսաստանը, որպես համատարած էլեկտրիֆիկացիայի, բարձր զարգացած արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի երկիր: Այն, ինչ գրողին թվացել էր անհասանելի ուտոպիա, մեր օրերում կյանք ու արյուն է ստացել և ստիպել անգամ սոցիալիզմի թշնամիներին խոստովանելու, որ երբեմնի հետամնաց Ռուսաստանը դարձել է այն երկիրը, որը յուրաքանչյուր շնչին հասանելիք արտադրանքի չափով շուտով կգերազանցի ամենազարգացած կապիտալիստական երկրին՝ ԱՄՆ-ին:

Պետք է երազել, ասում էր Վ. Ի. Լենինը, մեծագույն ռեալիստն ու ամեն մի ուտոպիայի վճռական հակառակորդը: Նրա համար երազելը ոչ թե իրականության հողից կտրվելն էր, այլ իրականության հողի վրա ապագան պատկերացնելը, կանխատեսելը: Անհեթեթություն է ժխտել ֆանտազիայի դերն ամենաճշգրիտ գիտության մեջ անգամ, գրել է նա, նկատի առնելով օգտակար ֆանտազիան, որը մղում է դեպի աշխատանք ու խիզախում: Լենինի



տեսական գործունեության հատկանշական գծերից մեկը մտքի, բանականության աներկյուղությունն էր, ինչպես ասում էր Գորկին: Եվ դա բնական է, որովհետև լենինյան մտքի մեջ մարմնացել էին միլիոնավոր մասսաների կամքն ու միտքը, անվեհեր ձգտումներն ու խիզախումները: Այդ բոլորը նա իմաստավորում էր ու գիտականորեն ամփոփում, ուղղում դեպի պատմական նպատակը՝ կոմունիզմի հաղթանակը: Կոմունիզմը նրա կյանքի իմաստն էր, նրա պրակտիկ ու տեսական գործունեության նպատակը:

Ինչով էլ զբաղվեր նա՝ փիլիսոփայությամբ թե տնտեսական հետազոտություններով, կուլտուրայի հարցերով կամ գիտական ու տեխնիկական այս կամ այն հայտնագործության գնահատականով — նրա միտքն ուղղված էր այն բանին, որ մարդկային մտքի ու ձիրքի բոլոր ստեղծագործությունները ինչքան կարելի է շատ, նպատակահարմար ու օգտակար ձևով ծառայեցնել աշխատավոր մարդկանց ազատագրման ու բարօրության նպատակին, կոմունիզմի հաղթանակին: Եվ նա ավելի, քան որևէ մեկը, գիտեր իր հանճարեղ միտքը, իր ընդունակություններն ու անսպառ եռանդը նվիրաբերել այդ նպատակին:

«Պատահում էր,— գրել է Ն. Կ. Կրուպսկայան,— մտնում եմ Իլյիչի կաբինետը, տեսնում եմ՝ նա նստած է և ընթերցում է Մարքսին կամ Էնգելսին, և դա երկրի կյանքի մի ինչ-որ ամենածանր բեկման մոմենտին: Ինձ միշտ ապշեցնում էր Իլյիչի այդ ընդունակությունը՝ ուսումնասիրել տեսությունը պայքարի ամենաթեժ պահին. տեսության մեջ նա փնտրում էր պրակտիկ հարցերի լուծումը: Պրակտիկան տեսության հետ, ամենօրյա պայքարի առաջին հայացքից մանր թվացող հարցերը սկզբունքային մեծ հարցերի հետ կապելու ունակությունը բնութագրիչ է մեր պարտիայի համար, բնութագրիչ է Լենինի ամբողջ գործունեության համար»: Լենինին մոտիկից ճանաչողները և նրա հետ աշխատողները ընդգծել են մեծ առաջնորդի ու մտածողի ամենաուսանելի գծերից մեկը — ամենալուրջ քաղաքական ու տեսական հարցերը մշակելիս՝ ինչքան կարելի է մոտիկից իմանալ և ուսումնասիրել ժողովրդի, շարքային մարդկանց, անմիջական արտադրողների, բանվորների ու գյուղացիների մտքերն ու կարծիքները, դատողություններն ու պլանները: Նա շոշափում էր պատմության զարկերակը, լինելով պատմության կերտողների հետ, ուսումնասիրելով նրանց խոհերն ու կենսափորձը, շաղկապելով առաջին հայացքից մանր թվացող հարցերը սկզբունքային խնդիրների հետ, որոնք ծնվում ու վճռվում են ոչ թե ինչ-որ գերբնական ինտուիցիայով, այլ առօրյա պայքարի ու աշխատանքի բովում: «Մարքսիստը,— գրել է նա,— պետք է հաշվի առնի կենդանի կյանքը, իրականության ճշգրիտ փաստերը, և ոչ թե շարունակի կառչել երեկվա թեորիային, որը, ինչպես և ամեն մի թեորիա, լավագույն դեպքում միայն նշում է հիմնականը, ընդհանուրը, միայն մոտենում է կյանքի բարդությունն ընդգրկելուն:

«Թեորիան, բարեկամս, գորշ է, բայց կենդանի է կյանքի հավերժական ծառը»» (Երկեր, հ. 24, էջ 33): Գյոթեի «Ֆաուստ»-ից վերցված այս դարձվածքը Լենինը բազմիցս օգտագործել է այն մարդկանց դեմ, որոնք տեսական դրույթների տակ մոռացության են տվել կենդանի կյանքը, կտրել միտքը պրակտիկայի պահանջներից: Նա պահանջում էր տեսական միտքը բարձրացնել ո՛չ միայն ժամանակակից խնդիրների մակարդակին, այլև այդ խնդիր-

ների գիտական վերլուծության ու ամփոփման հիման վրա թափանցել ապա-
գան, կանխատեսել ռևոլյուցիոն շարժման ուղին, խնամել ու փայփայել ապա-
գայի ծիլերը, որոնք այսօր դեռևս թույլ են, բայց գնալով պիտի բողբոջեն ու
փարթամորեն աճեն: Տեսական հարցերը մշակելիս Վ. Ի. Լենինը բացահայ-
տում էր ո՛չ միայն ժամանակակից իրադրության էությունն ու իմաստը, այլև
կանխատեսում երևույթների օբյեկտիվ ընթացքը ապագայում, իր հանճարի
ուժով լուսավորում առաջընթաց շարժման հեռանկարները: Զարգացնելով
մարքսիզմի ելակետային դրույթները ապագա հասարակարգի մասին, նա
հարստացրեց տեսական միտքը կոմունիստական հասարակության զարգացման
փուլերի հստակ բնութագրմամբ, բացահայտեց սոցիալիզմից կոմունիզմին
անցնելու տեսական ու քաղաքական պայմաններն ու հիմնական օրինաչա-
փությունները:
Որքան ավելի բարձր էր գնահատում Վ. Ի. Լենինը ռևոլյուցիոն տեսու-
թյունը, որպես կենդանի կյանքի բազմակողմանի ու խոր արտացոլում, այն-
քան ավելի անհաշտ էր ու անողոք կյանքի շնչից զուրկ, ոսկրացած ու քարա-
ցած դրույթների ու դոգմաների հանդեպ: Նա ուսուցանում էր, որ տեսական
միտքն իր բարձրության վրա կարող է լինել միայն այն դեպքում, երբ նրա
հիմքում ընկած է մատերալիստական դիալեկտիկան, որը, Լենինի բնութագր-
մամբ, մարքսիզմի կենդանի ոգին է:
Անգնահատելի է Վ. Ի. Լենինի ծառայությունը մարքսիստական փիլիսո-
փայության զարգացման ասպարեզում: Պատմական նոր ժամանակաշրջանը,
որը բնութագրվում է հասարակական իրադարձությունների հարստությամբ
ու հակասականությամբ, պայքարի սրությամբ ու խորությամբ, գիտական
մտքի նորանոր նվաճումներով ու հայտնագործություններով, պահանջում էր
տեսական մտքից նոր խնդիրների փիլիսոփայական ընդհանրացում ու իմաս-
տավորում, որ կարելի էր կենսագործել միայն մարքսիստական փիլիսոփա-
յության հետագա զարգացման ու կոնկրետացման հիման վրա:
Մարքսիզմի թշնամիները գիտակցելով նրա փիլիսոփայական ուսմունքի
վիթխարի դերն ու ուժը, հարձակումներ էին գործում դիալեկտիկական մա-
տերիալիզմի վրա, աղավաղում, աղճատում ու զրպարտում այդ ուսմունքը: Ի
տարբերություն բուրժուական պաշտոնական փիլիսոփայության, որը չէր
թաքցնում իր թշնամությունը դիալեկտիկական մատերիալիզմի նկատմամբ,
փիլիսոփայական ռևիզիոնիզմը քողարկում էր իր թշնամությունը կեղծավոր
հայտարարություններով, քրթմնջում նրա «հնացման» մասին և ճգնում հիմ-
նավորել այն բարբաջանքը, որ իբր պետք է մարքսիզմի փիլիսոփայությունը
«լրացնել» ու «շտկել» ժամանակակից բուրժուական մոդայական փիլիսոփա-
յության դրույթներով:
Փիլիսոփայության բնագավառում ռևիզիոնիզմը, որ գնում էր բուրժուա-
կան պրոֆեսորական «գիտության» պոչից, ճգնում էր փիլիսոփայորեն հիմնա-
վորել ռևիզիոնիստների նահանջն ու դավաճանությունը սոցիալիստական ռե-
վոլյուցիայի մարքսիստական ուսմունքին ու պրակտիկային: Նրանք նենգա-
փոխում էին ռևոլյուցիոն դիալեկտիկան հանգիստ «էվոլյուցիայով» փիլիսո-
փայության մեջ այնպես, ինչպես քաղաքականության մեջ նենգափոխում
էին ռևոլյուցիոն պայքարը «դասակարգային հաշտության» քարոզով և կա-
պիտալիզմը խաղաղ ճանապարհով սոցիալիզմի վերածելու պատրանքով:



Նրանք հռչակում էին բուրժուական ռեակցիոն էմպիրիոկրիտիկական փիլիսո-
փայությունը որպես արդի բնագիտության փիլիսոփայություն և ճգնում էին
այդ իդեալիստական ուսմունքը տարածել հասարակական երևույթների վրա:
Վ. Ի. Լենինը «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» կլասիկ փիլիսո-
փայական երկում և այլ աշխատություններում գաղափարապես ջախջախեց
փիլիսոփայական ռևիզիոնիզմը, ցույց տվեց, որ դա բուրժուական իդեալիս-
տական հայացքների կրկնությունն է մարքսիստական ցուցանակի տակ և որ
մարքսիզմի և էմպիրիոկրիտիցիզմի «միացման» ամեն մի փորձ ռեակցիոն
ու հակագիտական զբաղմունք է: Վ. Ի. Լենինն իր փիլիսոփայական երկե-
րում զարգացրեց մարքսիստական փիլիսոփայության բաղկացուցիչ մասերը
— մատերիալիստական թեորիան, դիալեկտիկան, պատմական մատերիալիզ-
մը, փիլիսոփայորեն իմաստավորեց և ամփոփեց ժամանակակից բնագիտու-
թյան, հատկապես ֆիզիկայի տվյալները, ցույց տալով, որ դրանք նոր ապա-
ցույցներ են տալիս հօգուտ դիալեկտիկական մատերիալիզմի:
Վ. Ի. Լենինը բացահայտեց ժամանակակից ֆիզիկայի ճգնաժամի էու-
թյունը և ցույց տվեց նրանից դուրս գալու ելքը: Ֆիզիկայի և առհասարակ
ամբողջ բնագիտության մեջ իդեալիստական հովերը նա բացատրեց այն բա-
նով, որ կապիտալիզմի պայմաններում տիրապետող իդեալիստական աշ-
խարհայացքը թափանցում է գիտության բնագավառը, իր օգտին ծառայեց-
նում փիլիսոփայական մտքի ամեն մի տատանում, և որ բնագետները, չիմա-
նալով դիալեկտիկան, գիտական մտքի արմատական բեկումների ժամանակ
տուրք են տալիս փիլիսոփայական ռեակցիային: Բայց, ինչպես ցույց տվեց
Վ. Ի. Լենինը, իդեալիստական աշխարհայացքը, ինչպես էլ որ նա հարմարվի
ժամանակակից բնագիտությանը, չարաշահի նրա զարգացման դժվարություն-
ները, չի կարող ոչնչացնել նրա մատերիալիստական ոգին: «Ֆիզիկայի, ինչ-
պես և արդի ամբողջ բնագիտության հիմնական մատերիալիստական ոգին,
—գրել է նա,—կհաղթի բոլոր և ամեն տեսակի ճգնաժամերը, բայց մետաֆի-
զիկական մատերիալիզմը դիալեկտիկական մատերիալիզմով անպայման
փոխարինելու պայմանով միայն» (Երկեր, հ. 14, էջ 409):
Վ. Ի. Լենինն իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ», «Փիլիսոփա-
յական տետրեր», «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» և
մյուս փիլիսոփայական աշխատություններով նշանավորեց մարքսիստական
փիլիսոփայության զարգացման լենինյան էտապը և զարգացրեց այնպիսի
փիլիսոփայական հարցեր, ինչպիսիք են՝ դիալեկտիկայի, իմացաբանության
միասնությունը, դիալեկտիկայի օրենքներն ու կատե-
և տրամաբանության
գորիաները, բացահայտեց փիլիսոփայության պարտիականության էությունը,
տարբեր թեորիաների իմացաբանական ու սոցիալական արմատները, ցույց
տվեց փիլիսոփայության մեջ տեղի ունեցող պայքարի սոցիալական հիմքերն
ու իմաստը:
Պարտիաների պայքարը փիլիսոփայության մեջ, գրել է Լենինը, վերջին
հաշվով արտահայտում է ժամանակակից հասարակության թշնամական դա-
սակարգերի տենդենցներն ու իդեոլոգիան: Նա մերկացրեց փիլիսոփայության
ստեղծման վերաբերյալ բուրժուական ու ռևիզիո-
մեջ երրորդ «չեզոք» գծի
նիստական հերյուրանքների հակագիտական էությունը, ցույց տալով, որ մա-
տերիալիզմից ու իդեալիզմից «վեր բարձրանալու» բթամիտ հավակնությունը

*իրականում նահանջ է դեպի իդեալիզմ, մատերիալիզմի դեմ պայքարելու ժամանակակից ձևերից մեկը։*

*Վ. Ի. Լենինի փիլիսոփայական ժառանգությունն իր անփոխարինելի դերն է կատարում ժամանակակից իդեական կյանքում։ Նա զինում է Կոմունիստական պարտիային աշխարհի բացատրության ու ռևոլյուցիոն վերափոխման գիտական թեորիայով ու մեթոդով, ուղղում է փիլիսոփայական միտքը դեպի ժամանակակից կյանքի պրակտիկ խնդիրների, ամենից առաջ կոմունիստական շինարարության պրակտիկայի փիլիսոփայական ուսումնասիրությունն ու իմաստավորումը, նպաստում պատմության առաջընթացին։*

*Դիալեկտիկական մատերիալիզմը, մարքս-լենինյան համաշխարհ փիլիսոփայական ժառանգությունը լուսավորում է ժամանակակից գիտության զարգացման ուղին, օգնում նրան լուծելու իր առջև կանգնած խնդիրները, ջախջախելու ամեն տեսակի իդեալիստական սողոսկումները գիտության բնագավառը։ Սոցիալիստական երկրի գիտությունը, որը իր նվաճումներով նոր աստիճանի է բարձրացնում մարդկային միտքը և որը նշանավորեց տիեզերքի նվաճման դարաշրջանի սկիզբը, հանդիսանում է սոցիալիստական սիստեմի օրինավոր ծնունդը և խարսխված է միակ գիտական աշխարհայացքի՝ դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքների վրա։ Գիտության ու գիտական աշխարհայացքի միասնությունը գիտական նոր սխրագործությունների ու խիզախումների անսասան երաշխիքն է։*

***

*Ստեղծագործական մարքսիզմի մեծագույն տեսաբան Վ. Ի. Լենինը խորապես ընդգծում էր ստեղծագործական մտքի, առաջավոր իդեաների դերը հասարակության պրոգրեսիվ զարգացման մեջ։* «Առաջավոր մարտիկի դերը կատարել կարող է միայն այն պարտիան, որ ղեկավարվում է առաջավոր թեորիայով»,*—գրել է նա (Երկեր, հատ. 5, էջ 488)։ Նրա վիթխարի տեսական գործունեությունը շաղկապված էր Կոմունիստական պարտիայի պրակտիկ գործունեության հետ։ Նա պարտիան զինեց ռևոլյուցիոն ուսմունքով, գիտական աշխարհայացքով, ընդգծելով, որ պարտիան իր պատմական դերը կարող է կատարել միայն այն դեպքում, երբ գիտակցում է այն, ինչ զգում են միլիոնները, երբ տալիս է պատմական պրոցեսի գիտական բացատրությունը, համոզում է մասսաներին այն գաղափարների ճշմարտության մեջ, որով առաջնորդվում է ինքը և առաջնորդում նրանց։*

*Պատմության մեջ ոչ մի ուսմունք չի ունեցել այնպիսի գործոն ու վիթխարի ազդեցություն մասսաների վրա, չի գրավել իր դրոշի տակ այնպիսի բազմամիլիոն բանակ, ինչպես մարքսիզմ-լենինիզմը։ Դա բացատրվում է նրանով, որ այդ ուսմունքը դարձել է պատմության առաջամարտիկի՝ Կոմունիստական պարտիայի ծրագիրն ու ուղեցույցը, պարտիա, որը Վ. Ի. Լենինը բնութագրում էր որպես մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիան՝ միջազգային կոմունիստական շարժման ավանգարդը, իր մեծ առաջնորդի մահից հետո ղեկավարվել և ղեկավարվում է նրա անմահ ուսմունքով, պահպանում է նրա անաղարտությունն ու կոլեկտիվ ուժերով զարգացնում այն՝ կոմունիզմի կառուցման պրակտիկ փորձով։ Առաջնորդվելով այդ ուսմունքով՝ Կոմունիստական պարտիան ղեկավարեց սոցիալիզմի կառուցման պատմական գործը ՍՍՌՄ-ում և այժմ ղեկավարում ու ուղղություն է տալիս սովետական հասարակության առաջընթաց շարժմանը՝ կոմունիստական հասարակության կառուցմանը։*

*Սովետական երկրի առջև ծառացած համաշխարհային-պատմական խնդիրների լուծումը պահանջում է տեսական մտքի ստեղծագործական զարգացում, պահանջում է տալ կենդանի կյանքի առաջադրած հարցերի գիտական պատասխան ու լուծում։ Կոմունիստական պարտիան, նրա կոլեկտիվ միտքը հարստացնում է մարքսիզմ-լենինիզմը պատմության նոր փորձի գիտական վերլուծությամբ ու ընդհանրացմամբ։*

*Պարտիայի XX և XXI համագումարները, հենվելով Վ. Ի. Լենինի ուսմունքի վրա, զարգացրին այն սոցիալիստական ռևոլյուցիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի զարգացման նոր պայմաններին համապատասխան։ Միջազգային իրադրության գիտական վերլուծության հիման վրա պարտիան առաջադրեց այն դրույթը, որ ժամանակակից պայմաններում չկա պատերազմների ճակատագրական անխուսափելիություն, և որ խաղաղասիրական ուժերը սոցիալիստական լագերի ժողովուրդների գլխավորությամբ ընդունակ են կանխելու դրանք։*

*Մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման վառ օրինակ են հանդիսանում ՍՄԿՊ XXI համագումարի տեսական դրույթները սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունների և մեր երկրի զարգացման հետագա ուղիների վերաբերյալ։ «Կոմունիստական պարտիայի ուժը մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ նրա ունեցած հավատարմության մեջ է, գիտական կոմունիզմի թեորիայի ստեղծագործական զարգացման ու կիրառման մեջ», —ասված է ՍՄԿՊ XXI համագումարի որոշման մեջ։*

*Մարքսիզմ-լենինիզմի հավերժ կենդանի ուսմունքը ապրում է ամբողջ աշխարհի աշխատավոր ժողովրդի ազատագրական պայքարի մեջ, սոցիալիզմի համար պայքարող ժողովուրդների ստեղծագործության մեջ, կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի պատմական սխրագործության մեջ։ Լենինի ուսմունքը ապրում, զարգանում և հաղթանակում է Կոմունիստական պարտիայի պրակտիկ ու տեսական գործունեության մեջ, պարտիա, որը պատմության պրոգրեսի, մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքի դրոշակակիրն է։*

---

# ԱՌԱՋՆՈՐԴԻՆ ՀՂԱԾ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻ ՆԱՄԱԿՆԵՐԻՑ

## ԲԱՆՎՈՐ Ս. ԿԵՅՆԻ ՆԱՄԱԿԸ

*26 փետրվարի 1922 թ.*
*Միլուոկի (ԱՄՆ)*

*Սովետական Ռուսաստանի մ-ր պրեզիդենտ*
*Ն. Լենինին, Մոսկվա, Ռուսաստան։*
*Բանվորների երկրին*

*Հարգելի սըր և ընկերներ, հավանություն ենք տալիս Ձեր որոշմանը՝ ոչ մի խոստում չընդունել և չտալ կապիտալիստական վիժվածքներին և խաբեբաներին։ Չկարծեք, թե մենք այստեղ զգոն չենք։ Մենք չենք հավատում այն բանին, ինչ Ռուսաստանի և Ձեր դեմ գրում է կապիտալիստական վարձու մամուլը։ Մենք հավատում ենք, որ Ռուսաստանում այլևս չկա դրախտ՝ պորտաբույծների, շահագործողների և այլ սրիկաների ու խաբեբաների համար, հակառակ այն բանի, ինչ գոյություն ունի մեզ մոտ, թեպետ մեզ մոտ էլ է արշալույս ծագում։*

*Որոշ ժամանակ պետք է անցնի, մինչև մասսաները հասկանան իրենց շահերը։ Մասսաների խավարամտությունը մեծ նզովք է, որի շնորհիվ կապիտալիստական խաբեբաները և նրանց վարձկանները դեռ կարող են գոյություն ունենալ։*

*Շարունակեցեք այսուհետև էլ աշխատել հանուն բանվորների ազատ աշխարհի։ Մենք, բանվորներս, Ձեզ հետ ենք և մեր կարողության չափ ամեն բան անում ենք՝ այդ վեհ նպատակին հասնելու համար։*

*Եղբայրական ողջույնով* Ս. Կեյն

## ԱՄԵՐԻԿՈՒՀԻ ՄԵՐԻ ԿՈԽԵՆԻ ՆԱՄԱԿԸ

*18 սեպտեմբերի 1921 թ.*
*Նյու-Յորք*

*Ընկեր Լենինին, Մոսկվա, Ռուսաստան*

*Թանկագի՛ն ընկեր Լենին.*

*Օգտվում եմ իմ բարեկամ մ-ր Ցելիքս Նյուտոնի սիրալիրությունից՝ Ձեզ նամակ ուղարկելու համար։ Ես ուզում եմ հայտնել Ձեզ, թե ես (բազմաթիվ այլ ամերիկացիների հետ միասին) ինչպիսի ջերմ հետաքրքրությամբ եմ հետևում արդարացի սոցիալական կարգերի ստեղծման՝ ամբողջ պատմության ընթացքում ամենաապշեցուցիչ փորձին։ Այդ բանի համար մենք պարտական ենք Ձեր ազնիվ, անձնուրաց ջանքերին՝ հիասքանչ, մեզ սիրելի Ռուսաստանում։*

*Մենք այստեղ, Միացյալ Նահանգներում միլիոններ ենք, որոնց սրտերը բաբախում են Ձեր սրտի և Ձեր հերոսական կոլեգաների սրտերի հետ, բայց, ցավոք սրտի, մենք մեծամասնությունը չենք։ Անցյալ տարի ես անդադար փորձում էի հասնել բլոկադայի վերացման, այդ կարող են հաստատել Ձեր ընկերներ Մարտենսը[1] և Նուորտևան[2]։ Եթե ես ներկա մոմենտում ի վիճակի եմ Ձեզ համար որևէ բան անել Ամերիկայում, ես չափազանց երջանիկ կլինեի կատարելու Ձեր ցանկությունները։*

*Ես կարող եմ, եթե Դուք ցանկանում եք, համոզել Հարվարդի համալսա-*

1 Մարտենս Լ. Կ.— *Ժողովրդական Կոմիսարների Սովետի ներկայացուցիչը Ամերիկայի Միացյալ Նահանգներում 1919-ից մինչև 1921 թ.։ Հետագայում աշխատել է Ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհրդում։*

2 Նուորտևա Ս. Ֆ.— *ԱՄՆ-ում Սովետական ներկայացուցչության քարտուղար։*



*րանի ազդեցիկ մարդկանց՝ հանձնաժողով ստեղծել մեր և Ձեր երկրների միջև լավ հարաբերություններ հաստատելու համար։*

*Ես շտապում եմ գրել, բայց ուզում եմ անկեղծ հաջողություն մաղթել Ձեր անհամեմատելի ջանքերին՝ հանուն մարդկության բարօրության։*

*Բարևներ Մարտենսին և Նուորտևային։*

*Ամբողջովին Ձեզ նվիրված՝* Մերի Ռ. Կոխեն

## ԳԻՏՆԱԿԱՆ-ԷԼԵԿՏՐԱՏԵԽՆԻԿ Կ. ՇՏԵՅՆՄԵՑԻ[1] ՆԱՄԱԿԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՆՇՈՒՄՈՎ

*Շենեկտեդի,*
*Նյու-Յորքի նահանգ*
*16 փետրվարի 1922 թ.*

*Մ-ր Ն. Լենինին։*
*Իմ սիրելի մ-ր Լե՛նին*

Վերադարձնել ինձ[2]

*Օգտվում եմ պարոն Լոսևի[3] Ռուսաստան վերադարձից, արտահայտելու համար Ձեզ իմ հիացմունքը սոցիալական և տնտեսական վերածննդին ուղղված այն ապշեցուցիչ աշխատանքի նկատմամբ, որ Ռուսաստանը կատարում է այդպիսի ծանր պայմաններում։*

*Ես ցանկանում եմ Ձեզ լիակատար հաջողություն և անհողդողդ կերպով հավատում եմ, որ Դուք կհասնեք դրան։ Դուք անկասկած պետք է հաջողության հասնեք, քանի որ չի կարելի թույլ տալ, որ անավարտ մնա Ռուսաստանի սկսած մեծ գործը։*

*Ես միշտ էլ շատ ուրախ կլինեմ, եթե տեխնիկայի և հատկապես էլեկտրատեխնիկայի ասպարեզում կարողանամ, ուժերս ներածին չափ, օգնել Ռուսաստանին՝ ինչպես ցուցումներով, այնպես էլ խորհուրդներով։*

*Ձեզ նվիրված* Կարլ Շտեյնմեց

## ԱԿԱՆԱՎՈՐ ԼԵՅԲՈՐԻՍՏ ԲԵՆ ՏԵՐՆԵՐԻ[4] ՆԱՄԱԿԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՆՇՈՒՄՆԵՐՈՎ

Արխիվին
Բեն Տերների նամակը
*1920 29/V*[5] *(Անգլիա)*

*Մոսկվա,*
*«Դելովոյ դվոր» հյուրանոց,*
*29 մայիսի 1920 թ.։*

*Թանկագի՛ն ընկեր*

*Ցանկանում եմ Ձեզ և Ռուսաստանի Սովետական ռեսպուբլիկային անկեղծ երախտագիտությունս հայտնել իմ նկատմամբ բարի և հյուրընկալ վերաբերմունքի համար։ Ձեր երկիրը հարուստ է իդեալներով. ձեր բանիմաց, ռեալիստորեն մտածող տղամարդիկ և կանայք, այդ իդեալները զարգացնելով, միջազգային նշանակության գործեր են կատարում, և ես ցանկանում եմ մաղթել երկար տարիների կյանք՝ ռուսական դեմոկրատիային և հաջողություն՝ սոցիալիզմին։ Ես շատ երջանիկ կլինեի, Ձեր թույլտվությամբ, մեր երկրի*

1 Շտեյնմեց Կարլ *(1865—1923)— հայտնի ամերիկյան գիտնական-էլեկտրատեխնիկ։ Ծնվել է Գերմանիայում, որտեղից հեռացել է բանվորական շարժմանը մասնակցելու համար ձերբակալվելու սպառնալիքի տակ։*

2 *Վ. Ի. Լենինի ձեռքով արված նշումը։*

3 *Էմիգրացիայից վերադարձող ինժեներ։*

4 Բեն Տերներ — *լեյբորիստական պարտիայի ներկայացուցիչ, որ գլխավորում էր 1920 թ. մայիսին Սովետական Ռուսաստան եկած անգլիական տրեդյունիոնների և լեյբորիստների պատվիրակությունը։*

5 *«Արխիվին։ Բեն Տերների նամակը։ 1920 29/V» նշումը կատարված է Վ. Ի. Լենինի ձեռքով։*

պրոլետարիատին հաղորդելու Ձեր ողջույնը՝ անգլիական բանվորական պարտիայի կոնֆերանսում։ Բանվորական ռեսպուբլիկա ստեղծելու Ձեր վճռական և գիտնականորեն հիմնավորված փորձը հոյակապ օրինակ է բոլորի համար։ Ես համոզված եմ, որ Դուք այդ գործում հաջողություն կունենաք։ Ամբողջ սրտով ցանկանում եմ Ձեզ հաջողության հասնել նոր, սոցիալիստական պետության ստեղծման գործում։

Եղբայրական ողջույնով՝ Բեն Տերներ

## ՆՈՐ ՀԱՐԱՎԱՅԻՆ ՈՒԷԼՍԻ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱՄԱԿԸ

*27 փետրվարի 1920 թ.*
*Սիդնեյ (Ավստրալիա)*

*Ընկեր Ն. Լենինին*
*Ռուսաստանի սոցիալիստական ռեսպուբլիկայի*
*պրեմիերին*
*Մոսկվա, Ռուսաստան*

Թանկագին ընկե՛ր։

Պատիվ ունենք Նոր Հարավային Ուէլսի, Ավստրալիա, 100.000 կազմակերպված բանվորներ ներկայացնող խորհրդի ցուցումով եղբայրական ողջույն հղել Ձեզ։

Պատգամավորների համագումարում միաձայն ընդունվեց հետևյալ բանաձևը.

Նոր Հարավային Ուէլսի բանվորներին ներկայացնող սույն խորհուրդը գոհունակությամբ ընդունեց Ռուսաստանի ռեսպուբլիկայի տապալման ուղղությամբ միջազգային կապիտալիզմի փորձերի ձախողումը։

Եղբայրական ողջույնով՝

Գ. Պարդեն — քարտուղար
Ջոն Խուան — պրեզիդենտ

## ՖՐՈԲՈԼԻԻ ՆԱՄԱԿԸ

*20 սեպտեմբերի 1920 թ.*
*Պիներոլո[1] (Իտալիա)*

Հարգելի՛ ընկեր Լենին։

Ողջունում և շնորհավորում եմ Ձեզ մեր ազնիվ շարժման անունից, շարժում, որն այնքան արժանիորեն ներկայացնում եք Դուք, և, տեսնելով Ձեր ուսմունքի ազդեցությունն Իտալիայում, համարձակվում եմ մի քանի տող ուղարկել և կենաց առաջարկել հանուն պրոլետարական գործի և հանուն պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի՝ նաև այդ երկրում։ Միաժամանակ համարձակվում եմ խնդրել Ձեզ, որպեսզի ուղարկեք, եթե դա Ձեզ համար դժվար չի լինի, Ձեր ինքնագրով լուսանկարը, որը մենք կպահպանենք ակնածությամբ, որպես աշխարհում ամենից ավելի հարգելի անձնավորությանը պատկանող նկար։

Վերջում թույլ տվեք ինձ հաստատել իմ նվիրվածությունը Ձեր իդեալներին և մեծագույն հարգանքով ողջունել Ձեզ։

Ֆրոբոլի

---

[1] Պիներոլոն քաղաք է Պյեմոնտում։

«Կոմունիստ» ամսագիր, № 3, 1960 թ.

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ 1917—1920 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

Հայաստանի աշխատավորության ռևոլյուցիոն պայքարի, Հայաստանում բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության ամբողջ պատմությունը անխզելիորեն կապված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր ու ղեկավար Վ. Ի. Լենինի անվան և ամենահաղթ ուսմունքի հետ։

Ստեղծելով ու կոփելով բոլշևիկյան պարտիան, Վ. Ի. Լենինը անդադրում հոգ էր տանում, որ նրա մեջ ընդգրկվեն ու դաստիարակվեն Ռուսաստանում բնակվող բոլոր ժողովուրդների լավագույն ներկայացուցիչները։ Դեռևս պարտիայի կառուցման արշալույսին Վ. Ի. Լենինի զինակիցների և աշակերտների թվում էին նաև հայ ժողովրդի անձնվեր զավակները, որոնք միշտ բարձր պահած պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան դրոշը, հերոսաբար պայքարում էին կապիտալի լծից աշխատավորության ազատագրության համար, կոմունիզմի հաղթանակի համար։

XX դարի սկզբից արդեն, Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները, լենինյան «Իսկրա»-ն թափանցում էին նաև Հայաստան, տարածվում այստեղի առաջավոր բանվորների շրջանում։ 1903 թվականին Վ. Ի. Լենինը «Իսկրա»-ի էջերում ամբողջ հոգով ողջունում էր հայ ռևոլյուցիոն մարքսիստների առաջին կազմակերպության՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» ստեղծումը և նրա օրգան լենինյան-իսկրայական ուղղության առաջին հայերեն թերթի՝ «Պրոլետարիատի» հրատարակությունը։

Վ. Ի. Լենինն ուսուցանում էր, որ ցարիզմի կողմից ճնշված ու հալածված ժողովուրդների ազատագրությունը հնարավոր է միայն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման միջոցով. նա բոլոր ազգերի մարքսիստների առաջ խնդիր էր դնում անհաշտ պայքար մղել բուրժուական նացիոնալիզմի իդեոլոգիայի դեմ, միշտ բարձր պահել և հավատարիմ մնալ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշին։

Սրբությամբ կատարելով լենինյան ցուցումները՝ Հայաստանի բոլշևիկները հենց սկզբից անհաշտ պայքար են մղել հայ աշխատավորության, նրա սոցիալական ազատագրման թշնամի բուրժուա-նացիոնալիստական Դաշնակցություն պարտիայի և մանր-բուրժուական ազգայնական կազմակեր-

պությունների ու խմբերի դեմ, այդ պայքարում կոփելով և ամրապնդելով հայ աշխատավորության բարեկամությունը ռուս, վրացի, ադրբեջանցի և այլ ազգերի բանվորների ու գյուղացիների հետ։

Վ. Ի. Լենինը բազմիցս բարձր գնահատական է տվել Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ինտերնացիոնալիստական գործելակերպին։ «Բանվորական շարժման շահերին ու խնդիրներին համապատասխանում է բոլոր ազգերի բանվորների միայն այն լիակատար միասնությունը (տեղերում, վարից մինչև վեր), որ այնքան երկար ու այնքան հաջող իրագործվում էր Կովկասում»,—գրել է Վլադիմիր Իլյիչ Լենինը 1913 թվականին (Երկեր, հ. 19, էջ 88)։

***

1917 թ. փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակից հետո, երբ ցարիզմի տապալման հետևանքով երկրում ստեղծվել էր նոր իրադրություն, Հայաստանի բոլշևիկները ամբողջ պարտիայի հետ միասին դուրս գալով ընդհատակից, քաղաքական ու կազմակերպական լայն աշխատանք ծավալեցին մասսաների մեջ։ Ընդլայնվում և ամրապնդվում էին Ալավերդու, Հաղպատի, Ալեքսանդրապոլի, Կարսի, Սարիղամիշի, Ղարաքիլիսայի և այլ վայրերի պարտիական կազմակերպությունները, մի շարք տեղերում ստեղծվեցին նոր բոլշևիկյան կազմակերպություններ և խմբեր։ Պարտիայի շարքերը համալրվեցին ցարիզմի, բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ու կազմակերպությունների դեմ մղված պայքարում կոփված բանվորների, զինվորների և աշխատավոր գյուղացիության լավագույն ներկայացուցիչներով։

Ինչպես նախորդ տարիներին, այնպես էլ փետրվարյան ռևոլյուցիայից հետո բոլշևիկների գործունեությունը Հայաստանում ընթանում էր Վ. Ի. Լենինի և բոլշևիկյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ցուցումներով։ 1917 թ. մարտի 5-ից Պետերբուրգում լույս էր տեսնում բոլշևիկների պարտիայի կենտրոնական և Պետերբուրգի Կոմիտեների օրգան «Պրավդա» թերթը։ Ռուսերեն և հայերեն լեզուներով բոլշևիկյան թերթեր էին լույս տեսնում Թիֆլիսում («Կավկազսկի ռաբոչի», «Բանվորի կռիվը»), Բաքվում («Բակինսկի ռաբոչի», «Սոցիալ-դեմոկրատ»), իսկ ապա նաև Ալեքսանդրապոլում («Նոր կյանք», «Պրավդա ժիզնի») և Անդրկովկասի այլ վայրերում։ Այս թերթերում տպագրվում էին Վ. Ի. Լենինի հոդվածները, պարտիական կարևորագույն փաստաթղթերը։ Վ. Ի. Լենինի աշխատությունները և պարտիական որոշումները Հայաստան էին հասնում նաև բոլշևիկյան կոմիտեների կողմից հրապարակված առանձին բրոշյուրների միջոցով։

Ինչպես ամբողջ պարտիայի, այնպես էլ Հայաստանի բոլշևիկների համար անգնահատելի նշանակություն ունեցան Վ. Ի. Լենինի հռչակավոր Ապրիլյան թեզիսները և ՌՍԴԲ(բ)Պ համառուսաստանյան VII (ապրիլյան) կոնֆերանսի որոշումները։ Լենինյան թեզիսներն անմիջապես արտատպվեցին «Կավկազսկի ռաբոչի», «Բակինսկի ռաբոչի» թերթերում, լայնորեն պարզաբանվեցին «Պայքար»-ի, «Սոցիալ-դեմոկրատ»-ի, «Բանվորի կռվի» և այլ թերթերի էջերում։ «Ամբողջ իշխանությունը սովետներին» լենինյան լոզունգով



պարտիական կազմակերպությունները հերոսական պայքար ծավալեցին մասսաների ռևոլյուցիոն մոբիլիզացման համար։

Ռուսաստանի բոլոր ազգերի աշխատավորներին բոլշևիկյան պարտիայի, ռուս պրոլետարիատի շուրջը համախմբելու գործում բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ Ապրիլյան կոնֆերանսի որոշումը ազգային հարցի մասին։ Ազգային հարցում կոմունիստական պարտիայի լենինյան ծրագիրը լիակատար հնարավորություն էր ստեղծում ինչպես Ռուսաստանի մյուս ճնշված ժողովուրդների, այնպես էլ բազմաչարչար հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրության համար։

Վ. Ի. Լենինը հետևողականորեն պաշտպանում էր ռուսական ցարիզմի ու բուրժուազիայի կողմից ճնշված բոլոր ազգությունների ազատ ինքնորոշման իրավունքը, նշում էր, որ ռուս ժողովուրդը, բանվորներն ու գյուղացիները չեն ցանկանում ճնշել ու չեն ճնշի ոչ մի ժողովրդի, չեն հանդուրժի ուրիշ ժողովուրդների նկատմամբ ոչ մի բռնություն։ Լենինն առաջարկում էր եղբայրական միություն՝ կամավոր սկզբունքներով։ Ապրիլյան կոնֆերանսում ազգային հարցի կապակցությամբ արտասանած ճառում պաշտպանելով ազգերի ինքնորոշման իրավունքը, Լենինն ասում էր. «այ եթե վաղը Սովետն իշխանությունն իր ձեռքը վերցնի... այն ժամանակ մենք կասենք՝ Գերմանիա՛, զորքերդ դուրս Լեհաստանից, Ռուսաստա՛ն, զորքերդ դո՛ւրս Հայաստանից,— այլապես այդ խաբեություն կլինի» (Երկեր, հ. 24, էջ 367)։

Իմպերիալիստական պատերազմի դեմ, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղված պայքարում բոլշևիկները ղեկավարվում էին «ազատություն բոլոր ժողովուրդներին, բոլոր ազգությունների բանվորների և գյուղացիների եղբայրական միություն» լենինյան սկզբունքով։

Առաջնորդվելով Լենինի ցուցումներով, պարտիական կոնֆերանսի որոշումներով՝ Կենտկոմը, տեղական բոլշևիկյան կազմակերպությունները ղեկավարում և ուղղություն էին տալիս աշխատավորության պայքարին սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։ Չնայած բոլոր դժվարություններին, Կենտկոմի կապը տեղական կազմակերպությունների հետ չէր ընդհատվում։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ինչպես նաև բոլշևիկների Թիֆլիսի և Բաքվի կոմիտեները Հայաստան էին ուղարկում իրենց ներկայացուցիչներին, մամուլի իրենց օրգանների և այլ միջոցներով օգնում էին տեղական բոլշևիկներին կարգավորելու և ուժեղացնելու պարտիական աշխատանքը, համախմբելու մասսաներին լենինյան գաղափարների շուրջը։ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստման շրջանում պարտիայի հանձնարարությամբ Հայաստանի տարբեր վայրերը եկան Ս. Շահումյանը, Բ. Բորյանը, Ա. Կախոյանը, Ա. Մռավյանը, Ս. Խանոյանը, Ա. Միկոյանը և ուրիշ ականավոր բոլշևիկներ, որոնք մեծ օգնություն ցույց տվին տեղական կազմակերպություններին։

Այս ժամանակաշրջանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղված պայքարը Անդրկովկասում, այդ թվում նաև Հայաստանում ընթանում էր չափազանց բարդ պայմաններում։ Արդյունաբերության թույլ զարգացման, պրոլետարիատի սակավաթվության ու անբավարար կազմակերպվածության, հակառևոլյուցիոն ուժերի կողմից նացիոնալիզմի բորբոք-

ման հետևանքով դաշնակներին, էսեռներին և մենշևիկներին հաջողվել էր ուժեղացնել իրենց ազդեցությունը բնակչության մանր-բուրժուական խավերի, զինվորների և բանվորների մի զգալի մասի վրա և նրանց տանել իրենց հետևից: Սկզբնական շրջանում մի շարք հարցեր այնքան էլ պարզ չէին Հայաստանի բոլշևիկների համար: Նրանց մի մասի մեջ մենշևիկների հետ միավորվելու տենդենց կար, որի հետևանքով ստեղծվեցին բոլշևիկների և մենշևիկների միացյալ կազմակերպություններ: Այդ միավորումը, անշուշտ լուրջ սխալ էր, դատապարտվում էր Վ. Ի. Լենինի կողմից, որովհետև այն խանգարում էր աշխատավոր մասսաների առաջ մերկացնելու մենշևիկների հակառևոլյուցիոն դավաճանական քաղաքականությունը: Սակայն պետք է նշել, որ այդ միավորումը ձևական բնույթ էր կրում, որովհետև Հայաստանի բոլշևիկները Վ. Ի. Լենինի ցուցումներով և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ չէին դադարեցնում պայքարը մենշևիկների համաձայնողական քաղաքականության դեմ և շուտով լիովին սահմանազատվեցին նրանցից:

1917 թվականի մայիսին ստեղծված Ջալալօղլիի (այժմ Ստեփանավան) սոցիալ-դեմոկրատական կազմակերպության բոլոր անդամները բոլշևիկներ էին: Այդպես էր վիճակը նաև Ղափանի պարտիական կազմակերպությունում: Կովկասյան բոլշևիկների առաջին համագումարում խոսելով Հաղպատի պարտիական կազմակերպության մասին, Ա. Ի. Միկոյանն ասել է. «Ռևոլյուցիայի առաջին իսկ օրերին մեր ընկերները վերականգնեցին սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը Հաղպատում և ձեռնամուխ եղան զտման՝ մութ տարրերից: Տեղական գործադիր կոմիտեում անցան սոցիալ-դեմոկրատական թեկնածուները: Պետք է նշել, որ կազմակերպության մեջ ոչ մի ինտելիգենտ չկա և ամբողջ աշխատանքն ընկած է հենց իրենց գյուղացիների ու բանվորների վրա, որոնք մեր օգնությանն են սպասում: Կազմակերպությունը միավորված է ձևականորեն, իսկ կազմակերպության բոլոր անդամներն էլ տրամադրված են բոլշևիկորեն» («Կավկազսկի ռաբոչի», № 170, 1917 թ.):

1917 թ. հուլիսի 16-ին Ալեքսանդրոպոլի բոլշևիկների համաքաղաքային ժողովը, որին մասնակցում էր պարտիայի Կենտկոմի ներկայացուցիչ Բ. Բորյանը, ստեղծեց բոլշևիկյան ֆրակցիա և ընտրեց ղեկավար օրգան՝ բյուրո, որի կազմում մտան միայն բոլշևիկները: Շուտով ձևավորվում է ՌՍԴԲՊ(բ) Ալեքսանդրոպոլի կոմիտեն, որը օգոստոսից հրապարակեց իր տպագիր օրգան «Պրավդա ժիզնի» թերթը:

Անհրաժեշտ է նշել, որ չնայած այս մասին եղած պատմական հավաստի փաստաթղթերին (բոլշևիկների վերոհիշյալ ժողովի մասին «Ռաբոչի ի սոլդատ» թերթում տպագրված հաղորդագրությունը—№ 29, 1917 թ., «Պրավդա ժիզնի» թերթը և այլն), առանձին ընկերներ անտեսում են Ալեքսանդրոպոլի բոլշևիկյան կազմակերպության այս ժամանակաշրջանի գործունեության, կոմիտեի ստեղծման ու նրա կազմի հետ կապված մի շարք փաստեր: Նկատի ունենալով այդ հանգամանքը՝ ստորև բերում ենք Ալեքսանդրոպոլի բոլշևիկների հուլիսի 16-ի ժողովի մասին հաղորդագրությունը. «Հուլիսի 16-ի կիրակի օրը, իգական գիմնազիայի շենքում տեղի ունեցավ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի Ալեքսանդրոպոլի կազմակերպության բոլշևիկյան ֆրակցիայի անդամների առաջին նիստը...

Զեկուցումից հետո նիստը ձեռնամուխ եղավ կազմակերպչական հարցերի



քննարկմանը: Այդ հարցի մասին զեկուցողը նշեց, որ անհրաժեշտ է կազմակերպել բոլշևիկների ֆրակցիա և ընտրել ղեկավար բյուրո, ֆրակցիոն աշխատանքը պլանավորված կերպով ղեկավարելու և բոլշևիկների անունից զանազան անպատասխանատու անձանց ամեն տեսակ ելույթներից խուսափելու համար:

Ժողովը միաձայն որոշում է ընտրել բյուրո 9 մարդուց բաղկացած, նրան իրավունք տալով կոոպտացիայի ենթարկելու անհրաժեշտ ակտիվ մարդկանց:

Բյուրոյի անդամներ են ընտրված 1. Արվելաձե—զինվոր, 2. Ղարիբջանովը — ուսուցիչ, 3. Ամաշուկելին — զինվոր, 4. Հովհաննիսյանցը — բանվոր, 5. Մակարովը—զինվոր, 6. Լեժավան—բանվոր, 7. Շապովալենկոն—զինվոր, 8. Տարախչյանը — ուսուցչուհի, 9. Կորոստիլենկոն — զինվոր:

Բացի դրանից որոշվում է քաղաքային դումայի ընտրություններին հանդես գալ թեկնածուների ինքնուրույն ցուցակով, ինչպես նաև ֆրակցիայի մեջ անդամների ցուցակագրություն անցկացնել և կատարել ճիշտ հաշվառում. անդամավճար է սահմանված 50 կոպեկ, զինվորների համար՝ ըստ ցանկության: Նոր անդամներն ընդունվում են ֆրակցիայի երկու հին անդամների երաշխավորությամբ:

Ֆրակցիայի բյուրոն ժամանակավորապես տեղավորվում է Իգական գիմնազիայում»:

Հուլիսյան իրադարձություններից հետո, հակառևոլյուցիոն ուժերը բացահայտ ու կատաղի հարձակման անցան բոլշևիկների պարտիայի ու նրա առաջնորդ Վ. Ի. Լենինի դեմ: Հայաստանի բոլշևիկները ամբողջ պարտիայի հետ միասին, կրկնապատկված եռանդով շարունակում էին պաշտպանել լենինյան գիծը ռևոլյուցիայի մեջ, պարզաբանում էին մասսաներին Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը, գրավոր և բանավոր ելույթներում պատմում էին Վ. Ի. Լենինի մասին, որին հետապնդում էր Ժամանակավոր կառավարությունը:

1917 թ. Անդրկովկասում լույս տեսնող «Կավկազսկի ռաբոչի», «Բակինսկի ռաբոչի», «Սոցիալ-դեմոկրատ», «Բանվորի կռիվը», «Նոր կյանք», «Պրավդա ժիզնի» և այլ բոլշևիկյան թերթերում հրապարակվում են բազմաթիվ նյութեր և փաստաթղթեր բոլշևիկյան պարտիայի և Լենինի գործունեության մասին: Ցույց տալով ռեակցիոն ուժերի Լենինի դեմ ուղղված կատաղի հարձակումների պատճառները, «Բանվորի կռիվը» գրում էր. «Լենինը բուրժուազիայի աչքում մարմնացումն էր այն բանի, որ մի օր բանվոր դասակարգի ձեռքը պիտի անցնի քաղաքական իշխանությունը, որը սպառնում է տիրող տնտեսակարգին, կուլտերի արտոնություններին» (№ 2, 1917 թ.):

Ալեքսանդրոպոլի բոլշևիկները 1917 թ. հուլիսին հրապարակում են հատուկ բյուլետեն, որի էջերում հերքելով բոլշևիկների և նրանց առաջնորդ Լենինի հասցեին կոնտրռևոլյուցիոն ուժերի տարածած հերյուրանքները, ցույց են տալիս, որ ժողովրդի շահերի իսկական պաշտպանները բոլշևիկներն են և Լենինը: 1917 թվականի հուլիսին զինվոր Շինկարենկոն Կարսից «Կավկազսկի ռաբոչի» թերթում գրում էր, որ «Ընկեր Լենինը և բոլոր բոլշևիկները, դա այն պարտիան է, որն ամենից լավ է արտահայտում զինվորների, գյուղացիների և բանվորների շահերը» (№ 92, 1917 թ.): 1917 թ. օգոստոսի 3-ին բանվորների, զինվորների և գյուղացիների Ալեքսանդրոպոլի Սովետի օրգան «Ռաբոչի

ի սոլդատ» թերթում Բ. Ղարիբջանյանը հրապարակում է երկու հոդված («Անարխիայի և պարտության հանցավորները», «Աքացել կարելի է, բայց զգույշ» (№ 33, 1917 թ.) ի պաշտպանություն Լենինի և լենինյանների, որոնց, ինչպես հեղինակն է ասում, բուրժուական թերթերը «հեղեղել են ստի ու զրպարտության ծովով»: Մերկացնելով տեղական էսեռների օրգան «222» թերթուկի հակաբոլշևիկյան զրպարտությունները այն մասին, որ իբր թե «բոլշևիկները չեն հետաքրքրվում դասակարգային պայքարով, նրանց պետք չէ ոչ սոցիալիզմը, ոչ կոմունան», Բ. Ղարիբջանյանը գրում է. «Բոլշևիկները պահանջում են ամբողջ հողի անցումը աշխատավոր ժողովրդի ձեռքը՝ դեռ մինչև Սահմանադիր ժողովի գումարումը, նրանք պահանջում են գերշահույթի բռնագրավում և հսկողություն արտադրության վրա, այսինքն, բոլշևիկներն այն ամենի կողմնակից են, ինչը մարդկանց տանում է դեպի սոցիալիզմ, դեպի կոմունա» (№ 33, 1917 թ.):

ՌՍԴԲ(բ)Պ VI համագումարի որոշումները մարտական ծրագիր դարձան բոլոր պարտիական կազմակերպությունների համար: Նրանք դրվեցին Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին երկրային համագումարի (1917 թ. հոկտեմբեր) հիմքում: Հայաստանի բոլշևիկները ակտիվ մասնակցություն ունեցան այդ համագումարի աշխատանքներին: Ա. Միկոյանը, Պ. Արվելաձեն, Բ. Բորյանը, Ի. Կիասովը (Կիասաշվիլի), Սկարյուկինը և ուրիշներ համագումարում ներկայացնում էին Ալավերդու, Հաղպատի, Ալեքսանդրոպոլի, Սարիղամիշի, Կարսի պարտիական կազմակերպությունները, որոնք հաստատակամորեն կանգնած էին սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան գծի պաշտպանության դիրքերում: «Ալավերդու գործարանի բանվորները, ինչպես և գյուղացիները մեր պարտիայի հետևից են գնում»,— հայտարարում էր իր ելույթում Ա. Միկոյանը: Կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ, լենինյան սկզբունքների պաշտպանությամբ համագումարում վճռականորեն հանդես եկավ Ալեքսանդրոպոլի կազմակերպության պատգամավոր Պ. Արվելաձեն: Ավարտելով իր աշխատանքները՝ Կովկասյան բոլշևիկների առաջին համագումարը ջերմ ողջույն հղեց Վ. Ի. Լենինին՝ հաստատ համոզմունք հայտնելով, որ շուտով կհաղթի սոցիալիստական ռևոլյուցիան, և Լենինը դուրս գալով ընդհատակից, բացահայտ կերպով կգրավի պարտիայի ու ռևոլյուցիայի առաջնորդի իր պոստը: Եվ այդպես էլ եղավ: Հոկտեմբերի 26-ին, Սովետների համառուսաստանյան II համագումարում ստեղծվեց Ժողովրդական Կոմիսարների Սովետ՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ: Ալեքսանդրոպոլի Սովետի բոլշևիկ դելեգատ Կորոստիլենկոն նրանց թվումն էր, որոնք իրենց ձայնը տվին Լենինի օգտին:

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի լենինյան դեկրետները և մյուս միջոցառումները ազդարարելով կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի նոր դարաշրջանի սկիզբը, ապահովեցին ժողովուրդների միջև կայուն ու անխախտ եղբայրական միության հաստատումը: Ղեկավարվելով «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայի» — լենինյան պատմական այդ մեծ փաստաթղթի սկզբունքներով, Սովետական կառավարությունը «Թուրքահայաստանի մասին» դեկրետում



(1917 թ. դեկտեմբերի 29), որն ստորագրել էին Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը, պաշտպանում էր Ռուսաստանի կողմից օկուպացված «Թուրքահայաստանի» հայերի ազատ ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև կատարյալ անկախությունը: Հանձնարարվում էր Կովկասի գործերի արտակարգ կոմիսար Ս. Շահումյանին, ամեն տեսակի աջակցություն ցույց տալ Թուրքահայաստանի բնակչությանը դեկրետում նշված միջոցառումներն իրականացնելու գործում:

Հայ ժողովրդի ռևոլյուցիոն-ազատագրական պայքարին, Հայաստանի բոլշևիկներին մեծ օգնություն ցույց տվեցին Վ. Ի. Լենինի կառավարության կազմում ստեղծված Ազգությունների գործերի ժողովրդական Կոմիսարիատը և նրան կից Հայկական գործերի կոմիսարիատը, որը ղեկավարում էին հայ ժողովրդի արժանավոր զավակներ, բոլշևիկներ Վ. Ավանեսովը և Վ. Տերյանը: Այդ դժվարին ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինը բազմիցս ընդունել է հայ ժողովրդի ներկայացուցիչներին, ցուցումներ է տվել նրանց Հայաստանի ազատագրության հետագա ուղիների մասին:

Հայ ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, այն ժողովուրդների թվումն էր, որոնք ռուս պրոլետարիատի օրինակով առաջինը գնացին սոցիալիստական ռևոլյուցիայի ուղիով: Երևանի, Ալեքսանդրոպոլի, Ղարաքիլիսայի, Կարսի, Սարիղամիշի, Ջալալօղլու, Զանգեզուրի և այլ վայրերի բանվորները, աշխատավոր գյուղացիները և զինվորները բոլշևիկների ղեկավարությամբ պայքար էին ծավալում Սովետական իշխանության համար: Հայաստանի քաղաքներից ու գյուղերից Վ. Ի. Լենինին էին ուղղվում բազմաթիվ բանաձևեր, նամակներ, հեռագրեր, որոնց մեջ արտահայտված էին աշխատավոր մասսաների սերն ու համակրանքը մեծ առաջնորդի նկատմամբ, նրանց պատրաստակամությունը՝ կրծքով պաշտպանելու Սովետական իշխանության նվաճումները:

Հայաստանի, ինչպես և ամբողջ Անդրկովկասի աշխատավորության Սովետական իշխանության համար մղած պայքարի դրոշակակիրը Բաքվի պրոլետարիատն էր, որը բոլշևիկների ղեկավարությամբ 1918 թ. Բաքվում և նրա շրջակայքում հաստատելով Սովետական իշխանություն, անմահ էջեր գրեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի պատմության մեջ: Վ. Ի. Լենինը Ս. Շահումյանի, Ա. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Վ. Ֆիոլետովի և մյուս ականավոր բոլշևիկների միջոցով ղեկավարում և ուղղություն էր ցույց տալիս այդ պայքարին: Պարտիայի առաջնորդը բազմիցս բարձր գնահատական է տվել Ս. Շահումյանի գլխավորած Բաքվի հերոսական Կոմունայի գործունեությանը:

Սակայն Անդրկովկասի բուրժուական նացիոնալիստները՝ դաշնակները, մենշևիկները, մուսավաթականները և ռևոլյուցիայի մյուս թշնամիները, օտարերկրյա իմպերիալիստների վարձու գործակալները երկրում իշխանությունն իրենց ձեռքը վերցրին, աշխատավոր մասսաների կամքին հակառակ անջատեցին Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից և Ադրբեջանում, Վրաստանում և Հայաստանում հաստատեցին իրենց արյունոտ տիրապետությունը: «Մենք գիտենք,— ասում էր Վ. Ի. Լենինը 1918 թ. հուլիսին,— որ Կովկասում մեր ընկեր-կոմունիստների դրությունը առանձնապես դժվար է եղել...» (հ. 28, էջ 8):

Այդ դժվարին պայմաններում, երբ մի կողմից ռևոլյուցիայի թիկունքին դանակ էին խրում բուրժուական նացիոնալիստները, իսկ մյուս կողմից հարձակվում էին օտարերկրյա զավթիչները, Հայաստանի բոլշևիկները կատարելով Լենինի ցուցումները, անձնազոհ պայքար էին մղում աշխատավորությանը Մեծ Հոկտեմբերի դրոշի շուրջը համախմբելու համար։ Նրանք պարզաբանում էին մասսաներին, որ միայն Սովետական իշխանությունը կարող է նրանց փրկել գերմանաթուրքական և անգլո-ամերիկյան օկուպանտներից։

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվում պահպանվում է բավականին ուշագրավ մի փաստաթուղթ Անդրկովկասի Սեյմի հայ անդամների, Ազգային խորհրդի, պարտիաների ներկայացուցիչների և հրավիրված անդամների 1918 թ. ապրիլի 6—8-ը Ալեքսանդրոպոլում տեղի ունեցած արտակարգ խորհրդակցության արձանագրությունը, որում բերված են տարբեր պարտիաների ներկայացուցիչների և այլ հասարակական գործիչների ելույթները Անդրկովկասում ստեղծված ծանր դրության կապակցությամբ։ Մերկացնելով կոնտրռևոլյուցիոն պարտիաներին, որոնք կատաղի հարձակումներ էին գործում Սովետական Ռուսաստանի և նրա լենինյան կառավարության դեմ, Հայաստանի բոլշևիկների ներկայացուցիչները խորհրդակցությունում նշում էին, որ Անդրկովկասի փրկության համար միայն մի ճանապարհ կա՝ ձեռք մեկնել Ժողովրդական Կոմիսարների Սովետի իշխանությանը, երկրամասում ևս հաստատել Սովետական իշխանություն։

Անդրկովկասյան հակասովետական բլոկն այլ ուղի ընտրեց և դրանով իսկ երկրամասի աշխատավորությանը կանգնեցրեց նոր արհավիրքների առաջ, իսկ հայ ժողովրդի գլխին նորից կախվեց ֆիզիկական բնաջնջման վտանգը։

1918—1920 թթ. Հայաստանում դաշնակների տխրահռչակ տիրապետության տարիներին բոլշևիկները հայ ժողովրդին համախմբում էին Սովետական իշխանության շուրջը։ Վ. Ի. Լենինը դաշնակների պետությունը դասում էր այն 14 պետությունների թվին, որոնք «խաչակրաց» արշավանքի էին դուրս եկել Սովետական Ռուսաստանի դեմ։ Բոլշևիկներն իրենց հերոսական աշխատանքով խարխլում էին օտարերկրյա ինտերվենտների և սպիտակգվարդիականների այդ «թիկունքը»։ Չնայած դաշնակցության կատաղի տեռորին, նրանք ամրապնդում և ընդլայնում էին իրենց պարտիական կազմակերպությունները, հրապարակում էին բոլշևիկյան թերթեր, թռուցիկներ, բրոշյուրներ, կազմակերպում և ղեկավարում էին բանվորների, գյուղացիների, զինվորների ելույթները դաշնակցականների դեմ՝ հանուն Սովետական իշխանության։

Իր հոդվածներում և ճառերում Վ. Ի. Լենինը բազմիցս խոսել է Անդրկովկասի վիճակի մասին, ղեկավար ցուցումներ է տվել իրենց ժողովուրդների ազատության համար պայքարող տեղական բոլշևիկյան կազմակերպություններին։ 1918 թ. Մոսկվայում լույս էր տեսնում Հայկական Գործերի Կոմիսարիատի օրգան «Կոմունիստ» հայերեն շաբաթաթերթը, որում տպագրվում էին Վ. Ի. Լենինի ճառերը, զեկուցումները, հոդվածները, Սովետական կառավարության դեկրետները և որոշումները։ Կոմիսարիատը հայերեն լեզվով հրապարակում էր Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները։

Վ. Ի. Լենինն իր զինակիցների ու աշակերտների՝ Ի. Վ. Ստալինի, Ս. Գ.



Շահումյանի, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս. Մ. Կիրովի, Ա. Ֆ. Մյասնիկյանի, Վ. Ավանեսովի, Ա. Ի. Միկոյանի և ուրիշների միջոցով սիստեմատիկ օգնություն էր կազմակերպում Հայաստանի բոլշևիկներին։ Լենինի ցուցումներով և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ու Կովկասյան երկրային Կոմիտեի ղեկավարությամբ դժվարագույն ընդհատակում անձնվիրաբար աշխատում էին հավատարիմ լենինյաններ Ս. Ալավերդյանը, Ա. Մռավյանը, Հ. Սարուխանյանը, Ս. Կասյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Մարտիկյանը, Ս. Խանոյանը, Բ. Ղարիբջանյանը, Է. Սևյանը, Գ. Դանիելյանը, Գ. Հանեսօղլյանը, Բ. Հարությունյանը, Ղ. Ղուկասյանը, Ն. Շամախյանը, Գ. Գրիգորյանը և շատ ուրիշներ։

1918—1920 թթ. Մոսկվայում և Անդրկովկասում, առանձին բրոշյուրներով և հայ բոլշևիկյան մամուլում թարգմանաբար հրապարակվեցին և տարածվեցին Վ. Ի. Լենինի ավելի քան 30 աշխատություն։ Հայաստանի աշխատավորության մեջ լենինյան գաղափարների պրոպագանդայի գործում մեծ դեր կատարեց Երևանի բոլշևիկների օրգան «Խոսք» թերթը (1918—1919 թթ.), որի խմբագիրը հին բոլշևիկ Ա. Մելիքյանն էր։

Մի ընդարձակ հոդվածաշար տպագրելով Վ. Ի. Լենինի «Պետություն և ռևոլյուցիա» հանճարեղ աշխատության մասին, «Խոսքը» նշում էր. «Լենինը հեղափոխական մարքսիզմի ամենացայտուն ներկայացուցիչն է. նա հեղափոխական բանվորության սոցիալական ձգտումների ամենաանաղարտ արտահայտիչն է. նա Մարքսի և Էնգելսի ըմբռնած և քարոզած կոմունիզմի հանդուգն և խիզախ իրագործողն է. իր մտածողություններով, իր հոգատարությամբ, իր գործելակերպով նա մի ամբողջական և եզակի հեղափոխական սոցիալիստ է» (№ 8, 1918 թ.)։

Վ. Ի. Լենինի ցուցումների և պարտիայի VIII համագումարի որոշումների ոգով անցան Հայաստանի բոլշևիկների 1919 թվականի սեպտեմբերյան խորհրդակցությունն ու 1920 թվականի հունվարյան կոնֆերանսը, որոնք կարևոր նշանակություն ունեցան Հայաստանում պարտիական կազմակերպությունների միավորման ու Սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարում։ Հայաստանի բոլշևիկների հունվարյան կոնֆերանսը ելնելով Սովետական Հայաստանի և Անդրկովկասի քաղաքական վիճակից, կոմունիստական կազմակերպությունների հիմնական խնդիրը համարեց դաշնակների իշխանության բռնի, ռևոլյուցիոն տապալումը և Սովետական իշխանության հաստատումը։ Կոնֆերանսը որոշեց մտնել ՌԿՊ-ի մեջ, մարզային կազմակերպության իրավունքներով որպես նրա բաղկացուցիչ մաս։

1920 թվականի մարտին, երբ փառապանծ Կարմիր Բանակը պատմական հաղթանակներ տանելով արտաքին ու ներքին թշնամիների դեմ մոտենում էր Կովկասի դռներին, Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի աշխատավորությունը դիմեց Սովետական Ռուսաստանին օգնելու իրենց՝ ազատագրվելու կոնտրռևոլյուցիոն բուրժուա-նացիոնալիստական կառավարությունների և նրանց օտարերկրյա տերերի լծից։ Վ. Ի. Լենինն անձամբ զբաղվում էր այդ օգնության կազմակերպման հարցով։ Նրա ցուցումներով 11-րդ Կարմիր Բանակը Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս. Մ. Կիրովի և Ա. Ի. Միկոյանի ղեկավարությամբ շարժվեց Անդրկովկաս, օգնելու ապստամբ ադրբեջանական ժողովրդին իր երկրում հաստատելու սովետական կարգեր։

Մայիսին բոլշևիկների ղեկավարությամբ, հանուն Սովետական իշխանու-

թյան զինված ապստամբություն բռնկվեց Հայաստանում: Այս մասին Գ. Կ. Օրջոնիկիձեն 1920 թվականի հունիսի սկզբին հեռագրով հայտնում էր Մոսկվա Վ. Ի. Լենինին և Ի. Վ. Ստալինին. «Մայիսի մեկից սկսած, որը բացառապես անցավ ՌԿՊ կոմունիստական կազմակերպությունների լոզունգներով, Հայաստանում բանվորա-գյուղացիական մասսաների առաջ կանգնեց իշխանության հարցը: Ապստամբության դրոշը առաջինը բարձրացրեց Ալեքսանդրապոլը, որտեղ և առանձնացվեց Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե: Մայիսի 3-ին Ալեքսանդրապոլում և նրա շրջաններում իշխանությունը փաստորեն գտնվում էր տեղական կոմունիստների ձեռքին: Մայիսի 10-ին Հայաստանի Ռազմա-Ռևոլյուցիոն կոմիտեի հրամանով Հայաստանը հայտարարվեց Սովետական, դաշնակների իշխանությունը տապալված... Ամբողջ Հայաստանը ընդգրկված էր ապստամբության կրակով»: Ս. Օրջոնիկիձեն նկարագրում է ապստամբության հերոսական ընթացքը Հայաստանի մյուս շրջաններում և նրա դաժանային ճնշումը դաշնակցական մաուզերիստների կողմից: Զոհված ապստամբներին նա անվանում է «Մեր լավագույն ընկերները»:

Գ. Կ. Օրջոնիկիձեի Վ. Ի. Լենինին և Ի. Վ. Ստալինին ուղղած այս հեռագիրը, որը մինչև հիմա, դժբախտաբար, չի գրավել մեր պատմաբանների ուշադրությունը, Անդրկովկասի և Հայաստանի իրադրությանը քաջածանոթ պարտիական ականավոր գործչի կողմից գրած պատմական կարևոր փաստաթուղթ է Հայաստանում 1920 թ. մայիսյան ապստամբության պատմության հետ կապված մի շարք հարցեր պարզելու համար:

Հայ ժողովրդի մեծ բարեկամ Գ. Կ. Օրջոնիկիձեն Վ. Ի. Լենինին և Սովետական կառավարությանը ուղարկած հեռագրերում ընդգծելով մայիսյան ապստամբության հերոսական բնույթը, միաժամանակ առաջարկում էր բազմակողմանի օգնություն կազմակերպել ապստամբներին: Սակայն երիտասարդ Սովետական Ռուսաստանը այն ժամանակ գտնվում էր չափազանց ծանր պայմաններում: 1920 թվականի մայիսին Կարմիր Բանակը համառ մարտեր էր մղում պանական Լեհաստանի և գեներալ Վրանգելի զորքերի դեմ, իսկ Սովետական Ադրբեջանում գտնվող զորամասերը զբաղված էին մուսավաթական բանդաների լիկվիդացումով:

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը Վ. Ի. Լենինի ցուցումներով հսկայական օգնություն կազմակերպեցին ապստամբներին դաշնակցական տեռորից ազատագրելու գործում: Դաշնակների հետապնդումներից փախած աշխատավորները եղբայրական ապաստան էին գտնում Սովետական Ադրբեջանում: Սովետական կառավարությունը նոտաներ էր հղում դաշնակցական կառավարությանը, պահանջելով վերջ դնել կոմունիստների գնդակահարություններին և հալածանքներին: «Սովետական կառավարությունը գտնում է,—ասված է 1920 թվականի օգոստոսի 26-ի նոտայում, —որ Հայաստանի կառավարությունը պետք է վճռական միջոցներ ձեռնարկի վերջին ժամանակներս տեղի ունեցող արյունոտ ռեպրեսիաներն ու ինքնադատաստանները դադարեցնելու և Հայաստանի ու Սովետական Ռուսաստանի ժողովուրդների խաղաղ համագործակցությունը ծանր փորձությունների չենթարկելու համար: Եթե հետագայում վերջ չտրվի Հայաստանում կոմունիստների արյունոտ հետապնդումներին, Սովետական կառավարությունը հարկադրված կլինի նույնանման միջոցների դիմել այն գործիչների նկատմամբ,



որոնք կհայտնաբերվեն Ռուսաստանի ֆեդերատիվ ռեսպուբլիկայի տերիտորիայում»:

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության վճռական միջամտության շնորհիվ Հայաստանի կոմունիստներից շատերը փրկվելով գնդակահարությունից, շարունակեցին իրենց անձնվեր աշխատանքը մասսաների մեջ: Հաշվի առնելով մայիսյան փառապանծ ապստամբության դասերը, Հայաստանի աշխատավորները կոմունիստական կազմակերպությունների ղեկավարությամբ պատրաստվում էին նոր մարտերի դաշնակների ու նրանց օտարերկրյա տերերի տիրապետությունը տապալելու և սովետական կարգեր հաստատելու համար:



Հայ ժողովրդի ռևոլյուցիոն պայքարի հետագա վերելքի համար մեծ նշանակություն ունեցավ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների միավորումը Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի մեջ, որը տեղի ունեցավ Վ. Ի. Լենինի ցուցումով, 1920 թ. ամռանը: Ստեղծվեց Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմ և նրա արտասահմանյան բյուրոն, որն սկզբում գտնվում էր Թիֆլիսում, իսկ ապա Բաքվում: Նրանց կազմում մտան հին կոմունիստներ Ս. Բեկզադյանը, Ա. Մռավյանը, Ս. Կասյանը, Դ. Շահվերդյանը, Ի. Դովլաթյանը, Հ. Կոստանյանը, Հ. Պողոսյանը, Դ. Տեր-Սիմոնյանը և ուրիշներ:

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան ստեղծվեց որպես ՌԿ(բ)Պ բաղկացուցիչ ու անբաժանելի մասը, որպես նրա հավատարիմ ջոկատը, լիովին համապատասխան լենինյան գծին:

Պատմական նշանակություն ունեցող այս կարևորագույն հարցում Հայաստանի բոլշևիկները միահամուռ ցույց տվին իրենց համախմբվածությունը Վ. Ի. Լենինի, պարտիայի կենտկոմի շուրջը, նրանք ամենայն վճռականությամբ և հետևողականությամբ հաղթահարեցին այն ընկերների միանգամայն սխալ ու վնասակար տեսակետը, որոնք կանգնած էին ինքնուրույն կոմունիստական պարտիաների ֆեդերացիա ստեղծելու տեսակետի վրա: Պարտիական շինարարության բնագավառում լենինյան գծի հաղթանակը և ՀԿ(բ)Պ-ի ստեղծումը ՌԿ(բ)Պ Կենտկոմի ղեկավարությամբ Հայաստանի բոլշևիկների մեծ նվաճումն էր:

Վ. Ի. Լենինի և պարտիայի Կենտկոմի հանձնարարությամբ Հայաստանի պարտիական կազմակերպությունների ամրապնդման և Սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարին անմիջական օգնություն էին ցույց տալիս Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտներ Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ս. Մ. Կիրովը և Ա. Ի. Միկոյանը: Նրանք սիստեմատիկաբար տեղյակ էին պահում Լենինին և Կենտկոմին Անդրկովկասի և Հայաստանի վիճակի մասին, գործնականորեն իրականացնում էին պարտիայի ցուցումները ամբողջ Անդրկովկասում Սովետական իշխանության հաղթանակն ապահովելու համար:

Անդրկովկասյան ժողովուրդների ազատագրական պայքարի կազմակերպման գործում մեծ նշանակություն ունեցավ Արևելքի ժողովուրդների առաջին համագումարը, որը տեղի ունեցավ 1920 թ. սեպտեմբերի սկզբին Բաքվում,

Կոմինտերնի Գործկոմի նախագահությամբ։ Համագումարի աշխատանքներին, 38 ազգությունների պատվիրակների թվում ակտիվ մասնակցություն ունեցան նաև Հայաստանի աշխատավորության, Կոմպարտիայի ներկայացուցիչները։ Համագումարից անմիջապես հետո Բաքվում տեղի ունեցած Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կոնֆերանսը քննարկելով Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի զեկուցումը իր գործունեության մասին և պարտիական կազմակերպությունների անելիքների հարցը, ողջույնի հեռագրեր ուղարկեց Վ. Ի. Լենինին և Երրորդ Ինտերնացիոնալին։ Մեկ ամիս անց ՀԿ(բ)Պ Կենտկոմը հատուկ կոչով դիմեց Հայաստանի բոլոր բանվորներին և գյուղացիներին՝ տապալելու դաշնակցության լուծը և հաստատելու Սովետական իշխանություն։

Հայաստանում Սովետական կարգերի հաստատման հարցը բազմիցս քննարկվել է ՌԿ(բ)Պ Կենտկոմի և նրա Կովկասյան բյուրոյի նիստերում։ Պարտիան անմիջական խնդիր էր դնում փրկել հայ ժողովուրդը նրան սպառնացող ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից, որը լուրջ վտանգ էր դարձել դաշնակների ավանտյուրիստական քաղաքականության, թուրքական զավթիչների ինտերվենցիայի և Անտանտի պետությունների դիվանագիտական նենգ խաղերի հետևանքով։

Հայ ժողովրդի համար այս կրիտիկական օրերին Վ. Ի. Լենինը անձամբ զբաղվում էր Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակն ապահովելու գործով։ Նա ուշադրությամբ հետևում էր Անդրկովկասի և Հայաստանի մասին հաղորդագրություններին, պատասխանատու աշխատողներ էր ուղարկում Անդրկովկաս, ցուցումներ էր տալիս պարտիայի Կենտկոմում քննարկելու Հայաստանի վիճակի հարցը։ Սովետական կառավարությունն իր պատրաստակամությունն էր հայտնում օգնելու Հայաստանին դուրս գալու ծանր դրությունից։ Այս ուղղությամբ Վ. Ի. Լենինի ցուցումները կատարելու գործում բացառիկ դեր է կատարել Գ. Կ. Օրջոնիկիձեն։ Այդ մասին են վկայում նրա բազմաթիվ գրությունները, հեռագրերը Վ. Ի. Լենինին։ Հայաստանի իրադրության մասին բազմաթիվ հաղորդագրություններ են ուղարկել Լենինին նաև Հայաստանի պարտիական կազմակերպությունների ղեկավար օրգանները։ Միխա Ցխակայան, որն այն ժամանակ աշխատում էր Մոսկվայում և Կոմինտերնի Գործկոմի անդամ էր առաջադրվել Վրաստանի և Հայաստանի բոլշևիկների ցանկությամբ, պատմում է, որ հոկտեմբերի վերջերին և նոյեմբերին նա բազմաթիվ ինֆորմացիոն տեղեկություններ է ստացել ՀԿ(բ)Պ արտասահմանյան բյուրոյից, որոնցով նրանք խնդրում էին դիմել Լենինին և եղբայրական աջակցությամբ խնդրել Հայաստանը ծանր վիճակից փրկելու համար։ Վ. Ի. Լենինի մանդատով 1920 թ. հոկտեմբերին Երևան է գալիս ՌՍՖՍՀ-ի լիազոր ներկայացուցչությունը՝ հին բոլշևիկ Բ. Լեգրանի ղեկավարությամբ։ Նա լիազորված էր բանակցություններ վարել և հաշտության պայմանագիր կնքել դաշնակցական կառավարության հետ։ Ներկայացուցչության մեջ, որպես պատասխանատու աշխատողներ մտնում էին հայ բոլշևիկներ Ս. Տեր-Գաբրիելյանը, Ա. Հովհաննիսյանը և ուրիշներ։ Սակայն դաշնակները, որպես Արևմտյան պետությունների կամակատարներ, շարունակելով իրենց ավանտյուրիստական քաղաքականությունը, հրաժարվեցին Սովետական Ռուսաստանի օգնությունից, դրանով իսկ նոր արհավիրքներ բերելով հայ ժողովրդի գլխին։

Ոգեշնչված հայ ժողովրդի նկատմամբ լենինյան հոգատարությամբ և արտաքին ու ներքին թշնամիների դեմ Սովետական Ռուսաստանի տարած պատմական հաղթանակներով, Հայաստանի աշխատավորությունը բոլշևիկների ղեկավարությամբ վճռական պայքարի դուրս եկավ դաշնակների դեմ։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Իջևանի և Դիլիջանի աշխատավորությունը զինված ապստամբությամբ տապալեց դաշնակների լուծը։ Ստեղծվեց Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտե, որը Հայաստանը հայտարարելով Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա, դիմեց Վ. Ի. Լենինին՝ օգնություն խնդրելով։ 11-րդ Կարմիր Բանակի օգնությամբ Հայաստանն ազատագրվեց դաշնակների լծից։ Դեկտեմբերի 2-ին Ս. Օրջոնիկիձեն հեռագրով հայտնեց Վ. Ի. Լենինին. «Երևանում հռչակված է Սովետական իշխանություն, հին կառավարությունը վերացված է»։ Վ. Ի. Լենինը Հայաստանի Ռևկոմի նախագահ Ս. Կասյանին հղած հեռագրում ջերմորեն ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։ Սովետների Համառուսաստանյան VIII համագումարում (1920 թ. դեկտեմբեր) Վ. Ի. Լենինը ողջունեց «Բուխարայի, Ադրբեջանի ու Հայաստանի Սովետական ռեսպուբլիկաների կազմվելն ու ամրապնդվելը, որոնք վերականգնեցին ոչ միայն իրենց լիակատար անկախությունը, այլև իշխանությունը վերցրին բանվորների և գյուղացիների ձեռքը» (Երկեր, հ. 31, էջ 619)։

Հայկական ՍՍՌ-ն Մեծ Հոկտեմբերի հարազատ զավակն է. նրա ստեղծմամբ սկսվեց նոր դարաշրջան հայ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ։ Այդ պատմական հաղթանակով Հայաստանի աշխատավորությունը պարտական է մեծ Լենինին, Լենինի ստեղծած և կոփած Կոմունիստական պարտիային, ժողովուրդների բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքների անշեղ կենսագործմանը։

Հայաստանում Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինի անմիջական ցուցումներով և ղեկավարությամբ ամրապնդվում էին Հայաստանի կոմունիստական կազմակերպություններն ու Սովետական իշխանության օրգանները, տնտեսական, քաղաքական և կուլտուրական մեծ օգնություն էր կազմակերպվում նորաստեղծ ռեսպուբլիկային։ Ինչպես Սովետական իշխանության համար մղված պայքարի ժամանակաշրջանում, այնպես էլ Սովետական իշխանության տարիներին Հայաստանի բոլշևիկները միշտ հավատարիմ են մնում մեծ Լենինին, լենինիզմին։ Հայաստանի Կոմունիստական պարտիան համախմբված պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, Լենինի դրոշով հաղթանակից հաղթանակ է տանում մեր ռեսպուբլիկայի աշխատավորությանը։

---

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՎԵՐԱԾՆՎՈՂ ԱՐԵՎԵԼՔԸ

## Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Վ. Ի. Լենինը Արևելքի ժողովուրդների մեծ բարեկամն էր։ Նա իր տիտանական ամբողջ գործունեության մեջ միշտ էլ առաջնակարգ ուշադրություն է հատկացրել ճնշված ու շահագործվող բոլոր ժողովուրդների ազատագրական պայքարի հարցերին։ Սկսած մեր դարի արշալույսից, չի եղել Արևելքի գաղութացված ու ճնշված ժողովուրդներին վերաբերող քիչ թե շատ աչքի ընկնող իրադարձություն, երևույթ, որին չարձագանքեր մեծ Լենինը, որին պատասխան չտար լենինյան խորաթափանց միտքը։ Նրա համար մոտիկ ու թանկ էին բոլոր ազգերի աշխատավորները, հասկանալի էին նրանց իղձերն ու արդարացի պայքարը։ Այդ մասին շատ պատկերավոր է գրել ֆրանսիական նշանավոր կոմունիստ Պոլ Վայյան-Կուտյուրիեն. «Ամբողջ աշխարհը ցնցած այդ մարդը, որի գիտակցությունը անընդհատ որոճում էր այն ամենը, ինչով ապրում ու շնչում էր այդ աշխարհը, այդ մարդը մինչև գիտակցական կյանքի վերջը իր մեջ պահպանեց զարմանալի ունակություն՝ զգալ և մտածել ինչպես չինական կուլին, ինչպես բեռնակիր նեգրը։ Ճնշված աննամցին, հնդիկը նրա համար այնքան հասկանալի էին, նույնքան բաց գիրք էին, որքան լենինգրադցի մետաղագործը, որքան փարիզցի տեքստիլագործը, որքան Նոր Վիրգինիայի ածխահատը»։

«Կենդանության ժամանակ նա (Լենինը) մեր հայրն էր, ուսուցիչը, ընկերը, խորհրդատուն,—գրել է Հո-շի-Մինը։

— Այժմ նա մեր ուղենիշ աստղն է...

Լենինն ապրում է մեր մեջ, նա անմահ է»։

Հիրավի, Արևելքի միլիոնավոր աշխատավոր զանգվածների իրավազուրկ գոյավիճակի պատմության մեջ մեծ Լենինի ռևոլյուցիոն գործունեությունը շրջադարձային նշանակություն ունեցավ, նրանց պայքարի ու պայծառ ապագայի խորհրդանիշը հանդիսացավ։ Խաղաղության, անկախության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար պայքարող Արևելքի ժողովուրդների համար լենինյան գաղափարները նման են կենարար արևի։ Այդ գաղափարների ազդեցությունը օրեցօր դառնում է ավելի խոր, նրանց իմաստը՝ ավելի ու ավելի հասկանալի Արևելքի երկրների բոլոր ժողովուրդների համար։ Նրանց համար չկա ավելի թանկ և հարազատ անուն, քան Լենինի անունը, որի հիշատակը ապրում է և դարեր կապրի միլիոնավոր մարդկանց սրտերում։



***

XX դարի սկզբին աշխարհի բաժանումը խոշորագույն կապիտալիստական տերությունների միջև արդեն ավարտվեց։ Կապիտալիզմը վերածվեց մի բուռ «առաջավոր» երկրների կողմից երկրագնդի բնակչության գերակշռող մեծամասնության գաղութային ճնշման ու կեղեքման համաշխարհային սիստեմի։ Գաղութային ժողովուրդների ամենադաժան շահագործումը դարձավ կապիտալիստական մոնոպոլիաների գերշահույթների կարևորագույն աղբյուրներից մեկը։ Բուրժուական քաղաքական գործիչները, փիլիսոփաները, տնտեսագետները և գաղութակալության մյուս բոլոր պաշտպանները շղթայված Արևելքը դիտում էին միայն որպես վայրենի շահագործման և կապիտալիստական Արևմուտքի անհագ հարստացման պասսիվ օբյեկտ։ Նրանք ի վիճակի չէին հասկանալու, որ «Համաշխարհային կապիտալիզմը և 1905 թվականի ռուսական շարժումը վերջնականապես արթնացրել են Ասիան։ Տրորված, միջնադարյան անշարժության մեջ վայրենացած բնակչության հարյուր միլիոնները արթնացել են նոր կյանքի և նոր պայքարի՝ հանուն մարդկային տարրական իրավունքների, հանուն դեմոկրատիայի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ, 19, էջ 84)։

Վ. Ի Լենինն առաջինը տեսավ գաղութային ու ճնշված երկրների կյանքում մեր դարի սկզբին տեղի ունեցած փոփոխությունները, խորապես թափանցեց դրանց էության մեջ, բացահայտեց ազգային-ազատագրական շարժումների նոր գծերը և ազդարարեց «Ասիայի զարթոնքը»։ Ուղղակի գաղութակալության դեմ գրած «Չինական պատերազմ» մարտաշունչ հոդվածում (որը լույս տեսավ 1900 թվականին, «Իսկրա»-ի անդրանիկ համարում) Վ. Ի. Լենինը հանդես եկավ չին ժողովրդի իրավունքների ու արդարացի պայքարի պաշտպանությամբ, խայտառակության սյունին գամելով իմպերիալիստական ուժ տերությունների, որոնք արյան մեջ խեղդեցին 1898—1900 թթ. չինական հակաֆեոդալական, հակաիմպերիալիստական «Իխետուան» (բռնցքամարտիկների) ապստամբությունը։ Ռևոլյուցիոն կրքոտությամբ խարազանելով եվրոպական պետությունների և ռուսական ցարիզմի հակաչինական քաղաքականությունը, Լենինը գրում էր, որ «թալանի այդ քաղաքականությունը ընդունված է անվանել գաղութային քաղաքականություն» (Երկեր, հ. 4, էջ 480)։ Խորապես համակրելով հնդիկ մեծ ժողովրդին և դատապարտելով անգլիական չինովնիկների գաղութային տիրապետությունը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Վերջ չկա այն բռնություններին և այն կողոպուտին, որը կոչվում է Հնդկաստանի անգլիական կառավարման սիստեմ» (Երկեր, հ. 15, էջ 217)։ Իմպերիալիզմի գաղութային տիրապետությունը նա համարում էր «...ստրկության, կողոպուտի և բռնության» սիստեմ։

1905 թվականի ռուսական առաջին ռևոլյուցիան և նրա ազդեցության տակ քնից արթնացած Արևելքի երկրներում սկսված ազգային ազատագրական, հակագաղութային շարժումները սկիզբ դրին համաշխարհային պատմության նոր շրջանին և Արևելքում բացեցին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաների ու հակաիմպերիալիստական պատերազմների էտապը։ Ասիայի ժողովուրդների ազատագրական պայքարը ընդունեց միանգամայն նոր, առաջներում չտեսնված բնույթ։ Նրանք արդեն միմիայն չէին գաղութարարների

դեմ իրենց հերոսամարտում. պատմության ասպարեզ էր իջել ամենառևոլյու-
ցիոն դասակարգը՝ պրոլետարիատը։
Վ. Ի. Լենինը մեծ ոգևորությամբ հետևում էր Արևելքի ժողովուրդների
ազատագրական շարժման հզոր վերելքին, ընդգծում էր, որ նեխվող բուր-
ժուազիային փոխարինելու է գալիս եվրոպական երկրների պրոլետարիատը և
ասիական երկրների երիտասարդ, դեպի իր ուժերը հավատով ու դեպի աշ-
խատավոր զանգվածները վստահությամբ լեցուն Սուն Յաթ-սենի (Չինաստան)
և Թիլաքի (Հնդկաստան) ասիական դեմոկրատիան։ «Եվրոպական գիտակից
բանվորն արդեն ասիական ընկերներ ունի,—ազդարարում էր Լենինը,—և այդ
ընկերների թիվը կաճի ոչ թե օրերով, այլ ժամերով» (Երկեր, հ. 15, էջ 219)։
Նա ուսումնասիրեց և ընդհանրացրեց 1905—1907 թթ. ռուսական ռևո-
լյուցիայի ազդեցության տակ Թուրքիայում, Իրանում, Չինաստանում, Հնդ-
կաստանում և այլ երկրներում ծավալված ազգային-ազատագրական շար-
ժումների կենդանի փորձը։ Իր բազմաթիվ հոդվածներում և աշխատություննե-
րում Լենինը արթնացող Արևելքի ժողովուրդների ազատագրական պայքարը
համարում էր դյուրավառ նյութ, որը բռնկելով ցնցելու էր գաղութակալության
հիմքերը։ Նա ընդգծում էր, որ «...Ասիայում մեծագույն համաշխարհային
փոթորիկների նոր աղբյուր է բացվել», որ «...հարյուր և հարյուր միլիոնավոր
մարդկանց վերընթաց շարժման մեջ» արտահայտվող Ասիայի ժողովուրդների
պայքարից «...կրով պիտի քաղել»։
«Կարլ Մարքսի ուսմունքի պատմական բախտը» աշխատության մեջ պար-
սավելով «քաղաքակիրթ» բուրժուաներին, որոնք ատամ էին կրճտացնում Չի-
նական ռեսպուբլիկայի դեմ, Վ. Ի. Լենինը հաստատ համոզմունք էր արտա-
հայտում, որ «...աշխարհում ո՛չ մի ուժ Ասիայում հին ճորտատիրությունը չի
վերականգնի, չի ջնջի աշխարհի երեսից ասիական ու կիսաասիական երկրնե-
րի ժողովրդական մասսաների հերոսական դեմոկրատիզմը»։
Վ. Ի. Լենինը հանճարեղ խորաթափանցությամբ բացահայտում էր Արև-
ելքի երկրներում ծավալված ազատագրական ռևոլյուցիաների դասակարգա-
յին ուժերի փոխհարաբերությունը, ի դեմս նրանց երիտասարդ բանվոր դա-
սակարգի տեսնելով հակագաղութային, հակաֆեոդալական պայքարի ամե-
նաառաջավոր և հետևողական ջոկատին։ Ռևոլյուցիայի մեծ ստրատեգը ողջու-
նում էր, որ «պրոլետարիատը Հնդկաստանում ևս աճել է արդեն մինչև
գիտակցական քաղաքական մասսայական պայքարի աստիճան, իսկ եթե այդ
այդպես է դարձել, անգլո-ռուսական կարգերի երգը Հնդկաստանում երգվա՛ծ
է» (Երկեր, հատ. 15, էջ 218)։ Վ. Ի. Լենինը համոզմունք էր հայտնում, որ
գաղութարարների դեմ մղված գոտեմարտերում «կկոփվի Ասիայի միլիոնա-
վոր ու տասնյակ միլիոնավոր պրոլետարների» հաղթական պայքարը։
Միաժամանակ Վ. Ի. Լենինը բազմակողմանիորեն ուսումնասիրում և
գնահատում էր այն դերը, որ Արևելքի երկրների ազգային-ազատագրական
շարժման մեջ խաղում է բուրժուազիան։ Նա բազմիցս ընդգծել է, որ չի կա-
րելի բուրժուազիայի դերը Արևմուտքի իմպերիալիստական երկրներում շփո-
թել գաղութներում և կախյալ երկրներում ազգային բուրժուազիայի դերի հետ,
որը դեռ չի սպառել իր ռևոլյուցիոն հնարավորությունները։ «Դեմոկրատիան
և նարոդնիկությունը Չինաստանում» հոդվածում Վ. Ի. Լենինը գրել է. «Փտել
է արևմտյան բուրժուազիան, որի առջև կանգնած է արդեն նրա գերեզմանա-



փորը—պրոլետարիատը։ Իսկ Ասիայում կա դեռևս բուրժուազիա, որն ընդու-
նակ է ներկայացնելու անկեղծ, մարտական, հետևողական դեմոկրատիա, որն
արժանավոր ընկերն է Ֆրանսիայի XVIII դարի վերջի մեծ քարոզիչների ու
մեծ գործիչների։
Այդ, պատմականորեն-առաջադիմական գործի դեռևս ընդունակ ասիա-
կան բուրժուազիայի գլխավոր ներկայացուցիչը կամ գլխավոր սոցիալական
հենարանը գյուղացին է» (Երկեր, հ. 18, էջ 199)։ Սակայն Լենինը ասիական
բուրժուազիայի մեջ չէր տեսնում մի միասնական ամբողջություն, բացահայ-
տում էր նրա էությունը, հակումները, տատանումներն ու անհետևողականու-
թյունը։ Մեծ դեմոկրատ Սուն Յաթ-սենի նման պայծառ դեմքի կողքին նա
դիմակազերծ էր անում Յուան Շի-կային, գանահարում նրա նողկալի դավա-
ճանությունը չին մեծ ժողովրդի շահերին։
Վ. Ի. Լենինը մշակեց մեր պարտիայի քաղաքականության ծրագրային
սկզբունքները Արևելքի ճնշված ժողովուրդների նկատմամբ, պրակտիկորեն
հանդես գալով ի պաշտպանություն Չինաստանի, Հնդկաստանի, Իրանի, Թուր-
քիայի, Ինդոնեզիայի և մյուս ասիական երկրների արդարացի պայքարի՝ ընդ-
դեմ գաղութակալության և ֆեոդալական ճնշման։ 1912 թվականին ՌՍԴԲԿ VI
Պրագայի կոնֆերանսը հատուկ բանաձևեր ընդունեց չին և պարսիկ ժողո-
վուրդների ռևոլյուցիոն պայքարի ու իմպերիալիստական տերությունների ագ-
դահատելի քաղաքականության վերաբերյալ։ Կոնֆերանսը արձանագրեց
«...չին ժողովրդի ռևոլյուցիոն պայքարի համաշխարհային նշանակությունը,
պայքարի, որը ազատագրություն է բերում Ասիային ու խարխլում եվրոպական
բուրժուազիայի տիրապետությունը, ողջունում է Չինաստանի ռևոլյուցիոներ-
ռեսպուբլիկականներին, հավաստում է այն խոր ոգևորությունն ու լիակատար
համակրանքը, որով Ռուսաստանի պրոլետարիատը հետևում է Չինաստանի
ռևոլյուցիոն ժողովրդի հաջողություններին, և նշավակում է ռուսական լիբե-
րալիզմի վարքագիծը, որը պաշտպանում է ցարիզմի զավթողական քաղաքա-
կանությունը» (ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի
պլենումների բանաձևերում ու որոշումներում, մաս 1-ին, 1954 թ., էջ 355—
356)։

***

Վ. Ի. Լենինն ազգային-գաղութային հարցի խոշորագույն տեսաբանն էր։
Զարգացնելով ազգային հարցի մասին Մարքսի և Էնգելսի գաղափարները, նա
դրանք կիրառեց պատմական նոր պայմաններում՝ իմպերիալիզմի դարաշըր-
ջանին համապատասխան, ստեղծեց ազգային-գաղութային հարցի գիտական
կուռ տեսություն, ստրատեգիա և տակտիկա, որպես պրոլետարական ռևոլյու-
ցիայի թեորիայի ստրատեգիայի ու տակտիկայի բաղկացուցիչ, օրգանական
մաս։ Նա բոլորովին նոր աստիճանի վրա դրեց պրոլետարական ինտերնացիո-
նալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարախոսությունը, ցույց
տվեց պրոլետարների մարքսիստական պարտիայի կառուցման ինտերնացիո-
նալ սկզբունքի անհրաժեշտությունը և գիտականորեն ապացուցեց իմպերիա-
լիզմի գաղութային սիստեմի կործանման անխուսափելիությունը։ Ռևոլյուցիոն
մոքի տիտանը ցույց տվեց, որ ազգերի բաժանումը ճնշողների և ճնշվողների
կազմում է հենց իմպերիալիզմի էությունը և բացահայտեց հակաիմպերիալիս-

տական, ազգային-ազատագրական շարժումների դերը իմպերիալիստական
սիստեմի ռևոլյուցիոն տապալման և սոցիալիզմի հաղթանակի գործում։
Վ. Ի. Լենինն անհրաժեշտ էր համարում ոչ միայն կապիտալիստական
առաջավոր երկրների պրոլետարական շարժման հետ գաղութացված ժողո-
վուրդների ազատագրական շարժման ընդհանուր ճակատը, այլև ազգերի ան-
ջատման, անկախ պետական գոյության իրավունքի ճանաչումը։ Դրանով իսկ
նա ազգերի ինքնորոշման հարցը կապում էր գաղութների ազատագրման հար-
ցի հետ։ Դա լրիվ հակասում էր Երկրորդ ինտերնացիոնալի քաղաքականու-
թյանը, որի գաղափարախոսները փորձում էին ժխտել պրոլետարական ին-
տերնացիոնալիզմն այն պատճառաբանությամբ, թե նա իբր անհամատեղելի
է ազգերի ինքնորոշման իրավունքի հետ։ Վ. Ի. Լենինը հերքեց այդ սնանկ
դիրքորոշումը, ցույց տվեց, որ իրականում ոչ մի հակասություն չկա այդ
սկզբունքների միջև և միայն այդ սկզբունքների կիրառման միջոցով կարելի է
փոխադարձ վստահության և կամավոր միավորման հասնել տարբեր ազգերի
աշխատավորների միջև։ Լենինը վճռական պայքար մղեց Երկրորդ ինտերնա-
ցիոնալի լիդերների դեմ, որոնց թյուր կարծիքով ազգային հարցը իբրև թե
միայն վերաբերում է Եվրոպայի «քաղաքակրթված» ազգերին, որ Արևելքի
ժողովուրդները «չեն հասունացել» ինքնուրույն պետական գոյության համար։
Գաղութների խաղաղ, ոչ ռևոլյուցիոն զարգացման մասին II ինտեր-
նացիոնալի դավաճանական դիրքին, Միլյերանի, Բեռնշտեյնի և մյուս ռևի-
զիոնիստների այն պնդումներին, թե մետրոպոլիաների աշխատավորները շա-
հագրգռված են գաղութներով, ռևոլյուցիոներ Լենինը հենց սկզբից հակադրեց
առաջավոր երկրների պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի և գաղութների
աշխատավորական մասսաների հակաֆեոդալական, հակաիմպերիալիստական
շարժման միավորման անհրաժեշտությունը։ Լենինը խոր մեկնաբանություն
տվեց Մարքսի առաջադրած «Ինտերնացիոնալիզմի արմատական սկզբունքին»՝
չի կարող ազատ լինել այն ժողովուրդը, որը ճնշում է ուրիշ ժողովուրդների։
Վ. Ի. Լենինը «Սոցիալիստական ռևոլյուցիան և ազգերի ինքնորոշման
իրավունքը» թեզիսներում (1916 թ.) ընդգծում էր. «Այն սոցիալիստական
պարտիաները, որոնք և՛ այժմ, և՛ ռևոլյուցիայի ընթացքում, և՛ նրա հաղթա-
նակից հետո իրենց ողջ գործունեությամբ չեն ապացուցի, թե իրենք կազա-
տագրեն ստրկացրած ազգերին և նրանց նկատմամբ հարաբերությունները
կկառուցեն ազատ միության հիմունքով,—իսկ ազատ միությունը սուտ ֆրազ
է առանց անջատման ազատության, — այդպիսի պարտիաները դավաճանու-
թյուն կատարած կլինեն սոցիալիզմի հանդեպ» (Երկեր, հ. 22, էջ 184)։
Լենինը հարց էր դնում, որ «սոցիալիստները ոչ միայն պիտի պահանջեն գա-
ղութների անպայման, առանց փրկավճարի և անհապաղ ազատագրումը»,
այլև նրանք «...պետք է ամենավճռական ձևով պաշտպանեն այդ երկրների
բուրժուա-դեմոկրատական ազգային-ազատագրական շարժումների առավել
ռևոլյուցիոն տարրերին և օգնեն նրանց ապստամբությանը, իսկ հարկ եղած
դեպքում նաև նրանց ռևոլյուցիոն պատերազմին—ընդդեմ նրանց ճնշող իմ-
պերիալիստական պետությունների» (Երկեր, հ. 22, էջ 194)։
Բացահայտելով բոլշևիկյան պարտիայի այն ծրագրային թեզը, որ ազգե-
րի ինքնորոշման իրավունքը նշանակում է բացառապես քաղաքական իմաս-
տով անկախության իրավունք, ճնշող ազգից ազատորեն անջատվելու իրա-



վունք, Լենինը գտնում էր, որ պրոլետարիատը պետք է պայքարի ճնշված ազ-
գերին բռնությամբ տվյալ պետության սահմաններում պահելու դեմ։
Պաշտպանելով գաղութային տիրապետությունը Արևելքի երկրներում և
պաշտպանելով այդ երկրների ժողովուրդների ազատագրական պայքարը,
Լենինը թե՛ իր պրակտիկ գործունեությամբ և թե՛ իր գրավոր գործերով հան-
դես էր գալիս հանուն իսկական բարեկամության հաստատման Ռուսաստանի
բանվոր դասակարգի և գաղութային ու կախյալ երկրների աշխատավոր
զանգվածների միջև։ «Մենք միշտ կողմնակից ենք եղել, ենք և կլինենք առա-
ջավոր երկրների գիտակից բանվորների ամենասերտ մերձեցմանը ու միաց-
մանը բոլոր ճնշված երկրների բանվորների, գյուղացիների, ստրուկների
հետ»,—բոլշևիկյան պարտիայի անունից հայտարարում էր Լենինը (Երկեր,
հ. 23, էջ 77)։ Դեռ մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան
և Սովետական իշխանության հաստատումը մեր երկրում, ժողովուրդների
բարեկամության մեծ մարտիկը առաջ էր քաշում այն բացառիկ կարևոր հար-
ցը, որ Ռուսաստանի բանվոր դասակարգը իր երկրում հաղթանակելուց հետո
պետք է բազմակողմանի օգնության ձեռք մեկնի Ասիայի ու Աֆրիկայի տըն-
տեսապես հետամնաց երկրներին։
Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին, 1917 թվականի հոկտեմբերի
9-ին և 10-ին «Рабочий путь» թերթում հրապարակված «Ռևոլյուցիայի խըն-
դիրները» իր հայտնի ծրագրային հոդվածում Վ. Ի. Լենինը պարզաբանում էր
ռևոլյուցիոն Ռուսաստանի և Արևելքի գաղութային երկրների ապագա փոխհա-
րաբերությունների բնույթը, ընդգծում, որ յուրաքանչյուր ժողովուրդ պետք է
ազատություն ու հնարավորություն ստանա ինքը որոշելու ու տնօրինելու իր
բախտը։



Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան եզրափակեց մարդկու-
թյան «նախապատմությունը» և դրեց նրա նոր, իսկական պատմության
սկիզբը։ Մեր երկրում պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակով նոր ուղի-
ներով ընթացավ ամբողջ աշխարհի զարգացումը։ Լիովին հաստատվեց
լենինյան խորաթափանց մտքի ու կանխատեսումների ճշմարտությունը։ Հաղ-
թական ռևոլյուցիան Ռուսաստանում բացեց պրոլետարիատի հետ դաշնակցած
գաղութային ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական հզոր շար-
ժումների դարաշրջանը։
Հոկտեմբերյան ռևոլյուցիան շրջադարձային կետ հանդիսացավ իմպերիա-
լիզմի դեմ Ասիայի ու Աֆրիկայի ճնշված ժողովուրդների պայքարում։ Իհար-
կե մինչև այդ էլ ժամանակ առ ժամանակ, աշխարհի տարբեր մասերում հուր-
հրատում էր հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական շարժման
բոցը։ Սակայն ազատության և անկախության համար Արևելքի հարստահար-
ված ժողովուրդների ընդվզումները վերջանում էին պարտությամբ։ Քանի դեռ
աշխարհի վրա իշխում էր իմպերիալիզմը, քանի դեռ նա տիրապետում էր ամ-
բողջ մարդկության վրա, փոքր էր Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների հաղ-
թանակի հեռանկարը։ Միայն Մեծ Հոկտեմբերը ճնշված ժողովուրդների համար
գաղութային տիրապետությունից ազատագրվելու ռեալ պայմաններ ստեղծեց։
Քառասուներկու տարի առաջ մեր երկրում լենինիզմի հաղթանակը ազգա-

փարեց աշխարհում առաջին սոցիալիստական պետության ծնունդը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի որոտը հասավ երկրագնդի ամենախուլ անկյունները։ Նրա կենսահաստատ գաղափարները պայքարի կոչեցին ազգային ու սոցիալական ստրկության դեմ պայքարող բոլոր ժողովուրդներին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը, որը հռչակեց մարդու կողմից մարդու շահագործման վերացում, ագրարային հարցի լուծում՝ հօգուտ աշխատավոր գյուղացիների, խաղաղություն՝ առանց անեքսիաների ու կոնտրիբուցիաների, բոլոր ազգերի ինքնորոշման ու պետական ինքնուրույն գոյության իրավունք — ուժգին հարված հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմին։ Աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը հետևողականորեն հանդես եկավ գաղութակալության դեմ, հանուն բոլոր ժողովուրդների իրավահավասարության, ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի այն սկզբունքային դրույթով, որ «Պրոլետարիատը չի կարող ազատագրել իրեն, չազատագրելով ճնշված ժողովուրդներին»։ Գաղութակալության նկատմամբ մեր պարտիայի քաղաքականության պարզ և որոշակի ծրագրի առկայությունը Սովետական իշխանությանը հնարավորություն ընձեռեց ռևոլյուցիայի հենց մյուս օրը պրակտիկայում կենսագործել լենինյան սկզբունքները։

Հաշտության դեկրետը ամբողջ մարդկությանը ելք ցույց տվեց պատերազմի սպանդից։ Հաշտության մասին լենինյան դեկրետը բարոյական մեծ օժանդակություն հանդիսացավ հակագաղութային կռվի դրոշ պարզած Արևելքի աշխատավորական զանգվածների համար։ Երիտասարդ Սովետական պետությունն իր առաջնորդ մեծ Լենինի գրած «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում» ազդարարեց, որ «...պետք է լիովին վերացվի բուրժուական քաղաքակրթության բարբարոսական այն քաղաքականությունը, որը մի քանի ընտրյալ ազգերի մեջ եղած շահագործողների բարօրությունը կառուցում էր բազմամիլիոն աշխատավոր բնակչության ստրկացման վրա Ասիայում, ընդհանրապես գաղութներում ու մանր երկրներում» (Երկեր, հ. 26, էջ 518—519)։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական շարժումների բախտը կապեց մեր երկրում սոցիալիստական շինարարության հաջողությունների հետ։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան ճեղքելով իմպերիալիզմի ճակատը և, Չինաստանի, Մոնղոլիայի, Կորեայի, Աֆղանստանի, Իրանի, Թուրքիայի սահմաններին, Հնդկաստանի ու արաբական երկրների մատույցներում ստեղծելով մեր բազմազգ սոցիալիստական պետությունը, իսկական ազատություն և փաստական իրավահավասարություն ընձեռելով Ռուսաստանի ժողովուրդներին, գործով ցույց տվեց, որ սոցիալիստական զարգացում թևակոխած, նախկինում ճնշված ժողովուրդները ընդունակ են հաղթականորեն ապստամբելու շահագործողների ճնշման դեմ և ստեղծելու իրենց առաջավոր կուլտուրան և քաղաքակրթությունը։ Մեր երկրի ճնշված ժողովուրդները մարդկության պատմության մեջ առաջին անգամ բարձրացան իրոք ազատ ու իրավահավասար ժողովուրդների դրության, իրենց օրինակով վարակելով ամբողջ աշխարհի ճնշված ժողովուրդներին։

Արևելքի ժողովուրդները ի դեմս առաջին սոցիալիստական պետության գտան իրենց հույսը և իսկական պաշտպանին։ Ասիայի պետությունների հետ սովետական պետության կնքած իրավահավասար պայմանագրերը էապես փո-



խեցին միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմը, լայն հնարավորություններ ստեղծեցին Արևելքի երկրների դիվանագիտական մեկուսացումը վերացնելու համար։ Սոցիալիստական առաջին երկիրը պրակտիկայում ապացուցեց, որ իր քաղաքականությունն Արևելքում ոչ թե ժամանակավոր, կոնյունկտուրային դիրքորոշում է, այլ բխում է սովետական պետության հենց բնույթից։ Այս տեսակետից, Արևելքի ժողովուրդների նկատմամբ Սովետական իշխանության քաղաքականությունը պրակտիկայում պրոպագանդելու համար Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն էր նվիրում Սովետական Արևելքի ռեսպուբլիկաներին։ Նա ասում էր, որ նրանք Արևելքի նախադուռն են, որ այն ամենը, ինչ կատարվում է այստեղ, արձագանք կգտնի հարևան պետություններում, որտեղ ճնշվածները կգիտենան ու կզգան այն ամենը, ինչ կազմում է մեր էությունը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան պատմության մեջ առաջին անգամ արմատապես լուծեց ագրարային հարցը՝ հօգուտ աշխատավոր գյուղացիության։ Դա խոր, ռևոլյուցիոնացնող ազդեցություն ունեցավ Արևելքի երկրների վրա, որոնց բնակչության հիմնական զանգվածը բազմամիլիոն գյուղացիությունն է, իսկ ագրարային հարցը միշտ էլ հանդիսացել է Արևելքի համար կենտրոնական հարց և ռևոլյուցիոն շարժման գլխավոր բովանդակությունը։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը Արևելքի երկրների կոմունիստներին բազմիցս խորհուրդ էր տալիս «ընդհանուր կոմունիստական թեորիայի ու պրակտիկայի վրա հենվելով» հարմարվել յուրահատուկ պայմաններին, այդ թեորիան ու պրակտիկան կիրառել այն պայմաններում, երբ գլխավոր մասսան հանդիսանում է գյուղացիությունը, երբ պայքարն առաջին հերթին գնում է ոչ թե կապիտալիզմի դեմ, այլ միջնադարյան ճնշման դեմ։

1920 թվականին Լենինը գրում էր. «Աշխարհի բոլոր երկրներում, նույն այդ Հնդկաստանում, որտեղ տրորված են երեք հարյուր միլիոն անգլիական բատրակներ, արթնանում է գիտակցությունը և յուրաքանչյուր օր աճում է ռևոլյուցիոն շարժումը։ Նրանք բոլորը նայում են մեկ աստղի, Սովետական ռեսպուբլիկայի աստղին...» (Երկեր, հ. 30, էջ 497)։

Եվ իրոք, «Ռուսաստանում Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Ասիայի ժողովուրդների պայքարը ազգային անկախության համար, ընդդեմ զավթիչների ճնշման, բորբոքվեց նոր ուժով։ Այդ պայքարը դարձավ ավելի ևս կազմակերպված, նրա նպատակը դարձավ պարզ ու անհաղթելի, այն է՝ անկախություն և այն էլ անհապաղ»,— գրում է Ինդոնեզիայի ռեսպուբլիկայի պրեզիդենտ դոկտոր Սուկառնոն։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարները նվաճեցին Արևելքի ճնշված ժողովուրդների սիրտն ու համակրանքը։ Նրա ճառագայթները հաղթահարելով բոլոր խոչընդոտները, լուսավորեցին Արևելքը, ոգևորեցին աշխատավորական լայն մասսաներին, նրանց լույսը հասավ Ասիայի ամենամութ խրճիթները։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո Արևելքի շատ երկրներում ազգային-ազատագրական շարժման հուժկու վերելք սկսվեց։ 1919 թվականին հայրենասիրական շարժում ծավալվեց Չինաստանում։ 1918—1922 թթ. նոր ուժով բորբոքվեց հակաիմպերիալիստական պայքարը Հնդկաստանում։ «Մեծ Լենինի ղեկավարած Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հետ համարյա միաժամանակ,— գրում է Ջ. Ներուն,— մենք Հնդկաստանում սկսեցինք

*ազատության համար մեր պայքարի նոր էտապը։ ...Թեև մենք մեր պայքարում Մահաթմա Գանդիի ղեկավարությամբ գնում էինք այլ ուղիով, մենք հիացած էինք Լենինով և մեզ վրա ազդեցություն էր թողնում նրա օրինակը»։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ազդեցության տակ սկսվեց անկախության համար կորեական ու վիետնամական ժողովուրդների պայքարը, ազգային-ազատագրական շարժումները նոր լիցք ստացան Իրանում, Թուրքիայում, Աֆղանստանում, Բիրմայում, Ինդոնեզիայում և այլ երկրներում։*

*Հենց այդ ժամանակ Արևելքի մի շարք երկրներում սկսեցին ստեղծվել բանվոր դասակարգի մարքսիստական-լենինյան պարտիաներ։ 1920—1921 թվականներին կոմպարտիաներ հիմնադրվեցին Իրանում, Ինդոնեզիայում և Եգիպտոսում։ Անշեղորեն հետևելով լենինյան ուսմունքին, լիովին համապատասխան Լենինի սկզբունքներին, չին կոմունիստները 1921 թվականին հիմք դրին իրենց փառապանծ պարտիային։ Ստեղծվեց Մոնղոլական ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիան և մոնղոլական ժողովուրդը Սովետական Ռուսաստանի օգնությամբ ազատություն նվաճեց։ Իմպերիալիզմի ճնշման դեմ համարձակորեն ընդվզող Արևելքի երկրների հասարակական, դասակարգային ուժերի շարքում սկսեց ամենաակտիվ դեր խաղալ հակաիմպերիալիստական հարվածային ուժը՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով զինված պրոլետարիատը, որը մի շարք երկրներում բարձրացավ մինչև մասսաների քաղաքական առաջնորդի աստիճանին։ Արևելքի երկրներում կոմունիստական պարտիաների առաջանալը նրանց տնտեսական ու քաղաքական զարգացման օրինաչափ հետևանքն էր։ Դրա հետ մեկտեղ այդ երևույթում առանձնապես ցայտուն արտահայտվեց Հոկտեմբերի ու նրա առաջնորդ Լենինի գաղափարների ազդեցությունը։ Մեծ առաջնորդի ցուցումները դարձան Արևելքի կոմունիստների գործունեության ծրագիրը։ Նրանք ի դեմս Լենինի գտան իրենց մեծ ուսուցչին։*

*Այս բոլորը պարզ վկայությունն էին այն բանի, որ Արևելքում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածումը, բանվորական շարժման զարգացումն ու մի շարք երկրներում կոմունիստական պարտիաների ստեղծումը հակագաղութային շարժումները բարձրացրին որակապես բոլորովին նոր, ավելի բարձր աստիճանի։ Բացահայտելով Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային նշանակությունը՝ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ գաղութային ժողովուրդների ազատագրական շարժումը հաջող ընթացք կունենա միմիայն միջազգային իմպերիալիզմի դեմ Սովետական պետության ռևոլյուցիոն պայքարի հետ անմիջական և սերտ կապի մեջ։*

*Մեր ռևոլյուցիայի ազդեցությունը հսկայական ուժով ու մեծ խորությամբ արտահայտվեց Չինաստանում։ «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հրետանային համազարկերը մեզ հասցրին մարքսիզմ-լենինիզմը,— գրում է Մաո Ցզե-դունը։— Ընթանալ ռուսների ուղիով, այդպիսին էր եզրակացությունը»։ 1917 թվականի հոկտեմբերի՝ աշխարհում սոցիալիստական առաջին պետության հիմնադրման և 1949 թվականի հոկտեմբերի՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծման միջև ընկած ժամանակաշրջանը լի է չին ժողովրդի ռևոլյուցիոն աննահանջ ելույթներով։ Չինական ժողովրդական ռևոլյուցիան Մեծ Հոկտեմբերի շարունակությունը հանդիսացավ, նրանից հետո ամենախոշոր իրադարձությունը, որը ևս մեկ ուժեղ հարված հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմին և հսկայական ազդեցություն գործեց Արևելքի երկրներում ռևոլյուցիոն շարժման զարգացման ու համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա։*



*Իրականացավ կանխատեսությունը մեծ Լենինի, որը գրում էր, թե Չինաստանն արթնանում է և հաստատ վստահություն էր հայտնում, որ չին ժողովուրդը հաղթանակ կտանի իմպերիալիստական գիշատիչների և ֆեոդալիզմի դեմ։ Չինական ռևոլյուցիայի հաղթանակը լենինիզմի հաղթանակը հանդիսացավ։ Սոցիալիզմի կառուցման գործում ազատ Չինաստանի աննախընթաց հաջողություններն այսօր հիացնում են աշխարհի բոլոր առաջադեմ մարդկանց, հսկայական ձգողական ուժ ծառայում Արևելքի բոլոր ժողովուրդների համար։ Սովետա-չինական կենարար բարեկամությունը հանդիսանում է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հուսալի պատվարը։ Այդ անխախտ դաշինքը լենինյան սկզբունքների վրա հիմնված պրոլետարական ինտերնացիոնալիզմի, եղբայրական համագործակցության վառ օրինակ է։*

*Չինաստանի, ինչպես նաև Մոնղոլիայի, ԿԺԴՌ-ի, ՎԴՌ-ի ժողովուրդների հաղթանակները, որ նրանք ձեռք են բերել մարքսիստական-լենինյան պարտիաների ղեկավարությամբ, արդյունք են այն բանի, որ նրանք միշտ հետևում են Իլյիչի պատգամներին։ Այդ երկրների սոցիալիստական պրակտիկան ամբողջապես հաստատում է լենինյան այն միտքը, որ հետամնաց Արևելքի երկրները սոցիալիստական պետության առկայության պայմաններում, նրա եղբայրական ու նյութական օգնությամբ կարող են խուսափել զարգացման կապիտալիստական ուղուց և անմիջական անցում կատարել դեպի սոցիալիզմ։ Արևելքի ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաները լայնորեն օգտագործում են մեր ռևոլյուցիայի ընթացքում մշակված և սովետական երկրի զարգացման փորձով ստուգված հիմնական սկզբունքները։ Այդ երկրներում սոցիալիստական շինարարությունը հաստատում է Լենինի այն ցուցումը, որ «մեր ռևոլյուցիայի մի քանի հիմնական գծերն ունեն ո՛չ թե տեղական, ո՛չ թե ազգային առանձնահատուկ, ո՛չ թե միայն ռուսական, այլ միջազգային նշանակություն» (Երկեր, հ. 31, էջ 5)։*

***

*Լենինը բազմիցս նշել է, որ սոցիալիստական երկրների առկայության պայմաններում Արևելքի դարավոր քնից արթնացած ժողովուրդները, ազատագրվելով գաղութային տիրապետության ճիրաններից, կգտնեն առաջադիմության և սոցիալական զարգացման իրենց նոր ձևերն ու ուղիները։ Այս տեսանկյունից պետք է հասկանալ այն խոր փոփոխությունները, որ վերջին մեկ և կես տասնամյակում տեղի են ունեցել Ասիայի և Աֆրիկայի երկրներում՝ Հնդկաստանում, Ինդոնեզիայում, Բիրմայում, արաբական երկրներում և այլուր։ Այդ երկրների ժողովուրդները, թեև ոչ բանվոր դասակարգի ու նրա պարտիաների ղեկավարությամբ, բայց նրանց անմիջական ու վճռական մասնակցությամբ դեն են շպրտել գաղութային կապանքները, ստեղծել են իրենց անկախ ռեսպուբլիկաները և կանգնել ինքնուրույն զարգացման ուղու վրա։ Լիակատար անկախության նվաճում, սեփական բնական հարստությունների օգտագործման իրավունք, բնակչության կենսամակարդակի բարձրացում և, որ ամենակարևորն է, օտարերկրյա ամեն մի ռազմա-քաղաքական հսկողության,*

ռազմական բլոկների մերժում և անկախ արտաքին քաղաքականության իրա-
գործում. ահա ինքնուրույն զարգացման ուղի դուրս եկած Արևելքի երկրների
քաղաքականության հիմքում ընկած գլխավոր մոտիվները։

Մեր աչքերի առաջ ծնվում է նոր Արևելքը, որի ժողովուրդներն իրենց
բախտը վերցնում են սեփական ձեռքը, արթնանում ու ներքաշվում են քաղա-
քական ակտիվ կյանքի մեջ։ Պատմության գիրկն են անցնում թախծի ու տըխ-
րության ժամանակներն Արևելքում. սկսվել է ճնշված ժողովուրդների այգա-
բացը։ Հաստատվում են խոսքերը Մեծ Լենինի, որ ազդարարում էր 1919 թվա-
կանին. «Արևելքի արթնացման շրջանից հետո արդի ռևոլյուցիայի մեջ մոտե-
նում է այն շրջանը, երբ Արևելքի բոլոր ժողովուրդները կմասնակցեն ամբողջ
աշխարհի բախտի լուծմանը, որ միայն հարստացման օբյեկտ չլինեն։ Արևել-
քի ժողովուրդներն արթնանում են այն բանի համար, որպեսզի պրակտիկորեն
գործեն և որպեսզի ամեն մի ժողովուրդ վճռի ամբողջ մարդկության բախտի
հարցը» (Երկեր, հ. 30, էջ 186—187)։

Գաղութային լծից ազատագրված Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի,
Գանայի, Գվինեայի, արաբական երկրների և այլ պետությունների հասարա-
կական և քաղաքական կարգը տարբեր է սոցիալիստական երկրներում հաղ-
թանակած իրավակարգից։ Սակայն որքան էլ մեծ լինեն այդ տարբերություն-
ները, գաղութային լուծը թոթափած երկրները այլևս իմպերիալիզմի ռեզերվը
չեն, այլ, ընդհակառակը, վերածվել են ակտիվ ուժի, որը նպաստում է մարդ-
կությանը՝ շարժվելու առաջադիմության մայր ուղիով։

Այս տեսակետից շատ ընդհանուր շահեր ունեն թե՛ սոցիալիզմի լագերի և
թե՛ գաղութային լծից ազատված և անկախություն նվաճած երկրները։ Դա ա-
ռաջին հերթին խաղաղությունն է, պայքարը պատերազմներ թույլ չտալու, ա-
ռաջադիմության և ժողովրդի բարօրությունն ապահովելու համար։ «Մեր ժո-
ղովուրդներն ուս-ուսի տված հանդես են գալիս ագրեսիվ բլոկների դեմ, լինեն
դրանք ՆԱՏՕ, ՍԵԱՏՕ թե ՍԵՆՏՕ, որոնց գործունեությունն աշխարհում լարվա-
ծության գլխավոր աղբյուրներից մեկն է,— ասել է ընկ. Ն. Ս. Խրուշչովը Ին-
դոնեզիայի Սուրաբայա քաղաքի միտինգում ունեցած իր ելույթում։— Մենք
միասին հանդես ենք գալիս հանուն գաղութատիրության վերջնական վերաց-
ման, միասին պահանջում ենք արգելել ատոմային ու ջերմամիջուկային զեն-
քը և դադարեցնել նրա փորձարկումները, միասին հանդես ենք գալիս բոլոր
վիճելի միջազգային պրոբլեմները խաղաղ միջոցներով, բանակցությունների
ճանապարհով լուծելու օգտին»։ Իմպերիալիզմի տիրապետությունից տակավին
նոր ազատված ժողովուրդները լավ են գիտակցում, որ տնտեսական ու կուլ-
տուրական հետամնացության վերացման համար անհրաժեշտ է անխոնջ պայ-
քար մղել խաղաղության, միջազգային համագործակցության և խաղաղ գո-
յակցության համար։ Ասիայի ու Աֆրիկայի երկրների ներկայացուցիչների
բազմաթիվ կոնֆերանսներն ու կազմակերպությունները, նրանց ակտիվացող
գործունեությունը ցուցադրում են, որ ոչ միայն գաղութակալության դեմ մըղ-
վող ընդհանուր պայքարում Արևելքն աննահանջ է, այլև այն, որ ամբողջ աշ-
խարհում խաղաղության պահպանման գործում նրա ժողովուրդները օրավուր
դառնում են նոր քաղաքական հզոր ուժ միջազգային ասպարեզում։

Բայց գաղութակալությունն իր դիրքերն առանց մարտի չի զիջում։ Թեև
ուժերի փոխհարաբերությունը փոխվել է ի վնաս գաղութարարների, նրանք չեն



ցանկանում հաշտվել գաղութային սիստեմի փլուզման փաստի հետ, մանև-
րում են, գաղութային շահագործման նոր ձևեր են կիրառում։ Արևելքն այժմ էլ
շարունակում է մնալ կատաղի պայքարի ասպարեզ։ Դա է ապացուցում թե-
կուզ հենց այն փաստը, որ վերջին ժամանակների միջազգային ճգնաժամերի
մեծ մասը տեղի է ունեցել Արևելքում՝ Ասիայի ու Աֆրիկայի երկրներում։
Գաղութային լուծը թոթափած Արևելքի երկրները դարձել են պատերազմի և
խաղաղության ուժերի միջև ծավալվող պայքարի կարևորագույն ասպարեզ։
Աշխարհի համընդհանուր խաղաղության բախտը, ամբողջ մարդկության ապա-
գան շատ բանով կախված է այդ պայքարի ելքից։ Սակայն անվերադարձ կեր-
պով անցյալի գիրկն է անցել այն ժամանակը, երբ գաղութարարներն իրենց
հաջողությամբ ուղղություն էին տալիս համաշխարհային իրադարձություն-
ներին։ Երեկվա գաղութացված ու հաշիշից թմրած Արևելքն այսօր այլևս չի
ուզում ապրել նախկին կյանքով։ Դրությունն արմատապես փոխվել է։ Արևելքի
ժողովուրդների ազատագրական պայքարը շատ գեղեցիկ երգած հայ անվանի
բանաստեղծ Ավետիք Իսահակյանի խոսքերով ասած

«Արևելքը հուր է հիմա, հին ու հինա չի,
Արևելքը վրեժի հորձանք է,
Այժմ իշխողի դեմ փորձանք է»։

Գաղութարարների ոտնձգություններին հակահարված են տալիս խաղա-
ղության հզոր ուժերը Սովետական Միության գլխավորությամբ։ Խաղաղության
և ժողովուրդների բարեկամության սովետական քաղաքականությունը վայե-
լում է ամբողջ Արևելքի միլիոնավոր զանգվածների սերն ու համակրանքը։ Այդ
մասին է վկայում այն լայն ու ջերմ արձագանքը, որ գտավ մեր երկրի ղեկա-
վարի խաղաղության և բարեկամության միսիան Ինդոնեզիա, Հնդկաստան,
Բիրմա և Աֆղանստան։ Ասիայի և Աֆրիկայի խաղաղասեր երկրները ողջու-
նեցին ընդհանուր զինաթափման մասին Սովետական կառավարության առա-
ջարկը։ ՍՍՌՄ-ը բազմակողմանի օգնություն է ցույց տալիս գաղութային լու-
ծը թոթափած երկրներին թե՛ միջազգային ասպարեզում և թե՛ այդ երկրների
անկախ տնտեսական զարգացման գործում։

Իմպերիալիզմի ճնշումից ազատագրվելու համար Արևելքի ժողովուրդների
պայքարը միահյուսվում է սոցիալիզմի, կոմունիզմի հիմքի վրա աշխարհի վե-
րափոխման համար առաջավոր մարդկության պայքարի հետ։ Հաստատվում են
Վ. Ի. Լենինի խորը մարգարեական խոսքերն այն մասին, որ «Պայքարի ելքը,
վերջին հաշվով, կախված է նրանից, որ Ռուսաստանը, Հնդկաստանը, Չինաս-
տանը և այլն կազմում են բնակչության հսկայական մեծամասնություն։ Իսկ
բնակչության հենց այդ մեծամասնությունն է, որ վերջին տարիների ընթաց-
քում արտասովոր արագությամբ ներքաշվում է իր ազատագրման պայքարի
մեջ, այնպես, որ այդ իմաստով կասկածի նշույլ անգամ չի կարող լինել, թե
ինչպիսի վերջնական լուծում կունենա համաշխարհային պայքարը։ Այդ իմաս-
տով սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովված է միանգամայն և
անպայման» (Երկեր, հ. 33, էջ 597)։

Համաշխարհային պատմության յուրաքանչյուր օր գալիս է ապացուցելու
Լենինի ուսմունքի կենսահաստատությունը, նրա անմահությունը։ Լենինիզմը
դարձել է դարի առաջատար գաղափարախոսությունը, ամբողջ աշխարհի աշ-
խատավորների աշխատանքի ու պայքարի մարտական դրոշը։

---

# ԵՐԱԽՏԱԳԵՏ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

**Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**

*Լենին...*

*Աշխարհի բոլոր մասերում, բոլոր լեզուներով հնչում է այս նվիրական, լուսապայծառ և հավերժ կենդանի անունը։ Լենինը — դա համաշխարհային պրոլետարիատի ռևոլյուցիոն սխրանքների ու գործերի անմահությունն է, մարդկության վառ երազանքների և իղձերի արտահայտիչը, կոմունիզմի համար մղվող պայքարի հաղթական դրոշը։ Խոսքերով անհնար է արտահայտել այն ամեն հերոսականն ու վեհը, որ իր մեջ ամփոփել է Լենինը՝ մարդկության մեծագույն հանճարը, պրոլետարական ռևոլյուցիայի խիզախ ստրատեգը, Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության մեծ հիմնադիրը։ Լինելով աշխատավոր մասսաների իսկական ժողովրդական մի այնպիսի առաջնորդ, որպիսին աշխարհը դեռ չի տեսել, Իլյիչը իր մեջ հիանալի կերպով մարմնավորում էր այն ամենը, ինչ պրոլետարիատի մեջ մեծ է և հերոսական։ «Անվեհեր միտքը, երկաթե, աննկուն, համառ, ամեն ինչ հաղթահարող կամքը, սրբազան ատելությունը, մահու չափ ատելությունը դեպի ստրկությունն ու ճնշումը, լեռներ շարժող ռևոլյուցիոն կիրքը, անսահման հավատը մասսաների ստեղծագործական ուժերի նկատմամբ, հսկայական կազմակերպական հանճարը — այս բոլորը իր հոյակապ մարմնացումը գտավ Լենինի մեջ, որի անունը դարձել է նոր աշխարհի սիմվոլը՝ արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս»,— այսպես է ասված պարտիայի Կենտրոնական Կոմիտեի կողմից Վ. Ի. Լենինի մահվան առթիվ «Պարտիային։ Բոլոր աշխատավորներին» ուղղված դիմումի մեջ։*

*Վ. Ի. Լենինն աշխատավոր մարդկության, այդ թվում՝ հայ ժողովրդի մեծ ազատարարն է։*

## ԱՄԵՆԱՄԱՐԴԿԱՅԻՆ ՄԱՐԴԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ

*Մարդկային ոչ մի բան խորթ չէր գիտության մեծագույն կորիֆեյ և պրոլետարական ռևոլյուցիայի հանճար Վ. Ի. Լենինին։ Ունենալով մեծ սիրտ ու հոգի, նա օժտված էր բնավորության գեղեցիկ, ազնիվ բարեմասնություններով՝ զարմանալի ճշտապահությամբ, խոր մարդասիրությամբ, չտեսնված աշխատասիրությամբ, ընկերասիրությամբ, հավատարմությամբ, անկեղծությամբ, մարդկանց նկատմամբ ունեցած անսահման հոգատարությամբ։ Նրա բնավորությունը զարմանահրաշ կերպով ամբողջական ու ներդաշնակ էր։*



*Ասում են, թե ծիծաղի մեջ երևում է մարդու հոգին։ Լենինին մոտիկից ճանաչողներն իրենց հիշողություններում պատմում են, որ դժվար է պատկերացնել մեկ ուրիշ մարդու, որ կարողանար այնպես վարակիչ ծիծաղել, ինչպես ծիծաղում էր մեր Իլյիչը։ Նա հաճախ ծիծաղում էր մինչև արտասվելու չափ, իր աշխույժ ծիծաղով վարակելով զրուցակիցներին։ Այդ ծիծաղը կարծես թե լիովին բացահայտում էր լենինյան բնավորությունը, նրա առողջ հոգեկան անեզր աշխարհը։ Վ. Ի. Լենինից ավելի սրտացավ մարդ մեզանից ոչ ոք չի տեսել,— ասել է Ս. Մ. Կիրովը։ Իր տիտանական ուժով Իլյիչը գտնում էր յուրաքանչյուրի սրտի բանալին։ Ոչ ոք մարդկությանն այնպես չգիտեր, ինչպես Լենինը։ Նա իր մեջ մարմնավորում էր աշխատավոր միլիոնների կամքը, խորապես հավատում նրանց ստեղծագործական եռանդին։ Մարդկային պատմությանը հայտնի չէ մի ուրիշ ռևոլյուցիոներ, որն այնպես խոր հավատար պրոլետարիատի ստեղծագործական ուժերին, ինչպես Վ. Ի. Լենինը։*

*«Նա իսկապես ռևոլյուցիոն պայթյունների հանճարն էր և ռևոլյուցիոն ղեկավարման մեծագույն վարպետը»,— ասել է Ի. Վ. Ստալինը։*

*Ժողովուրդը գիտեր Վ. Ի. Լենինի սերը իր նկատմամբ և անսահման հավատ էր ընծայում նրան։ Բանվորներն ասում էին. «Լենինը — այդ մենք ենք»։ Վ. Ի. Լենինն աշխատավոր մարդկության հայրը և ուսուցիչն է։ Նա աշխարհով անցած բոլոր մարդկանցից ամենամարդկայինն է։*

## ՄԵԾ ԲԱՐԵԿԱՄՆ ՈՒ ԽՈՐՀՐԴԱՏՈՒՆ

**«Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն — և մենք շուռ կտանք Ռուսաստանը»,—** *XX դարի սկզբին հայտարարեց Վ. Ի. Լենինը։ Հենց այդ կազմակերպության ստեղծմանն էլ Իլյիչը նվիրեց իր ամբողջ բազմաբովանդակ կյանքը։ Վ. Ի. Լենինի հիմնադրած Կոմունիստական պարտիան մեր դարաշրջանի միտքն է, պատիվն ու խիղճը, սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող մեծ ուժը.*

Պարտիա և Լենին
Երկվորյակ եղբայրներ,
Մայր պատմության համար
Ո՞րն է արժեքավոր ավելի,
Մենք ասում ենք Լենին,
Եվ պարտիա ենք հասկանում էլի,
Ասում ենք պարտիա
Հասկանում ենք Լենին:

*Այսպես է գրել մեր դարաշրջանի տաղանդավոր պոետ Վլ. Մայակովսկին։*

*Մեր Հայրենիքի ամեն մի ժողովուրդ ունի սխրանքներով լի իր ռևոլյուցիոն տրադիցիաները, որոնք սերտորեն կապված են Կոմունիստական պարտիայի գործունեության, մեծ Լենինի և նրա բյուրեղյա աշակերտների անվան հետ։ Պրոլետարական ռևոլյուցիայի իրականացման, մեծ Հոկտեմբերի հաղթանակի և նրա նվաճումների ամրապնդման համար Վ. Ի. Լենինի գլխավորությամբ մղած պայքարի բովում կոփվել են պրոլետարիատի ազատագրության գործին անսահմանորեն նվիրված, կայուն ու կարգապահ, աշխատավոր*

մասսաների հետ բյուր թելերով կապված հազարավոր անձնուրաց ռևոլյուցիոներներ։ Դրանք մեր երկրի տարբեր ազգերի և ժողովուրդների ներկայացուցիչներն են, լենինյան հին գվարդիայի անխոնջ մարտիկներ, որոնց անզուգական կյանքը սերտորեն կապված է Լենինի և նրա վսեմ ուսմունքի՝ լենինիզմի բախտի հետ։ Այդպիսին էին պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներ՝ Ի. Բաբուշկինը, Ն. Բաումանը, Մ. Կալինինը, Ն. Կրուպսկայան, Գ. Պետրովսկին, Ի. Ստալինը, Յա. Սվերդլովը, Ֆ. Ձերժինսկին, Վ. Կուռնատովսկին, Ֆ. Սերգեևը (Արտյոմ), Մ. Ազիզբեկովը, Ա. Ջափարիձեն, Մ. Ցխակայան, Գ. Օրջոնիկիձեն, Ս. Կիրովը, Պ. Ստուչկան, Վ. Միցկյավիչյուս-Կապսուկասը, Ու. Բույնակսկին և շատ ուրիշներ։ Լենինյան հին գվարդիայի պայծառ համաստեղության մեջ իրենց տեղն ունեն նաև հայ ժողովրդի արժանավոր զավակները, որոնք, հավատարիմ մնալով պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշին, անցնելով լենինյան դպրոցը, իրենց կյանքով ու գործերով զարդարել են մեր Հայրենիքի պատմության էջերը։

Թերթելով մեծ Լենինի կյանքի հերոսական էպոպեան, մենք տարբեր ազգերի հազարավոր զավակների հետ միասին հանդիպում ենք Ի. Լալայանցի, Բ. Կնունյանցի, Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ս. Տեր-Պետրոսյանի — Կամո, Վ. Կասպարովի, Ս. Կասյանի, Ս. Տեր-Գաբրիելյանի, Ալ. Մյասնիկյանի, Վ. Ավանեսովի, Վ. Տերյանի... և տասնյակ ուրիշ հայ ականավոր մարքսիստների անունների, որոնք, իրենց քաղաքական մկրտությունը ստանալով ռուսական ռևոլյուցիոն ավազանում, Իլյիչի գլխավորությամբ պայքարել են նոր կյանքի համար։ Նրանք մեծ Հոկտեմբերի անվեհեր մարտիկներն են։ Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների և բոլշևիկյան կազմակերպությունների պատմությունը, հայ մարքսիստների գործունեությունը սերտորեն կապված է Վ. Ի. Լենինի անվան հետ։ Իլյիչը հայ մարքսիստների, քաղաքական գործիչների մեծ բարեկամն ու դաստիարակն է, նրանց խորհրդատուն։

Մենք անչափ ուրախությամբ ենք կարդում, որ Ռուսաստանում ռևոլյուցիոն մարքսիստական խմբակների առաջացման արշալույսին, Վ. Ի. Լենինի և Ա. Սկլյարենկոյի հետ միասին գործել է նաև Ի. Լալայանցը, որ 1893 թվականին նրանք են կազմել Սամարայի մարքսիստական «եռյակը»։
Ինչպե՛ս չհպարտանալ, երբ Ռուսաստանի և միջազգային բանվորական շարժման պատմության շրջադարձային պահին, ՌՍԴԲՊ II համագումարում Բ. Կնունյանցը (Ռադին, Ռուբեն, Ռուսով) հավատարիմ մնաց լենինիզմին։ Նա Լենինի և լենինյանների հետ միասին մերկացրեց պարտիայի ներսում նոր ձևավորված մենշևիկյան հոսանքը, բոլոր տեսակի և գույնի օպորտունիստներին, նացիոնալիստներին։ Բոլշևիզմի տարեգրության մեջ այդ շրջանը ամենահերոսական էջերից մեկն է։ Վ. Ի. Լենինն իր «Մի քայլ առաջ, երկու քայլ հետ» նշանավոր աշխատության մեջ (1904 թ. մայիս, ժնև) դատապարտելով մենշևիկների կազմալուծիչ, պառակտիչ գործունեությունը, նրանց օպորտունիզմը, համակողմանիորեն շարադրելով և հիմնավորելով մարքսիստական նոր տիպի պարտիայի կազմակերպական հիմունքները, գրել է.

«Մենք խորհուրդ կտայինք բոլորին, ովքեր ուզում են ինքնուրույնորեն վերլուծել պարտիական պառակտման պատճառները և գտնել նրա արմատները համագումարում, կարդալ և վերստին կարդալ ընկ. Ռուսովի ճառը...» (Երկեր, հ. 7, էջ 399)։



Վ. Ի. Լենինի այս խոսքերը սպառիչ կերպով բնութագրում են Բ. Կնունյանցին։

Մեծ Լենինի գաղափարներն էին ոգեշնչել Բ. Կնունյանցին, երբ նա 1905 թ. ցարական դատարանում անողոքաբար մերկացրեց ցարիզմի ռեակցիոն էությունն ու նենգամտությունը, ռևոլյուցիոներներին հատուկ խիզախությամբ հայտարարեց. «Դատեցեք, պարոնայք դատավորներ, իսկ մեզ, ձեզ հետ, կդատի ռևոլյուցիան»։

Առանց հուզմունքի դժվար է կարդալ Վ. Ի. Լենինի և նրա մերձավոր զինակից Ստ. Շահումյանի սրտառուչ մտերմության և նրանց մեծ բարեկամության նվիրված էջերը։ 1903 թվականի գարնանը (գուցե և ավելի շուտ՝ 1902 թվականին) ժնևում Վ. Ի. Լենինի հետ ունեցած Շահումյանի առաջին անձնական ծանոթությունը միանգամից վերածվեց սերտ մտերմության ու բարեկամության, այնպես, որ Շահումյանը Վ. Ի. Լենինի և նրա ընտանիքի համար շուտով դարձավ «Ստեփան»։ Տակավին 1903 թվականին Շահումյանը, Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ գալով Կովկաս, ՌՍԴԲՊ Կովկասյան Միութենական Կոմիտեի նիստում Մ. Ցխակայային ասաց.

«Ընկեր Միխա, ես չափազանց գոհ եմ, որ դու ինձ օգտակար ես համարում այստեղի աշխատանքի համար։ Կաշխատեմ այդ արդարացնել շուտով։ Շատ շուտով ես կմիանամ ձեզ։ Միայն առաջ պիտի վերադառնամ Իլյիչի մոտ. չէ՞ որ պարտավոր եմ նրան էլ իրազեկ դարձնել, թե ինչպիսի աշխատանք է եռում այստեղ ձեզ մոտ։ Նա ամբողջապես կթևավորվի, որպես լեռնային արծիվ և կճախրի ձեզ վրա, Կովկասի վրա, ապրելով և ոգևորվելով ձեր անձնվեր աշխատանքով այսպիսի դժվար պայմաններում»։

Շահումյանը պատկանում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների լենինյան հին գվարդիային, Ռուսաստանի բանվորական շարժման այն առաջնորդների համաստեղությանը, որոնց մասին Վ. Ի. Լենինն ասել է. «Առանց մի տասնյակ տաղանդավոր (իսկ տաղանդները հարյուրներով չեն ծնվում), փորձված, պրոֆեսիոնալ կերպով պատրաստված և երկարատև դպրոցում սովորած առաջնորդների անհնարին է ժամանակակից հասարակության մեջ որևէ դասակարգի տոկուն պայքարը» (Երկեր, հ. 5, էջ 614)։ Ստ. Շահումյանն օժտված էր ռևոլյուցիոն վիթխարի էրուդիցիայով; ուներ մարքսիստական մտքի պայծառություն, մի բան, որ բարձր էր գնահատում Վ. Ի. Լենինը։ «Իլյիչը 1917 թվականին ուրախ էր տեսնվելու Ստեփանի հետ,— գրել է Ն. Կրուպսկայան,— և խոսելու ընդհուպ այն բոլոր խնդիրների մասին, որոնք այնպես հատու կերպով ծառացել էին բոլշևիկների առաջ»։ Իլյիչը հիացած էր Շահումյանի և նրա ընկերների Կովկասում վարած հաստատակամ, վճռական քաղաքականությամբ և լիովին վստահում էր իր Շահումյանին։ Իսկ Շահումյանը մինչև իր կյանքի վերջը մնաց հավատարիմ լենինիզմին, 1918 թվականի սեպտեմբերի 20-ին Անդրկասպյան ավազուտներում իր 25 խիզախ ընկերների հետ միասին գլուխը բարձր պահած մահից առաջ բացականչելով. «Կեցցե կոմունիզմը»։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի նախօրյակին սկսելով իր քաղաքական գործունեությունը, բոցաշունչ ռևոլյուցիոներ Ս. Սպանդարյանը 1912 թ. Պրագայի կոնֆերանսում անձամբ հանդիպեց Իլյիչին, այնուհետև Վ. Ի. Լենինի և Կենտկոմի մյուս անդամների հետ մեկնեց Լայպցիգ, Բեռլին և ապա Փարիզ։ Իլյիչն անջնջելի տպավորություն թողեց Ս. Սպանդարյանի վրա։ Վերադառ-

նալով Ռուսաստան, Ս. Սպանդարյանը լայն գործունեություն ծավալեց Ռիգայում, Պետերբուրգում, Մոսկվայում, Բաքվում, Թիֆլիսում՝ պարտիական կազմակերպություններին հասցնելով Պրագայի կոնֆերանսի որոշումները: Սակայն ցարական գործակալների կողմից նա շուտով ձերբակալվում է և աքսորվում հեռու Սիբիր՝ Կրասնոյարսկ: Հաղթահարելով բոլոր դժվարությունները, Ս. Սպանդարյանը նամակագրական կապ է հաստատում Իլյիչի հետ: Մոնաստիրսկոե գյուղում նրա հասցեով էին ստացվում քաղաքական աքսորականներին Վ. Ի. Լենինի ուղարկած նամակները: 1914 թվականի մարտի 28-ին Վ. Ի. Լենինին գրած նամակում Ս. Սպանդարյանը հաստատ հույս է հայտնում, «որ «օրը» հեռու չէ և որ մենք դեռ կպատրաստվենք գործի համար»: 1915 թվականի փետրվարի 27-ին Ս. Սպանդարյանը Մոնաստիրսկոե գյուղից Ի. Վ. Ստալինի հետ միասին նամակ է գրում Վ. Ի. Լենինին: Նամակը սկսեց Ս. Սպանդարյանը.

«Բարև Ձեզ, թանկագին Վլադիմիր Իլյիչ.

Հիմա Իոսիֆը հյուր է ինձ մոտ, և ուզեցինք մեր ողջույնը ուղարկել Ձեզ: Ինչպե՞ս եք ապրում: Ի՞նչ եք անում, ինչպե՞ս է Ձեր տրամադրությունը: Գրեցե՛ք ինչ որ կարող եք: Ծարավի ենք կենդանի խոսքի:

Կսպասենք Ձեր նամակին:

Ողջույն Նադեժդա Կոնստանտինովնային... և ընդհանրապես բոլոր բարեկամներին»:

Ինչպես միշտ, այնպես էլ այդ ժամանակ Ս. Սպանդարյանն ու իր ընկերները ծարավի էին Իլյիչի խոսքին: Վ. Ի. Լենինին ուղարկած Սպանդարյանի մյուս նամակներում արտահայտված է ռևոլյուցիոն լավատեսությունը: 1916 թվականի մայիսի 28-ի նամակում նա գրել է. «Թանկագի՛ն ընկերներ: Ձեզ ամենաբոցավառ ողջույն ենք հղում մեր սառը երկրներից: Մենք հոգով արի ենք և նույնն ենք ցանկանում Ձեզ»:

Ս. Սպանդարյանին բախտ չվիճակվեց նորից տեսնել Վ. Ի. Լենինին: Սակայն Իլյիչը իր մեծ գաղափարներով հզոր արևի պես ջերմացնում էր ռևոլյուցիայի մարտիկներին, այդ թվում՝ բևեռային ցուրտ երկրում գտնվող քաղաքական աքսորականներին: Բնորոշ է այն փաստը, որ ցարական ժանդարմերիան մինչև վերջ էլ սարսափով էր իր հաղորդագրություններում մեջ արձանագրում, թե Սպանդարյանը «թունդ լենինյան» է, իսկ մենշևիկները հաճախ էին ասում. «եթե փորփրես Սպանդարյանի ուղեղը, այնտեղ կգտնես Լենինին»:

Այո, Ս. Սպանդարյանը հավատարիմ լենինյան էր, մահից առաջ արտասանած նրա վերջին խոսքերն էին. «Կանգնեցեք Լենինի դրոշի տակ»:

Կա՞ արդյոք որևէ մեկը, որ չհուզվի ռևոլյուցիայի լեգենդար հերոս Կամոյի սխրագործություններով: Անկետային այն հարցին, թե ո՞րն է ձեր սոցիալական դրությունը և մասնագիտությունը, Կամոն պատասխանել է «ռևոլյուցիոներ»: Վլադիմիր Իլյիչը, անձամբ ճանաչելով Կամոյին, որպես բացառիկ նվիրված, խիզախ և եռանդուն մարդու, անսահման հոգատարություն էր տածում նրա նկատմամբ, օգնում և դաստիարակում նրան:

Վ. Ի. Լենինի ստորագրությամբ 1919 թ. սեպտեմբերի 3-ին Կամոյին տրված վկայականում ասված է.

«Սույնը ներկայացնող ընկ. Կ. Պետրովին, որն ունի 483 տոմսը (մինչև 1919 թ. հոկտեմբերի 1-ը) ԿԳԿ շենքը մտնելու համար և որը աշխատում է ԿԳԿ բաժիններից մեկում, ճանաչում եմ անձամբ:



Խնդրում եմ բոլոր սովետական հիմնարկներին, պինվորական և այլ իշխանություններին լիակատար վստահություն և ամեն տեսակ աջակցություն ցույց տալ ընկ. Պետրովին:

Պաշտպանության Խորհրդի նախագահ Վ. ՈՒԼՅԱՆՈՎ (ԼԵՆԻՆ)»:

Ինչպե՛ս ակնածանքով չհիշել այն նշանավոր դեպքը, երբ Վ. Ի. Լենինը նկատելով, որ Կամոն Ֆրանսիայից Բելգիա մեկնելու ճանապարհին վերարկու չունենալու պատճառով կարող է մրսել, նրան է նվիրում իր մոր թանկագին նվերը, իր փափուկ թիկնոցը:

Ինչպիսի՜ քաջագործություններ և խիզախություններ ասես, որ չի արել Կամոն, միշտ իր սրտում ունենալով Իլյիչի նվիրական անունը: Կամոն ամենից շատ և ամենից շուտ իր սիրտը բացում էր Իլյիչի մոտ, նրա հետ խորհրդակցում իր նոր շշմեցուցիչ պլանների մասին, նրանից ստանում իմաստուն խորհուրդներ: 1921 թվականի հունիսին Կամոն գրել է.

«Շատ հարգելի և թանկագին Վլադիմիր Իլյիչ.

Ռուսաստանի Կոմունիստական պարտիայի կոնֆերանսի ժամանակ ես Ձեզ հաղորդեցի իմ ցանկությունը՝ խոսելու Ձեզ հետ իմ նոր շշմեցուցիչ ծրագրերի մասին: Խոսակցությունը կարող է տեղի ունենալ Ձեր զբոսանքի, կամ հանգստի ժամանակ և բնավ չի հոգնեցնի Ձեզ: Կարող է պատահել, որ դուք իմ մտքերը շատ արժեքավոր համարեք և նրանց իրականացումը շատ կարևոր է ներկա մոմենտի համար, կամ էլ թե չէ, դուք դրանք կհամարեք շատ զվարճալի և ամբողջ հոգով կծիծաղեք, ինչպես որ դա հատուկ է Ձեզ: Ես կցանկանայի, որ Դուք լսեք ինձ մինչև Կոմինտերնի կոնգրեսի սկիզբը, կամ նրա սկզբում:

Ձեզ նվիրված Կամո»:

Վ. Ի. Լենինը Կամոյի այդ նամակի վրա իրեն հատուկ լակոնիկ ոճով արել է այսպիսի մակագրություն՝ «Կամո: Հիշեցնել ինձ»:

Ինչպիսի՜ գաղտնիքներ ասես, որ Իլյիչը չի վստահել Վլադիսլավ Կասպարովին (Գասպարյանին), արտասահմանից նրա միջոցով կապ պահպանելով Ռուսաստանի բոլշևիկյան կազմակերպությունների հետ: Իլյիչի հանձնարարությամբ նա եռանդուն կերպով նամակներ, ռևոլյուցիոն գրականություն էր ուղարկում ՌՍԴԲՊ տեղական կոմիտեներին, որոնք պարունակում էին լենինյան ցուցումները՝ ռևոլյուցիոն տվյալ իրադարձության մեջ ճիշտ կողմնորոշվելու, աշխատավոր մասսաների պայքարը հմտորեն կազմակերպելու մասին: Իլյիչը լավ գիտեր նրան: Սլավայի մահից տարիներ հետո, նրա քույրը դիմելով Վ. Ի. Լենինին արժանանում է նրա ջերմ և զգայուն վերաբերմունքին: Իլյիչը ստանալով Ն. Մ. Պոպովայի (Կասպարովա) դիմումը, այն ուղարկել է պարտիայի անձնական կազմը ստուգող կենտրոնական հանձնաժողովին՝ այսպիսի գրությամբ.

«Ընկ. Զալուցկուն և ընկ. Սոլցին

Ինձ դիմեց ընկ. Կասպարովա-Պոպովան (հասցե՝ Սովետների 3 տուն, բն. 63, հեռ. 58—97): Նա գրում է, որ կատարյալ հուսահատության մեջ է պարտիայից իրենց վտարելու կապակցությամբ և խնդրում է ինձ միջնորդելու պարտիայի զտման Կենտրոնական հանձնաժողովի առաջ, վկայակոչելով իր եղբայր Սլավա Կասպարովին և իր ամուսին Պոպովին, որը ընկ. Սվերդլովի կողմից ուղարկվել էր Հեռավոր Արևելք և այնտեղ զոհվել: Նա գրում է, թե իր եղբոր հետ միասին 14 տարեկան հասակից սկսել է հետաքրքրվել պարտիայով և մասնակցել աշակերտական խմբակներին, իսկ արդեն 17 տարեկան հասակում մտել է պարտիայի մեջ և կատարել կուսակցական տեխնիկական աշխատանք:

Ես անձամբ այդ Կասպարովային չեմ ճանաչում կամ մոռացել եմ նրան, բայց եղբորը շատ լավ էի ճանաչում արտասահմանում, ուր նա 1905 թվականի առաջին ռևոլյուցիայից հետո էմիգրացիայի մեջ էր և բոլշևիկյան կազմակերպության շարքերում էր գտնվում, վայելում էր Կասպարովի աշխատանքին տեղյակ այն բոլոր բոլշևիկների արդարացի հար-

գանքը, որոնց ես հանդիպել եմ: Այդ Կասպարովը մահացել է Շվեյցարիայում մինչև 1917 թ. ռևոլյուցիան (ուժասպառ լինելով էմիգրանտական կյանքի ծանր պայմաններից):

Կփորձեմ տեղեկություններ հավաքել, ովքեր կարող են մոտիկից ճանաչել Կասպարովի քրոջը:

Իմ կողմից կխնդրեի պարտիայի պտման Կենտրոնական հանձնաժողովին ստուգել ընկ. Կասպարովայի գործը պարտիայից վտարելու կապակցությամբ»:

1921 թ. դեկտեմբերի 20, ժամը 20-ին. ԼԵՆԻՆ»:

(XXXVI լենինյան ժողովածու, Մ., 1959, էջ 378—379):

Ե. Մ. Պոպովան (Կասպարովա) վերականգնվեց բոլշևիկյան պարտիայի մեջ։

Կովկասի բոլշևիկները իրենց գործունեության, իրենց պլանների մասին միշտ խորհրդակցում էին Իլյիչի հետ և սպասում նրա խորհուրդներին... Վ. Ի. Լենինը իր խորհուրդներով, նամակներով և աշխատություններով թևավորում և նպատակամղում էր նրանց նոր պայքարի։

Ս. Կասյանը 1913 թվականի նոյեմբերին Կենտկոմին գրած նամակներում հանգամանորեն պատմում է Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների մասին, խնդրում Իլյիչին, որը Կովկասի բոլշևիկների մոտ մեծ հարգանք ու հեղինակություն է վայելում, օգնել ամրապնդելու բոլշևիկյան կազմակերպությունները և բարձրացնելու նրանց հեղինակությունը աշխատավոր մասսաների մեջ։

Էմիգրացիայի տարիներին՝ Ցյուրիխում Վ. Ի. Լենինը բոլշևիկ Ա. Բեկզադյանի (Յուրի) հասցեն օգտագործել է Ռուսաստանի պարտիական կազմակերպություններից նամակներ ստանալու համար։

Վ. Ի. Լենինի մանդատով էր քաղաքացիական կռիվների ծանր տարիներին Ս. Տեր-Գաբրիելյանը ռեսպուբլիկայի վառելանյութի հայթայթման գործում դրսևորում իր կազմակերպչական ունակությունները, մանդատ, որի մեջ Իլյիչը իր ձեռքով գրել էր. «Սույնը ներկայացնող ընկ. Տեր-Գաբրիելյանը միանգամայն մեր մարդն է, որի վրա մենք մեծ հույսեր ենք դնում ածուխը փոխադրելու գործում»։ Իլյիչի խորհուրդներով էին Վ. Ավանեսովն ու Վ. Տերյանը ղեկավարում Հայկական գործերի կոմիսարիատը, օգնություն կազմակերպում հայ գաղթականությանը։

Սովետական Ռուսաստանը անչափ մեծ օգնություն կազմակերպեց հայ ժողովրդին։ Ինչպե՞ս կարելի է չհիշել այն փաստը, որ 1918 թ. հունիսի 26-ին Ժողկոմսովետը Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկելով հայ գաղթականությանն անհապաղ օգնություն ցույց տալու հարցը՝ որոշել է.

«Նկատի ունենալով այն, որ գաղթականների գործերի Կենտրոնական Կոմիտեի կողմից 18 թ. հունվարի 25-ին հայ գաղթականների օգտին հատկացված 3 490 000 ռ. գումարի փողը և Ներք. գործ. ժողկոմատի (Գաղթականների գործերի բաժնի) կողմից հատկացված 2 704 789 ռ. գումարի փողը ճանապարհին գրավված են Կալեդինի և Կոռնիլովի բանդաների կողմից, ԺԿՍ-ն ուշադրության առնելով հայ գաղթականների ծայրահեղ կարիքը և գաղթականների թվի աճումը — որոշեց վերոհիշյալ գումարը (ընդամենը 6 194 798 ռ.), կրկին անգամ հատկացնել Հայկական գործերի կոմիսարիատին՝ հայ գաղթականներին անհապաղ օգնություն ցույց տալու համար:

Նշված գումարը անհապաղ փոխադրել Համառուս. ԿԳԿ դրամարկղը՝ Հայկական գործերի կոմիսարիատին:

Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ Վ. ՈՒԼՅԱՆՈՎ (Լենին)
Քարտուղար Լ. ՖՈՏԻԵՎԱ»

(ՍՄԿՊ Կենտկոմին կից ՄԼԻ-ի արխիվ, ֆ. 2, ց. 1, գ. 6410):



Մեկ հոդվածում չի սպառվի Վ. Ի. Լենինի և հայ կոմունիստների միջև եղած բարեկամական կապերի նկարագրությունը, կապեր, որոնց ընթացքում Իլյիչը հայրական հոգատարությամբ է շրջապատել իր աշակերտներին և կոփել նրանց։ Ջափազանց անկեղծ են հնչում Ալ. Մյասնիկյանի խոսքերն այն մասին, թե «Ես անչափ երջանիկ եմ և մինչև կյանքիս վերջը կհպարտանամ, որ եղել եմ Վ. Ի. Լենինի ժամանակակիցը, անձամբ ծանոթ եմ եղել, խոսել եմ հետը, սեղմել եմ նրա ձեռքը, ման եմ եկել, շրջագայել նրա հետ միասին, եղել եմ այդ հսկայի, մեր ժամանակի հանճարի հետևորդն ու փոքր աշակերտը»։

## ԽՈՀԵՐՈՎ ՈՒ ԱՄԲՈՂՋ ՍՐՏՈՎ ԼԵՆԻՆԻ ՀԵՏ

Մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդները հպարտանում են, որ ակտիվ մասնակցություն են ունեցել լենինյան բանակի սխրանքներին, մարդկության երազած լավագույն ապագայի՝ սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի ապահովմանը և ներկայումս լծվել են կոմունիզմի ծավալուն կառուցմանը։ Դրանում ամենից շատ վաստակ ունի ռուս մեծ ժողովուրդը։ Այդ ռուս բանվորներն էին, որ երբեք չընկճվելով, մի միասնական կամք դարձած՝ հայտարարում էին. «Ընկեր Լենինը մեզ տանում է դեպի կոմունիզմ... որքան էլ որ մեզ համար ծանր լինի, մենք կդիմանանք»։

Հայ ժողովուրդը, որ Սովետական Միության եղբայրական հզոր ընտանիքի իրավահավասար անդամն է, իր ազատությունն ու ազգային վերածնունդը ձեռք է բերել Կոմունիստական պարտիայի, Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ։ Հայ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ Վ. Ի. Լենինը առաջինը գծեց նրա ազատագրության միակ ճիշտ և ռևոլյուցիոն ուղին։ Կոմունիստական պարտիան, ղեկավարվելով լենինյան ցուցումներով, աշխատավոր մասսաներին պարզաբանեց, որ ճնշված ու հարստահարված ժողովուրդների բախտը, առանձնապես տանջված ու բազմաչարչար հայ ժողովրդի բախտը, սերտորեն կապված է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բախտի հետ։ Լենինյան աշխատություններում, մեր պարտիայի գաղափարական այդ հզոր գանձարանում, հայ հասարակական, քաղաքական, պարտիական գործիչների հետ Իլյիչի ունեցած զրույցներում և այլ փաստաթղթերում կարմիր թելի պես անցնում է այս ճշմարտությունը։

Վ. Ի. Լենինը հայ ժողովրդի մեծ ազատարարն ու բարեկամն է։ Երբ 1920 թվականի նոյեմբերին հաղթանակեցին սովետական կարգերը Հայաստանում, հայ ժողովուրդը հասավ իր արևածագին՝ Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն ողջույնի առաջին խոսքը ուղղեց մեծ ազատարարին։ Վ. Ի. Լենինը Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեին անմիջապես հեռագրեց.

«Հանձին ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին: Չեմ կասկածում, որ դուք կգործադրեք բոլոր ջանքերը՝ Հայաստանի, Թուրքիայի, Ադրբեջանի աշխատավորների միջև եղբայրական համերաշխություն հաստատելու համար:

Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ ԼԵՆԻՆ»:

Վ. Ի. Լենինի ողջույնը թևավորեց Սովետական Հայաստանի աշխատավորությանը և մղեց աշխատանքային նորանոր սխրանքների։ Դեպի սիրելի առաջնորդը հայ ժողովրդի տածած անհուն սերը, Կոմունիստական պարտիայի

նկատմամբ նրա նվիրվածության արտահայտություններից մեկն էլ այն բազմաթիվ նամակներն ու ողջույններն էին, որ ուղարկվում էին Վ. Ի. Լենինին։

Մոսկվա, Կրեմլ, ընկեր Լենինին...

Մոսկվա, Ժողկոմսովետի Նախագահ ընկեր Լենինին...

Սովետական իշխանության առաջին տարիներին մեր երկրի մյուս ժողովուրդների հետ միասին Հայաստանի աշխատավորներն այդ հասցեներով էին նամակներ, հեռագրեր ուղարկում Իլյիչին, նրանցում հայտնելով իրենց նվիրական խոհերն ու ողջույնները, խնդրում նրա իմաստուն խորհուրդն ու օգնությունը։ Վ. Ի. Լենինի նկատմամբ բոլոր ժողովուրդների տածած այդ անսահման սիրո մասին լավ է ասել Մ. Գորկին. «Նրա մեջ կար մի ինչ-որ մագնիսականություն, որը դեպի իրեն էր քաշում աշխատանքի մարդկանց սիրտն ու համակրանքը»։ Վ. Ի. Լենինին ուղարկած նամակներն ու հեռագրերը մարդկային հուզիչ փաստաթղթեր են, որոնք աչքի են ընկնում իրենց պարզությամբ, անկեղծությամբ, հուզականությամբ և բարձր գաղափարականությամբ։ Հայաստանում Սովետական կարգերի հաստատումից մի քանի օր անց, Երևան քաղաքի աշխատավորների 1920 թվականի դեկտեմբերի 6-ին գումարված բազմամարդ միտինգը, արտահայտելով ամբողջ հայ ժողովրդի իղձերն ու խոհերը մեծ առաջնորդի նկատմամբ, հեռագրել է.

«Մոսկվա, Վ. Ի. Լենինին.

Խիտ և կուռ շարքերով համախմբվելով կոմունիստական կարմիր դրոշակների շուրջը, աշխատավորությունը, հանձին Ձեզ, ողջունում է Հոկտեմբերյան հեղափոխության առաջամարտիկին, որի ալիքները խորտակելով ու ոչնչացնելով բոլոր արգելքները, հասան հեռավոր Հայաստանին։

Համոզված լինելով, որ միայն աշխատավորության դիկտատուրան է, որը երկիրը պիտի դնի երջանկության և զարգացման ուղու վրա, մտնելով խորհրդային հանրապետությունների պրոլետարական ընտանիքի մեջ, մենք հետևում ենք Հոկտեմբերյան հեղափոխության հերոսական օրինակին։

Ունենալով ռուս բանվորների անցյալի փորձը, ներկայումս աշխատավորական Ադրբեջանի և Ռուսաստանի օգնությունը, Խորհրդային Հայաստանի երիտասարդ հանրապետությունը համարձակ և անվախ դիմում է դեպի ապագան և բնավ չի կասկածում, որ աշխատանքը վերջնականորեն հաղթանակելու է կապիտալին»։

Սովետական Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ քայլ առ քայլ վերաշինում էին ավերված տնտեսությունը, բուժում նրա վերքերը։ Ինչպես առասպելական փյունիկ թռչունը, մոխիրներից ու փլատակներից վեր խոյացավ հայ ժողովուրդը, նորից կյանք առավ, կազդուրվեց, ծաղկեց և բարգավաճեց։ Սովետական Հայաստանը Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության արգասիքն է։

Վ. Ի. Լենինը անդուլ հոգատարություն էր հանդես բերում երիտասարդ սովետական ռեսպուբլիկաների, այդ թվում՝ Սովետական Հայաստանի նկատմամբ։ Միութենական կառավարությունը և Կոմունիստական պարտիան մեծ օգնություն կազմակերպեցին հայ ժողովրդին։

Կովկասի ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ամրապնդման գործում ծրագրային նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկաների կոմունիստ ընկերներին» 1921 թ. ապրիլին գրած նամակը, որն իր հետ Կովկաս բերեց Ալ. Մյասնիկյանը։ Վ. Ի. Լենինը այդ նամակում Կովկասի կոմունիստներին սովորեցնում



էր, թե ինչպես վերականգնել և զարգացնել քայքայված ժողովրդական տնտեսությունը, խորհուրդ էր տալիս զգույշ և նրբանկատ ազգային քաղաքականություն վարել Արևելքի արթնացող ժողովուրդների նկատմամբ։

Վ. Ի. Լենինը Արևելքի ժողովուրդների մեծ բարեկամն ու ուսուցիչն է։ Լենինի վսեմ գաղափարներն արագացրին Արևելքի զարթոնքը։ Դեռևս 1919 թ. մարտին, Կոմունիստական Ինտերնացիոնալի առաջին կոնգրեսին ներկայացրած ճառում, Մուստաֆա Սուբխին հպարտությամբ է նշել այն բոլոր ռևոլյուցիոն փոփոխությունները, որ Արևելքի ժողովուրդները ապրում են մեծ Հոկտեմբերի ազատարար շողերի տակ, այն ջերմ սերը, որ տածվում է դեպի Լենինը։ «Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո,— ասել է Մ. Սուբխին,— երբ Կոստանդնուպոլսի համալսարանում այն հարցն էր քննարկվում, թե ում շնորհել Նոբելյան մրցանակը, թուրքական երիտասարդությունը՝ չնայած թուրքական պրոֆեսորների ճնշման, որոշեց հատկացնել ընկ. Լենինին և դրանով մի ավելորդ անգամ ապացուցեց, որ սոցիալական ռևոլյուցիայի գաղափարները հաստատորեն ամրապնդվել են Արևելքում։ Հարգելի մեծ ուսուցիչ ընկ. Լենինը իր գաղափարներով, ձգտումներով և գործողություններով հանդերձ մի ամբողջ ռևոլյուցիոն աշխարհ է ներկայացնում, և թուրքական երիտասարդությունը իր ընտրությամբ ցույց տվեց իր ողջ նվիրվածությունը այդ աշխարհի նկատմամբ»։

1922 թվականի նոյեմբերին Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները Երևանում հավաքվելով համագումարի, Վ. Ի. Լենինի նշանավոր նամակի ոգով քննության առան ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման հարցերը։ Նախքան համագումարի բացումը նրանք իրենց ողջույնն ուղարկեցին Իլյիչին։

«Մոսկվա, Ժողկոմսովետի նախագահ ընկեր ԼԵՆԻՆԻՆ.

Սովետական Հայաստանի գյուղատնտեսական I համագումարը իր աշխատանքներն սկսելուց առաջ,— ասված է ողջույնի հեռագրում,— իր պարտքն է համարում ողջունել Ձեզ՝ համաշխարհային պրոլետարական ռևոլյուցիայի առաջնորդիդ։

Համագումարը մեծ գոհունակությամբ է արձանագրում այն փաստը, որ համաշխարհային բուրժուազիայի լակեյներին Հայաստանից վռնդելուց հետո, ազգամիջյան գժտություններից և Անտանտի ինտրիգներից հոշոտված Հայաստանի պրոլետարիատն ու գյուղացիությունը վերջապես հնարավորություն ստացան բուժելու իրենց վերքերը և անցնելու ստեղծարար աշխատանքի։

Համագումարը հավատացած է, որ Սովետական Ռուսաստանի հետ համերաշխ և լիովին համագործակցելով միայն փոքրիկ Հայաստանին կհաջողվի օգտագործել մինչև օրս թաքնված հնարավորությունները։ Ոգևորված լինելով այդ հեռանկարով, համագումարը ձեռնամուխ է լինում իր աշխատանքներին և Ձեր միջոցով իր ընկերական ողջույնն է հղում ամբողջ Ռուսաստանի պրոլետարիատին ու գյուղացիությանը»։

Հայ ժողովրդի միտքն ու սիրտը ուղղված էր դեպի Վ. Ի. Լենինը։ Բանվորներն ու գյուղացիները, ժողովրդական ինտելիգենցիայի ներկայացուցիչները մեծ առաջնորդին հաղորդում էին իրենց սոցիալիստական առաջին նվաճումների մասին, մեծարում նրան, ընտրում ղեկավար օրգաններում։ Դեռևս Իլյիչի կենդանության ժամանակ, 1922 թ. հունիսին, Հայկական ՍՍՌ Լուսժողկոմատը Վ. Ի. Լենինի՝ Երևանում կառուցվելիք արձանի լավագույն նախագծերի ռեսպուբլիկական մրցանակաբաշխություն հայտարարեց։ Մայրաքաղաքի աշխատավորները Վ. Ի. Լենինին ընտրեցին Երևանի Սովետի պատվավոր ան-

*դամ։ 1922 թվականի դեկտեմբերին Երևանի Քաղսովետի նախագահը հեռագրել է.*

«Մոսկվա, Կրեմլ, Երևանի Քաղսովետի պատվավոր անդամ ընկեր ԼԵՆԻՆԻՆ
27 դեկտեմբերի 1922 թվականի

Բանվորների, կարմիրբանակայինների դեպուտատների Երևան քաղաքի վերընտրված Սովետը իր պատվավոր անդամին և պրոլետարական առաջին ռևոլյուցիայի թանկագին առաջնորդին հղում է ջերմագին ողջույն:

Սովետական Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, Սովետական մեծ ֆեդերացիայի ընդհանուր ընտանիքում, խաղաղ պայմաններում կոփում են կոմունիստական հասարակության հիմքերը, նվիրվելով իմպերիալիստների ու նրանց լակեյների՝ հայ նացիոնալիստական պարտիաների կողմից ավերված իրենց օջախների վերականգնման ստեղծարար աշխատանքին: Դրանով Հայաստանի աշխատավորները պարտական են Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիային և առաջին հերթին Ձեզ, համաշխարհային պրոլետարիատի դասակարգային պայքարը ղեկավարողիդ հանճարին:

Հավատարիմ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի պատգամներին, բանվորների և կարմիրբանակայինների Երևան քաղաքի Սովետը, որ ամուր կերպով պահապան է կանգնած Սովետական ֆեդերացիայի պրոլետարիատի շահերին նրա հարավային սահմաններում, անսասանորեն վստահ է միջազգային ռևոլյուցիայի հաղթանակի նկատմամբ:

Կեցցե՛ Ռուսաստանի պրոլետարիատը:
Կեցցե՛ միջազգային ռևոլյուցիան:
Կեցցե՛ մեծ ղեկավար մեր Իլյիչը»:

*Սովետական Հայաստանի նվաճումները ուրախություն էին պատճառում Վ. Ի. Լենինին, թևավորում նրան։ Ալ. Մյասնիկյանը վերհիշելով Վ. Ի. Լենինի հետ ունեցած իր հանդիպումների մասին, նշել է, որ 1922 թվականի դեկտեմբերին, վերջին անգամ հանդիպելով Լենինին, իր վրա անջնջելի տպավորություն է գործել Իլյիչի բացառիկ հետաքրքրասիրությունը դեպի Անդրկովկասի ռեսպուբլիկաները։ Վ. Ի. Լենինը Մյասնիկյանից հարցնում է թե ինչպե՞ս են Անդրկովկասի գործերը, արդյոք ոտքի՞ է կանգնել ավերված Հայաստանը, ի՞նչ վիճակի մեջ են բամբակի, ոռոգման, պարենամթերքի գործերը, բավականաչափ ամո՞ւր է արդյոք ազգային Կարմիր Բանակը, չե՞ն նեղացնում արդյոք «մանր մարդկանց», ագիտացիա չի՞ մղվում արդյոք բուրժուական ինտելիգենցիայի կողմից. չե՞ն խոսում արդյոք «ռուսական սվինների» մասին և այլն։ Ժողովրդական մասսաների, բոլոր ազգերի և ռասաների նկատմամբ միշտ այսպես սրտացավ էր Վ. Ի. Լենինը։*

*1922—1924 թվականներին Իլյիչին հայ ժողովրդի գրած նամակներում և այլ նյութերում արտացոլված են սոցիալիստական շինարարության ասպարեզում ռեսպուբլիկայի աշխատավորության ձեռք բերած նվաճումները, «Լենինյան կոչի» արձագանքները և բազմապիսի այլ հարցեր։ Վ. Ի. Լենինին այդ ժամանակ նամակներ են գրել աշխատավորության բոլոր խավերը, պատանիներն ու հասակավորները։ Ուշագրավ է Երևանի գավառի Կենտկոմի անվան կոլեկտիվի Լենինի անվան պիոներական օղակի 1923 թ. նոյեմբերի 2-ի նամակը։ Նրանում պատանի լենինյանները ամենից առաջ հետաքրքրվում են Վ. Ի. Լենինի առողջությամբ։*

«Թանկագին ուսուցիչ ընկ. Լենին,— գրել են նրանք,— ամենից շատ մեզ հետաքրքրում է Ձեր առողջությունը, որը մեզ համար հրատապ խնդիր է դարձել և որի մասին րոպե առ րոպե սպասում ենք, այսինքը Ձեր վերջնական առողջությանը»:



*Այնուհետև պատանի լենինյանները երդվում են անշեղորեն ընթանալ Իլյիչի գծած ուղիով, կրկին նրան ցանկանում՝ «շուտափույթ առողջություն և երջանիկ օրեր գալիք համաշխարհային հեղափոխությունը իրագործած տեսնելու և ղեկավարելու համար»։*

*Ասես թե Իլյիչի այդ փոքրիկ բարեկամների մասին է բանաստեղծ Գ. Սարյանը տարիներ հետո գրել.*

Պատվո պահակ են կանգնում մեր Երևանում
Արձանի մոտ Լենինի պիոներները մեր,
Երբ ապրիլյան ծաղկաշունչ օրն է լուսանում,
Աչքերի պես բացվում են երբ բյուր ծաղիկներ:
Թվում է թե այդ պահին՝ պատվանդանից վար՝
Լենինն ուրախ, սրտաբուխ ժպտում է բարի,
Կարծես ասում է նրանց մեղմ, մտերմաբար,
— Այդ ե՞րբ, այդ ե՞րբ բացվեցիք, վարդեր աշխարհի:

## ԻԼՅԻՉԸ ՄԵՐ ՍՐՏԵՐՈՒՄ...

*Հայ ժողովուրդը անհուն երախտագիտությամբ է հիշում և իր սրտում պահպանում Իլյիչի անմահ անունն ու գործերը։ Շրթից-շուրթ, սրտից-սիրտ անցնելով՝ Լենինի անունը դարձել է ամեն լավի ու բարու, գեղեցկի ու անաղարտության խորհրդանիշը։ Ժողովուրդն իր բանաստեղծների լեզվով երգում է Լենինի անմահությունը, նրա աշխարհացունց գործն ու հավերժ կենդանի ուսմունքը, որը պայքարի անսպառ եռանդով, ապագայի նկատմամբ վառ հավատով ու հույսով համակել է աշխարհի հարյուր միլիոնավոր հասարակ աշխատավոր մարդկանց սրտերը։ Սովետահայ տաղանդավոր բանաստեղծ Եղիշե Չարենցը ջերմ հուզականությամբ, բարձր արվեստով կերտելով Իլյիչի կերպարը գրել է.*

Իլյիչը իմ մեջ է,
Քո մեջ է,
Նրա մեջ է:
Իլյիչը կա՛:

*Որպես փառքի անհաս կոթող, երախտագետ հայ ժողովուրդն իր սրտում, իր քաղաքներում և գյուղերում կանգնեցրել է Լենինի հուշարձանը։ Իլյիչի անունով են կոչվում Հայաստանի շատ գործարաններ, կոլտնտեսություններ, սովխոզներ... Իլյիչի անունով է կոչվում ռեսպուբլիկայի արդյունաբերական և կուլտուրական երկրորդ խոշոր քաղաքը։*

*Հապա Սովետական Հայաստանը, որը 1958 թ. պարգևատրվեց Լենինի շքանշանով և հավերժ իր կրծքին, իր Պետական դրոշին կրելու է մեծ Լենինի անմահ պատկերը... Գեղեցիկ է Լենինի հանճարով վերածնված ազատ ու երջանիկ Սովետական Հայաստանը, էլ ավելի վառ ու պայծառ է նրա ապագան։ Երախտապարտ հայ ժողովուրդը, իր սրտում փայփայելով Իլյիչի թանկագին կերպարը, ՍՍՌՄ ժողովուրդների հզոր ընտանիքում, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեծ Լենինի դրոշով ընթանում է առաջ՝ դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները։*

---

# ԱՌԱՋՆՈՐԴԻ ԱՆՎԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԸ

Բ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

խոնավ, տաք հողից բարձրանում է շղարշի պես թափանցիկ մշուշը։
Գարուն է։
Գարնան երգն են երգում թռչունները բարձր ու կապույտ երկնքում, գար-
նան փողքն են երգում հորդացած ջրերը։ Արթնանում է պատանու սրտում քնած
սերն ու երգում, խոսում ծաղիկների հրեղեն լեզվով։ Անտես ու լուռ, ծառի
ստվերում բացված մանուշակի նման, ծաղկում է Արարատյան դաշտի գեղեց-
կուհու սերը ու մանուշակի նման շուրջը լցնում քնքուշ բուրմունքով։
Բուրում է հողը, բուրում է սերը... Գարուն է...
Այս շռայլ ու պայծառ գարնան պես փթթում է նաև Հայաստանի Վ. Ի.
Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը։
Գործարանում ենք. տուֆակերտ կորպուսների միջով ձգվում է ծառուղին։
Ամենուր տասափում են նրբիրան ծառերը։ Ջահել, նուրբ ոստը երկարում է իր
քնքուշ մատիկները, ձգտում դեպի ցեխերի շողարձակ պատուհանները, ձգտում
դեպի մարդիկ, որոնց սրտերում շողշողում են գարնան պատկերներ։
Տասնվեց տարի առաջ այստեղ քարքարոտ տարածություն էր, փշերով ու
տատասկներով ծածկված։ Այդպես էր առաջ։
Իսկ այսօ՞ր, 16 տարի հետո՞։ Այդ տարածության վրա վեր են խոյացել
հսկա գործարանի հսկա կորպուսները։ Բայց Վ. Ի. Լենինի անվան էլեկտրա-
մեքենաշինական գործարանի մասին այդպես ասելը քիչ է։ Այդ տարածության
վրա ոչ թե գործարան է աճել, այլ մի ամբողջ քաղաք։ Շուրջ 100 հեկտար տա-
րածության վրա տարածվել են ահռելի կորպուսներ, որոնք ձգվում են մերթ
արևելքից արևմուտք, մերթ հյուսիսից հարավ։ Իսկ շենքերի երկարությամբ
փողոցներ են. լայն, ուղիղ, ասֆալտապատ։ Այդ փողոցների խաչմերուկներում
փողոցային երթևեկությունը կանոնավորող նշաններ կան, ցայտաղբյուրներ,
պաղպաղակի ու զովացուցիչ ջրերի կետեր, դեղատան ֆիլիալ։ Իսկ պուրակ-
նե՞րը, գրասայգինե՞րը, հանգստի ու կուլտուրայի մյուս օջախնե՞րը։ Նրանք
շատ են, ամենուր։ Նրանցում նաղանքով օրորվում են նորափթիթ հացենիներն
ու թթենիները, բուրում են բալենու ձեռատի տունկերն ու սոճիները, իսկ դալար
ու ճերմակիրան բարդիներն իրենց նուրբ տերևների շրշյունն են խառնում կոր-
պուսների ներսում հնդացող հայրենական մեքենաների հուժկու երաժշտու-
թյանը։
Մեծ Լենինի անունը կրող գործարան-քաղաքն ունի հազարավոր բնակիչ-
ներ՝ բանվորներ, ծառայողներ, ինժեներներ ու տեխնիկներ։ Նա ունի գիտա-



հետազոտական ինստիտուտ, որտեղ աշխատում են 250 գիտական աշխատող-
ներ, այդ թվում՝ տեխնիկական գիտությունների 13 թեկնածու և 9 ասպիրանտ։
Գործարանին կից գործում են էներգետիկ տեխնիկում և բանվոր երիտասար-
դության հերթափոխային դպրոց, որոնցում առանց արտադրությունից կտրվե-
լու սսանում են շուրջ 600 հոգի։ Գործարանն ունի ստադիոն, սպորտային
դահլիճներ։ Նրանցում մարզվում, իրենց սպորտային վարպետությունն են
բարձրացնում ավելի քան 2000 սպորտսմեններ։ Ձեռնարկությունում կան
ավտոմատ խոհանոց-ֆաբրիկա, ռադիոհաղորդման և բուժական կայաններ,
պոլիկլինիկա, հիվանդանոց։ Այստեղ լույս են ընծայվում բազմատիրաժ թերթ,
գիտա-տեխնիկական բյուլետեն։ Գեղարվեստական և տեխնիկական գրադա-
րաններն ունեն տասնյակ հազարների հասնող քաղաքական, գեղարվեստական
և տեխնիկական գրականություն, ստանում են շուրջ 200 անուն թերթ, ժուռնալ,
ամսագիր։

## ՈՒԹ ՀԱԶԱՐ ՀԱՍՑԵՆԵՐՈՎ 30 ՀԱԶԱՐ ՊԱՏՎԻՐԱՏՈՒ

Մեծ է Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը, մեծ է
իր բազմաբովանդակ կյանքով, աշխատանքով։ Տասը տիպի շարժական էլեկ-
տրակայան, 22 տիպի տրանսֆորմատոր, 6 տիպի կոմպլեկտային տրանսֆոր-
մատորային ենթակայան, 16 տիպի գեներատոր, բազմաթիվ կենցաղային
սպասարկման առարկաներ, էլեկտրական այլ մեքենաներ ու սարքավորում-
ներ։ Ահա թե ինչ է առաքում գործարանը ութ հազար հասցեներով 30 հազար
պատվիրատուներին։
Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը Անդրկովկա-
սի մեքենաշինության առաջնեկն է։ Իր գոյության կարճ ժամանակամիջոցում
նա հսկայական քայլերով առաջ է ընթացել և իր ուրույն տեղը գրավել Սովե-
տական Միության մեքենաշինական արդյունաբերության մեջ։ 1947—1960
թվականներին գործարանի համախառն արտադրանքի թողարկումը ավե-
լացել է 50 անգամ։ Որպեսզի հնարավոր լինի պատկերացնել նրա կարողու-
թյունը, բավական է ասել, որ նրա թողարկած միայն տրանսֆորմատորների
հզորությունը դեռևս 1958 թվականին գերազանցել է միության ամենահզոր
էլեկտրակայանի՝ Ժիգուլիի հսկա Կույբիշևգէսի հզորությունը։
Ներկայումս գործարանը Սովետական Միությունում առաջատար ձեռ-
նարկությունն է կոնստրուկցիաների և տեխնոլոգիաների մշակման էլեկտրա-
տեխնիկական այնպիսի կարևորագույն տեսակների արտադրության ու մատա-
կարարման գծով, ինչպիսիք են՝ մինչև 100 կիլովատ կարողությամբ սինխրո-
նային գեներատորները, մինչև 560 կիլովատ-ամպեր կարողությամբ ուժային
տրանսֆորմատորները, մինչև 100 կիլովատ կարողության շարժական էլեկ-
տրակայանները, մինչև 320 կիլովատ-ամպեր կարողության կոմպլեկտային
տրանսֆորմատորային ենթակայանները և այլն։

## ՈՒՐ ՉԻ ԴԱԴԱՐՈՒՄ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԶԱՐԿԵՐԱԿԸ

Հայէլեկտրագործարան։ Ստեղծագործ պայքարով է լեցուն նրա կյանքի
ամեն մի րոպեն։ Յուրաքանչյուր րոպեն առողջ սրտի մի ռիթմիկ զարկ է՝
լեցուն աշխատանքային սխրանքների պայծառ դրվագներով։

...Ձուլման ցեխ։ Մի ամբողջ թաղամաս է գրավում տուֆաշեն հսկայական կորպուսը։ Ապակեպատ բարձր տանիքից թափվող առատ լույսի տակ երևում են կաղապարման հողի կույտերը, պատրաստի դետալներն ու կաղապարները։ Այստեղ օրվա 24 ժամերի ընթացքում չի դադարում աշխատանքի զարկերակը։

Մենք գտնվում ենք ցեխի կոնվեյերային ձուլման տեղամասում։ Վիթխարի վառարանների հնոցներում օձագալար պտտվում են կրակի հրեղեն լեզուները։ Հնոցներից փոքր-ինչ այն կողմ, կորպուսի ամբողջ երկարությամբ ձգվում է կաղապարման կոնվեյերը։ Մարդկային աչքն անկարող է ընկալել այն ամենը, ինչ կատարվում է նրա վրա թեկուզ մեկ րոպեի ընթացքում։

Մինչ մենք դիտում ենք այս ամենը, մեզ է մոտենում ցեխի ավագ վարպետը և գլխավոր մետալուրգին զեկուցում, որ ձուլողների անընդմեջ աշխատանքն ապահովված է։

«Անընդմեջ աշխատանքն ապահովված է»։ Որքա՜ն իմաստ կա այդ մի քանի բառի մեջ։ Այդ նշանակում է, որ վաղը և առաջիկայում անխափան կաշխատեն գործարանի նախապատրաստական ցեխերի բանվորները, որ հավաքման ցեխերը չեն դժգոհի, թե նորմալ աշխատանքի համար պակասում են անհրաժեշտ քանակությամբ դետալներ, էլեկտրամեքենաշինարարներին չեն կըշտամբի ռեսպուբլիկայի արդյունաբերական այն ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք հայէլեկտրագործարանից կոոպերացված պլանով ձուլվածք են ստանում։

Ձուլման ցեխը իրավամբ համարվում է գործարանի սիրտը։ Պատկառանքով ես լցվում այդ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի նկատմամբ, երբ, թեկուզ հարևանցի, դիտում ես նրանց աշխատանքը։ Եվ ինչպե՞ս կարող ես չհպարտանալ, երբ աշխատանքային մեծ պաթոսով լեցուն այդ մարդկանց շնորհիվ գործարանը շուտով, շատ շուտով կսկսի տարեկան թողարկել 36 հազար տոննա պիտանի ձուլվածք։

## ԳՈՐԾԱՐԱՆԻ ՄԵՋ ԳՈՐԾԱՐԱՆ

Մենք գտնվում ենք № 22 կորպուսում։ Այստեղ է տեղավորված գեներատորների հավաքման ցեխը։ Գործարանի մեջ գործարան... այս է առաջին տպավորությունը։ Հարյուրավոր մարդկանց ու մեքենաների համատեղ գործունեությունից ծնվում է կոլեկտիվ աշխատանքի բերկրանքն ու պոեզիան։

Ցեխի երկայնքով դանդաղորեն սահում է երկաթե ժապավենը և մերթ ընդ մերթ կանգ առնում բանվորական տեղերի առաջ։ Գեներատորների կմախքը, որը կոնվեյերի ժապավենի սկզբում բոլորովին մերկ էր, գնալով փոխում է իր տեսքը։ Բանվորներից յուրաքանչյուրը այդ կմախքին ավելացնում է մի մաս, նրա վրա կատարում մի օպերացիա և այն փոխանցում հաջորդին։ Վերջին բանվորը ավարտում է գեներատորի հավաքման պրոցեսը և մեքենան հանձնում ներկման, չորացման և փորձարկման կոնվեյերին։

Մի քանի տարի առաջ, երբ գործարանում նոր էր արմատավորվում կոնվեյերային արտադրությունը, գեներատորների հավաքման պրիմիտիվ եղանակից չափազանց դժվար էր անմիջապես անցնել հոսքային եղանակի։ Հատկապես զգացվում էր բանիմաց և հմուտ բանվորների կարիքը։ Այդ ժամանակ էր, որ շատերի հետ միասին հայրենադարձ Գևորգ Թեփուլյանին ևս առա-



ջարկվեց աշխատել կոնվեյերի վրա։ Եվ նա դարձավ մեկն այն բանվորներից, որոնք այդ օրվանից՝ սպասարկում են կոնվեյերը։ Հիանալի տիրապետելով հավաքող-փականագործի մասնագիտությանը, նա աչքի է ընկնում իր բարեխղճությամբ և պատասխանատվության բարձր զգացումով։ Նա մեկն է այն երիտասարդներից, որոնք շունչ են տալիս ցեխի 9 կոնվեյերներին, իրենց անձնվեր աշխատանքով բազմապատկում գործարանի փառքը։

... Ահա և այն տեղամասը, որտեղ աշխատում է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Նուբար Սարգսյանը։ Վեց առույգ ու ժիր աղջիկներ՝ Վերան, Լիդան, Վարդուշը, Գոհարը, Վալյան և Նուբարը կողք-կողքի աշխատում են։ Նայում ես այդ կենսախինդ աղջիկներին, նրանց աշխատանքին և հոգեկան բավականություն զգում։ Վեց աղջիկ, մի սիրտ դարձած, աշխատում են բուռն սիրահարված իրենց գործին։

Մոտենում ենք նրանց։ Ուրախ, իմաստուն, սևահեր աչքերով մի աղջիկ է իր պարզ ու հասարակ չթե հագուստով։ Այդ ջանասեր Նուբարն է, այն երիտասարդ բանվորուհին, որին էլեկտրամեքենաշինարարները մեկ տարի առաջ առաջադրեցին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։

Համեստ ու սովորական է Նուբարի կյանքի պատմությունը, հար և նման նրա միլիոնավոր հասակակիցների կյանքին... Դպրոց, պիոներական դրուժինա, կոմերիտմիություն... գործարան։

Համեստ, աշխատասեր, հիանալի երիտասարդ է Նուբարը։ Նա ամեն գործ հաճույքով է կատարում և իր եռանդով վարակում բոլորին։

## ՆՐԱՆՑ ՄՏՔԻ ՈՒ ԲԱԶԿԻ ՈՒԺՈՎ...

Շատ են նման աշխատասեր, վառվռուն երիտասարդները ռեսպուբլիկայի այս խոշորագույն ձեռնարկությունում։ ԼԿԵՄ կոմիտեում մեզ ասացին, որ կոմունիստական աշխատանքի համար պայքարող 20 բրիգադներում ընդգրկված են 200 երիտասարդներ, շուրջ 600 հոգի պայքարում են աշխատանքի հարվածայինի կոչման համար, կոմերիտական-երիտասարդական 60 բրիգադներում անձնվեր աշխատանքի օրինակ են ցույց տալիս ավելի քան 400 բանվոր։

Աճում, հզորանում է մեծ Լենինի անունը կրող էլեկտրամեքենաշինական գործարանը և նրա հետ մեկտեղ բազմանում են, աշխատանքային փորձ ու հմտություն կուտակում շատ ու շատ բանվորներ, ինժեներներ ու տեխնիկներ, որոնց մտքի ու բազկի ուժով բաբախում է գործարանի սիրտը։

Ահա մենք քայլում ենք առաջավորների ծառուղով։ Մեր հայացքը սևեռվում է այն դիմանկարների վրա, որոնք շարված են ծառուղու ամբողջ երկարությամբ։

«Վիկտոր Թադևոսյան, կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադիր։ Պլանները կատարում է 200-250 տոկոսով»։ Այսքանը միայն։ Քայլում ենք, և ահա մի այլ գեղեցիկ դեմք. «Ելենա Գրիգորյան, ԳՀԻՀՑ-ի ավագ ինժեներ»։ Եվս մի քանի քայլ և քանի՜-քանի՜ ազնիվ, կենսախինդ, գեղեցիկ, առնական դեմքեր են նայում մեզ սպիտակ պաստառներից։ «Նուբար Սարգսյան— № 9 ցեխի անվանի բանվորուհի», «Ստեփան Մատինյան — № 12 ցեխի պետ», «Մարտին Հարությունյան—գլխավոր մետալուրգ»... Ինչպես տեսնում եք բա-

վական զուսպ ու ժլատ են այդ նկարների մակագրությունները, բայց փաստորեն իմաստալից են ու շատ բան պատմող:

Երիտասարդ է գործարանը, երիտասարդ են նաև նրա մարդիկ: 1949 թվականին Ռոբերտ Օհանյանը երբ ուսանողական սեղանից առաջին անգամ ոտք դրեց Հայէլեկտրագործարան, այն անհամեմատ փոքր էր և՛ իր ծավալով, և՛ իր կարողությամբ: Զգացվում էր լավագույն մեքենաների մեծ պակաս: Նրանց զգալի մասը ստացվում էր արտասահմանից: Ռոբերտ Օհանյանը շարքային ինժեներից աճեց, բարձրացավ գործարանի գլխավոր ինժեների աստիճանի, իսկ գործարանն էլ հասավ այն բանին, որ ինքն է այժմ մեքենաներ արտահանում արտասահման:

Նույնպիսի ճանապարհ են անցել նաև գործարանի գլխավոր կոնստրուկտոր Վալոդյա Մելիքյանը, կոնստրուկտորական բյուրոյի պետ Գալյա Մարգարյանը, գլխավոր մեխանիկ Գուրգեն Մկրտչյանը, արտադրության պետ Պողոս Գևորգյանը, գլխավոր տեխնոլոգի տեղակալ Գևորգ Գյուլամիրյանը, №9 ցեխի պետ Կոստանդին Առաքելյանը, պարտկոմի քարտուղար Սնայպեր Դավթյանը և շատ ուրիշներ, մարդիկ, որոնց մտքի ու բազուկների ուժով բաբախում է մեծ գործարանի սիրտը:

Քայլում ենք առաջ, ցեխից ցեխ, տեղամասից տեղամաս, լաբորատորիայից լաբորատորիա... և դժվար չէ նկատել, թե ինչպես այդ մարդիկ ստեղծում են նորանոր մեքենաներ, կատարելագործում ու մոդեռնացնում հները, այդ ամենը արմատավորում արտադրության մեջ, ստեղծում նոր կոնվեյերներ ու հոսքային գծեր, կատարելագործում արտադրության տեխնիկան ու տեխնոլոգիան, մեքենայացնում ծանր ու աշխատատար պրոցեսները... որպեսզի է՛լ ավելի բարձրանա աշխատանքի արտադրողականությունը, իջնի թողարկվող արտադրանքի ինքնարժեքը, որպեսզի Հայրենիքը ստանա ավելի շատ ու կատարյալ մեքենաներ:

## ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆ ՉԻ ՃԱՆԱՉՈՒՄ

Հեռու է Հնդկաստանը, արևի, մարգագետինների ու ծովերի այդ երկիրը: Լայնարձակ հարթավայրեր, բարձրաբերձ ու ժայռոտ լեռներ, անդնդախոր ու հորդառատ գետեր, թավուտ անտառներ են ընկած արևավառ Հայաստանի ու Հնդկաստանի միջև: Բայց համագործակցությունը տարածություն չի ճանաչում:

Բհիլայի, Նանդյին, Ռաջարա...

Հայաստանից հազարավոր կիլոմետրերի վրա ընկած այս քաղաքների ու վայրերի անունները քաջ հայտնի են Վ. Ի. Լենինի անվան գործարանի և Ավտոմատիկայի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի Հայկական ֆիլիալի կոլեկտիվներին: Եվ այդ ունի իր պատճառները:

Շուրջ 2 տարի առաջ այդ կոլեկտիվները հանձնարարություն էին ստացել Բհիլայիի նորակառույց մետալուրգիական գործարանի և Նանդյինի ու Ռաջարայի հանքավայրերի համար նախագծել ու պատրաստել արևադարձային կլիմայի պայմաններում աշխատող կոմպլեկտային տրանսֆորմատորային ենթակայանների մի պարտիա, մետալուրգիական գործարանը և հանքավայրերը էլեկտրաէներգիայով ապահովելու համար:

Էլեկտրական այդ մեքենայի նախագծումը այնքան էլ հեշտ գործ չէր:



Անհրաժեշտ էր լուծել տեխնիկական բազմաթիվ հարցեր, որոնք կապված էին Հնդկաստանի արևադարձային կլիմայի հետ:

Բայց տեխնիկական ու մյուս բնույթի դժվարությունները չընկճեցին Երևանի էլեկտրամեքենաշինարարներին: Նրանք մեծ եռանդով ձեռնամուխ եղան գործին: Տասնյակ կոնստրուկտորներ ու տեխնոլոգներ հակված իրենց սեղաններին, ժամերով թերթում էին տեխնիկական գրականության թերթերը, կատարում առաջին հաշվարկումները: Առաջին նախագիծը փոխարինվում էր երկրորդով, երկրորդը՝ երրորդով, չորրորդով և այսպես շարունակ:

Իրենց համառ ու լարված աշխատանքի շնորհիվ Երևանի էլեկտրամեքենաշինարարները կարողացան հաղթահարել բոլոր կարգի դժվարությունները և սահմանված ժամկետից շուտ ավարտել կոմպլեկտային տրանսֆորմատորային ենթակայանի բանվորական գծագրերը: Այդ գծագրերի հիման վրա շուտով պատրաստվեցին ենթակայանի փորձնական նմուշները, որոնք գերազանց գնահատություն ստացան: Շուտով գործարանի կոլեկտիվը յուրացրեց այդ ենթակայանի արտադրությունը և նրանց առաջին պարտիան ուղարկեց Բհիլայիի մետալուրգիական գործարան:

Հնդկաստանին տեխնիկական օգնություն ցույց տալու հանձնարարությունը կատարված էր:

Այդ օրից անցել է բավական ժամանակ, և Հնդկաստանի մետալուրգների ու Հայաստանի էլեկտրամեքենաշինարարների միջև բարեկամական սերտ կապեր են ստեղծվել:

## ԴԵՊԻ ԵՐԿՐԱԳՆԴԻ ԲՈԼՈՐ ԾԱՅՐԵՐԸ

Բայց Հնդկաստանը միակ երկիրը չէ, որի հետ կապված է Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը:

Հինգերորդ ամիսն է, ինչ Իրաքի ռեսպուբլիկայից Երևան են ժամանել Բաղդադի տեխնիկական ուսումնարանի և Ինդուստրիալ ինստիտուտի մեխանիկական ու էլեկտրատեխնիկական ֆակուլտետների 14 շրջանավարտներ. նորավարտ ինժեներներն ու տեխնիկները իրենց աշխատանքային մկրտությունը ստանում են Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանում: Նրանք ծանոթանում են գործարանի կառուցվածքին, ցեխերի ու տեղամասերի աշխատանքի դրվածքին, մեքենաներին ու սարքավորումներին:

Գործարանի կոլեկտիվը հոգատարությամբ է շրջապատել արտասահմանյան հյուրերին: Նրանց համար կազմակերպվում են հատուկ դասընթացներ, որոնց միջոցով իրաքցի բարեկամներն ուսումնասիրում են մեքենաշինության տեխնոլոգիան, տեխնիկական գծագրությունը, հաստոցներն ու գործիքները, մեքենաների մասերը և մեքենաշինության այլ հարցեր: Պարապմունքները անց են կացնում տեխնիկական բաժնի և առանձին ցեխերի փորձառու ինժեներները: Բացի այդ, տեխնիկական հարուստ գրականությունից օգտվելու հնարավորություն ստեղծելու նպատակով իրաքցի մասնագետների համար կազմակերպվում են ռուսաց լեզվի դասընթացներ:

Բայց այդ ևս ամենը չէ: Գործարանի ԼԿԵՄ կոմիտեում պատին փակցված է մի քարտեզ: Քարտեզի վրա փոքրիկ աստղի նման բոցկլտում է Երևան քաղաքը: Այդ աստղը բազմաթիվ ճառագայթներ է շողարձակում: Դրանք հատում են գետեր, լեռներ, ծովեր, օվկիանոսներ ու հասնում երկրագնդի տար-

բեր ծայրերը։ Այդ ճառագայթները ցույց են տալիս, թե ո՛ր երկրներն են առաքվում Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի արտադրած տրանսֆորմատորներն ու գեներատորները, շարժական էլեկտրակայաններն ու կառավարման վահանները, կոմպլեկտային տրանսֆորմատորային ենթակայաններն ու էլեկտրական մյուս մեքենաները։

Ահա մի ճառագայթ հայրենի Երևան կետից գնում է հեռո՜ւ, հեռո՜ւ, կտրում օվկիանոսների կապույտը և մխրճվում Արգենտինայի բարձրաբերձ լեռների մեջ։ Մեկ ուրիշ ճառագայթ, հատելով Տյան-Շանի ճերմակափառ կատարները, հասնում է Գանգեսի հեքիաթային ափերին։ Ձգվում են ուրիշ բազում ճառագայթներ, ձգվում դեպի աշխարհի շատ ու շատ մասեր, դեպի Քաբուլ և Ռանգուն, Բուենոս-Այրես և Վարշավա, Բաղդադ և Շանհայ, Ջակարտա և Տիրանա, Ուլան-Բատոր և Անկարա, Մեխիկո և Հելսինկի, Խարտում և Կոլոմբո...

Գործարանը կապված է հինգ աշխարհամասերի հետ։ Նա իր արտադրանքն առաքում է արտասահմանյան 32 երկրներ, այդ թվում 20 կապիտալիստական։

Քառասուն տարի առաջ, երբ հայ ժողովուրդը տնքում էր դաշնակների արյունոտ լծի տակ, երազել անգամ չէր կարող, որ ինքը երբևէ կարող է լույս տանել հեռավոր Հնդկաստան, Եվրոպա, կտրել բազում ծովեր ու օվկիանոսներ, լեռներ ու հարթավայրեր ու հասնել Մեքսիկա և Արգենտինա։ Իսկ այժմ այն ոչ թե երազ է, այլ գեղեցիկ իրականություն, պերճախոս փաստ։

Կա՞ արդյոք ավելի հաճելի, ավելի բերկրալից բան, քան լույս տանել մարդկանց, և Երևանի էլեկտրամեքենաշինարարները լույս են սփռում երկրագնդի բոլոր ծայրերում, երկրագնդի բոլոր աշխարհամասերում։

Լույս, ստեղծարար լույս է դառնում գործարանի կոլեկտիվի ստեղծագործ աշխատանքը։

## ՓԱՅԼՈՒՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Գեղեցիկ է գործարանի ներկան, բայց ավելի լուսաշող է նրա ապագան։ Յոթնամյա պլանով նոր, ավելի փայլուն հեռանկարներ են բացվում Երևանի էլեկտրամեքենաշինարարների առջև։

1959—1965 թվականների ընթացքում գործարանի ապրանքային արտադրանքի թողարկումն ավելանալու է 3,1 անգամ։ Արտադրանքի թողարկման տարեկան միջին աճը կազմելու է 46 տոկոս։ Նախատեսված է յոթնամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 72,6 տոկոսով, իսկ օգուտների ծավալը եռապատկել և հասցնել 250 միլիոն ռուբլու։

Յոթնամյակի վերջին տարում գործարանը կթողարկի 40.000 ուժային տրանսֆորմատոր, 24.100 հատ շարժական էլեկտրակայան և բազում այլ էլեկտրական մեքենաներ։

Այս թվերը լոկ թվեր չեն, սրանց տակ կյանքն է, ստեղծվող հզոր ուժը։

Կանցնի ևս վեց տարի, և երբ սովետական մարդիկ կամփոփեն իրենց աշխատանքի արդյունքները, այդ նախագծումները առկա հաջողություններ կլինեն և Երևանի էլեկտրամեքենաշինարարների առջև կրկին կշողշողան ավելի պայծառ հորիզոններ։

---

# ԼԵՆԻՆԸ ԽՈՍՔԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԱՍԻՆ

Գ. ՎԱՀԱՆՅԱՆ

Որպես խոշորագույն հրապարակախոս՝ Լենինը զարմանք է պատճառում իր խոսքի տրամաբանական ուժով, ընթերցողին համոզելու իր մեծ վարպետությամբ։ Խոսքի այդ հատկանիշները սերտորեն շաղկապված են մեծ տեսաբանի՝ խոսքի կուլտուրայի մասին առաջ քաշած դրույթների հետ։ Այս առումով խիստ կարևոր է ուսումնասիրել մեծ հրապարակախոս Վ. Ի. Լենինի ո՛չ միայն խմբագրական ժառանգությունը, հռետորական արվեստը, խոսքի բարձր կուլտուրան, այլև հետևել նրա իմաստուն խորհուրդներին։

Ռուս ուսումնասիրողները նշել են, որ Լենինն իր խմբագրական աշխատանքի ընթացքում չի թույլ տվել ո՛չ մի լեզվական անճշտություն կամ սխալ և միշտ եղել է խստապահանջ թե՛ իր և թե՛ ուրիշների գրավոր խոսքի նկատմամբ։ Ուշագրավ է այն, որ Լենինն իր ձեռագրերում ու խմբագրական գործունեության մեջ նկատում և ուղղում էր ամեն կարգի թերությունները, որոնց ուսումնասիրությունը խիստ անհրաժեշտ է լեզվական շեղումներից խուսափելու համար։

Հիմնականում առաջնորդի դիտողությունները, ասույթները վերաբերում են այնպիսի արատների, որոնք խանգարում են մասսաների հետ ունեցած սերտ կապին, նրանց համոզելուն, խանգարում են ճշմարտության տարածմանը։ Լեզվի այդ արատներն են՝ վերացականությունն ու անորոշությունը, անճշտությունն ու օտարամոլությունը, ֆրազաբանությունն ու ճոռոմաբանությունը, միապաղաղությունը, առարկայազուրկ շաղակրատանքը։

Ուշագրավ է, որ Լենինը պահանջում էր շարադրման առավել ժողովրդայնություն ու պայծառություն, կոնկրետություն ու կենդանություն, պարզություն ու սեղմություն։ Բացի դրանցից Լենինը մամուլի ամեն մի աշխատողից պահանջում էր շարադրվող նյութի բովանդակության լրջություն ու հանգամանալիություն, պարտիական կրքոտություն ու մարտունակություն։

Լենինը հոգատարությամբ ու համբերատարությամբ բացատրում էր, սովորեցնելով կատարել լեզվական ձևերի խնամքով ընտրություն, վերցնել դրանցից լավագույնը, որը մտքի նրբերանգներն արտահայտի այնպես, ինչպես հեղինակն է ցանկանում և այնպես, ինչպես պետք է։ Նա սովորեցնում էր լավ ընտրություն կատարել, որովհետև լավ ընտրել նշանակում է լավ գրել։ Մեկը ընտրում է «սոցիալ-դասակարգային» բառը, որը Լենինի նրբանկատ աչքից չի վրիպում. գտնում է, որ այդ տերմինը սխալ է, որովհետև չի կարող դասակարգայինը սոցիալական չլինել. «Հարկավոր է պարզ և ճիշտ ասել»,— զգուշացնում է

Լենինը։ Ոմանք ասում էին, թե պրոլետարական «պետությունը ոչնչանում է»,
«պետությունը վերանում է» և այլն, իսկ Լենինը ասում էր՝ ոչնչանում է, վե-
րանում է տեղին չեն, այլ ավելի ճիշտ կլինի ասել՝ «պետությունը մահանում
է», որովհետև մահանալ բառի մեջ արտահայտվում է երևույթի թե՛ պրոցեսը և
թե՛ աստիճանականությունը։ Այս փաստերը ցույց են տալիս, թե որքան կա-
րևոր նշանակություն ունի բառի ճիշտ ընտրությունը՝ միտքը ճշտությամբ ար-
տահայտելու համար։

Գալով խոսքի պարզությանը, հստակությանը և մատչելիությանը, պետք է
ասել, որ դրանք խոսքի կուլտուրայի հիմնական գծերից են։ Խոսքի այդ կա-
րևորագույն հատկանիշներն անհրաժեշտ են՝ ժողովրդական զանգվածներին
դաստիարակելու, մարքսիզմի գաղափարները նրանց սեփականությունը դարձ-
նելու համար։ Այդ տեսակետից էլ Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն էր
դարձնում խոսքի հստակության վրա, որը սերտորեն առնչվում է մարքսիզմի
դրույթներին, կոմունիստական պարտիայի նպատակադրմանը։ Այդ դրույթը
արտահայտված է Լենինի մի լակոնական արտահայտության մեջ՝ «Մարքսիզ-
մի մաքսիմումը = հանրամատչելիության և պարզության մաքսիմումին»։

Մարքսիզմի մաքսիմումը պահանջում է համապատասխան լեզվական
կուլտուրա, խոսքի մաքսիմում մատչելիություն և հստակություն։ Այս ո՛չ մի-
այն Լենինի պահանջն է ամեն մի գրական աշխատողից, այլև հենց իր
ստեղծագործության և բանավոր խոսքի բարձր կուլտուրայի բնորոշ գիծը, որը
և պայմանավորված է իր նպատակադրմամբ, աշխարհհայացքով։ Եվ իրոք, նոր
աշխարհհայեցողության արտահայտման ամենահամապատասխան ոճական
ձևը պարզությունն է։ Լենինին հիացմունք է պատճառել «Կոմունիստական
պարտիայի մանիֆեստի» շարադրման հստակությունը, մատչելիությունը։
«Այս աշխատության մեջ,—գրել է նա,—հանճարեղ պարզությամբ ու ցայտու-
նությամբ ուրվագծված է նոր աշխարհհայեցողությունը...» (Երկեր, հ. 21, էջ
45—46)։ Այդ շարադրանքի պարզությունը պայմանավորված է ինչպես ճըշ-
մարտությամբ, այնպես էլ շարադրողների հստակ մտքերով ու նպատակա-
դրմամբ։ Հիշենք Մ. Գորկուն, որն ասել է. «Ճշմարտությունը պահանջում է
պարզություն, կեղծիքը՝ բարդություն»։

Խոսքի պարզության վերաբերյալ Լենինի մյուս դրույթը վերաբերում է
խոսքի կուլտուրայի և մտածողության փոխհարաբերությանը։ Խոսքի պար-
զությունը բխում է պարզ մտածելուց, այսինքն՝ պայմանավորված է պարզ ու
հստակ մտածողությամբ։ Լենինը սիրում էր կրկնել. «Ով պարզ մտածում է,
պարզ էլ շարադրում է»։ Լենինի համար չկար այնպիսի բան, որ հնարավոր
չլիներ ասել պարզ, հստակ լեզվով։

Խոսքի պարզության, հասկանալիության վերաբերյալ Վ. Ի. Լենինի դրույթ-
ներից հանգում ենք այն եզրակացության, որ դիտավորյալ խճճված, վերացա-
կան, անորոշ ու մթագնած լեզվի օգնությամբ մասսաներից թաքցնում են
ճշմարտությունը, խաբում ժողովրդին։ Այսպիսի լեզուն չի կարելի համարել
կուլտուրապես բարձր, որովհետև ոճական տեսակետից էլ նույնիսկ խիստ
արատավոր է։

Խոսքի բարձր կուլտուրան, որին, ինչպես ասացինք, հատուկ է պարզու-
թյունը, ռևոլյուցիոն մարքսիստների ձեռքին մի զորեղ միջոց է իրենց գաղա-
փարները ժողովրդական մասսաների մեջ տարածելու համար։ Լենինը մի քա-



նի անգամ է նշել, որ մարքսիստները խոսում էին այնպիսի պարզ ու մատ-
չելի լեզվով, որը տարբերվում է հակառակորդների լեզվից։ Նրանց «անարխիս-
տական գաղափարները ծնում են անարխիստական լեզու»,—ասում է Լենինը։

Ոմանք շփոթում են լեզվի պարզությունը պարզունակության հետ, որը
խոսքի ցածր կուլտուրայի հետևանք է։ Լենինի լեզվական բարձր ճաշակը,
նրբանկատությունը դրսևորվել են նաև այս հարցում։ Նա խիստ ձաղկել է լե-
զուն պարզունակ, այսինքն՝ շատ հասարակ, գռեհիկ ու կոպիտ դարձնող ան-
ձանց, որոնք պարզապես մի ծայրահեղությունից ընկնում էին մյուսի մեջ։
Ո՞րն է այս ոճական արատի վտանգավոր կողմը։

Լեզուն դարձնել պարզունակ, պրիմիտիվ, նշանակում է իջնել ցածր աս-
տիճանի վրա կանգնած ընթերցողի մակարդակին, անտեսել զարգացած ըն-
թերցողի ճաշակը և նրան իջեցնել հենց այդ ցածր լեզվական կուլտուրա ունե-
ցողի աստիճանին։ Լենինը պահանջում էր կրթել այդ ցածր պատրաստակա-
նություն ունեցող ընթերցողին, սովորեցնել նրան խոսքի կուլտուրա՝ բարձ-
րացնելով այդ ընթերցողին կրթվածի մակարդակին։ «Արտադրական թերթը,—
գրում է Վ. Ի. Լենինը,—պետք է պոպուլյար լինի՝ միլիոնների համար մատ-
չելիության իմաստով, բայց բնավ պոպուլյարամոլության մեջ չընկնի։ Չիջնել
մինչև չզարգացած ընթերցողի մակարդակը, այլ անշեղորեն— շատ զգույշ
աստիճանականությամբ— բարձրացնել նրա զարգացումը» (Երկեր, հ. 31,
էջ 506)։

«Մենք սիրում ենք մեր լեզուն և մեր հայրենիքը»,—գրում է Լենինը իր
«Վելիկոռուսների ազգային հպարտության մասին» հոդվածում։ Այստեղից
պարզ է դառնում, թե որքան էր հետաքրքրում մեծ հայրենասերին լեզվի մաք-
րության հարցը։ Եվ իրոք, Լենինը ցավ է զգացել՝ տեսնելով, որ իր սիրած
լեզուն երբեմն աղավաղվում, խճողվում է անտեղի օտար բառերով։ Անշնորհք
և օտարամոլ մարդիկ չհասկանալով լեզվի զարգացման ներքին օրինաչափու-
թյունները և առանձնահատկությունները, վերցնում էին այնպիսի օտար բա-
ռեր, որոնց համարժեք ձևերը տարածված էին լեզվի մեջ և ավելի հասկա-
նալի ու մատչելի էին աշխատավոր մասսաներին։

Ո՞ւմ հայտնի չէ Լենինի՝ օտար բառերի դեմ պատերազմ հայտարարելու
կոչը, որը փաստորեն լեզուն մաքրելու, անտեղի օտարաբանությունները դուրս
գցելու, խոսքի կուլտուրան բարձրացնելու արդարացի կոչ էր։ Այս կոչի գա-
ղափարական-քաղաքական հիմքն այն էր, որ լեզուն չխճողվի օտար և դժվար
հասկանալի բառերով ու տերմիններով և չդառնա մասսաներին անմատչելի։
«Խոստովանում եմ,—գրում է Լենինը,—որ եթե օտար բառերի առանց անհրա-
ժեշտության գործածությունն ինձ զայրացնում է (որովհետև դա դժվարաց-
նում է մեր ազդեցությունը մասսայի վրա), ապա թերթերում գրողների որոշ
սխալներն արդեն բոլորովին կարող են համբերությունից հանել» (Երկեր,
հ. 30, էջ 375)։

Առաջնորդը մեզ սովորեցնում է սիրել լեզուն և խիստ պայքարել այն
աղավաղողների դեմ։ Նույնիսկ ավելորդ է հիշատակել, որ ծայրահեղ մաք-
րամոլությունը առավել վտանգավոր է, քան խիստ օտարամոլությունը։

Վ. Ի. Լենինը ուսուցանում է խոսքի կուլտուրան բարձրացնելու բազմա-
թիվ ձևեր։ Երբ հեղինակը կապված է կյանքի հետ և շարադրելիս հիմնվում է
ռնաչ կյանքից առնված փաստերի վրա, ապա նա ապահովում է խոսքի

կոնկրետությունը, դարձնելով համոզիչ ու գրավիչ: Լենինը խորհուրդ էր տալիս վերցնել փաստը, բազմակողմանիորեն ուսումնասիրել, լավ պատկերացում ունենալ այդ փաստի մասին և ապա դրանով համոզել ընթերցողին: Ստեղծելով կյանքի փաստերի լեզու, հեղինակը հեշտությամբ կհասնի իր նպատակին: Սակայն Լենինը պահանջում էր «ճիշտ փաստերի ճիշտ լեզու», այսինքն՝ չշեղվել ռեալ կյանքից և նրան համապատասխան լեզվական միջոցներից: Կենդանի օրինակների հիման վրա, ճիշտ փաստերի ցուցադրմամբ ստեղծել առարկայական լեզու, ապահովել լեզվի, խոսքի կուլտուրայի ամենաէական առանձնահատկություններից մեկը՝ ճշտությունը:

Մարքսիզմ-լենինիզմը ուսուցանում է, որ ճշմարտությունը կոնկրետ է, ուստի կոնկրետ է նաև կյանքից բխող ճշմարիտ լեզուն: Քանի որ խոսքի վերացականության մեջ ճշմարտություն չկա, ուստի և Լենինը հատուկ հոգ էր տանում, որ մամուլն իր էջերում տեղ չտա վերացական, առարկայազուրկ լեզվին, այնպիսի լեզվին, որը բոլորովին զուրկ է ներգործությունից:

Սակայն կան հեղինակներ, որոնք ծայրահեղության մեջ են ընկնում. իրենց գրվածքների, թղթակցությունների մեջ այնքան շատ փաստեր են կուտակում, թեմաներ ու հարցեր ընդգրկում, ստեղծում խճողված խոսք, ցրում են ընթերցողի ուշադրությունը, հետևաբար և իրենց նպատակին չեն հասնում: Այսպիսի մարդկանց մասին Լենինը ասում էր. «Ով չափից դուրս շատ է ապացուցում, նա ոչինչ չի ապացուցում»:

Փաստերի, թեմաների ու բազմաթիվ «հարցերի ցուցակ» (կատալոգ) ստեղծելը վտանգավոր է խոսքի կուլտուրայի համար այն առումով, որ ոչ մի հարց էլ չի կարելի խորությամբ, բազմակողմանիորեն լուսաբանել: Այս դեպքում խոսքը դառնում է մի տեսակ արձանագրություն, հաշվետվություն, որը խիստ վանում է ընթերցողին: Պարզ է, որ բազմաթիվ հարցերի լոկ թվարկումը, մակերեսային լուսաբանումը նպատակասլաց չէ, և Լենինը նման հեղինակներին զգուշացնում էր՝ «չի կարելի ընդգրկել անընդգրկելին»: Նա շատ պարզ և որոշակի ասել է. «Եթե շոշափում ես որևէ հարց, վերլուծիր, լուսաբանիր մինչև վերջ, խորությամբ»:

Ամեն մի ժուռնալիստի, հեղինակի, հռետորի համար շատ կարևոր նշանակություն ունի Լենինի այն պահանջը, որը վերաբերում է լսարանին (աուդիտորիային), ընթերցողի և հեղինակի փոխհարաբերությանը: Այստեղ ևս պետք է ցայտունորեն դրսևորվի հեղինակի հմտությունը, խոսքի կուլտուրայի մակարդակը: Լենինի ցանկությունն էր, որ ամեն մի հեղինակ որևէ նյութ շարադրելիս անպայման նկատի ունենա լսարանը, իր ընթերցողին, նրա պատրաստականությունը, քաղաքական-կուլտուրական մակարդակը: Լեզուն միմիայն այն դեպքում է ազդում ընթերցողի վրա, երբ նյութը շարադրված է նրա մտավոր և հոգեկան կարողություններին համապատասխան ոճով:

Ահա թե ինչ է ասում Լենինը այդ մասին. «...չի կարելի միատեսակ խոսել գործարանային միտինգում ու կազակական գյուղում, ուսանողական ժողովում ու գյուղացիական խրճիթում, III Դումայի ամբիոնից և արտասահմանյան օրգանի էջերից» (Երկեր, հ. 17, էջ 417—418): Ուրեմն, ամեն մի հեղինակ, հռետոր պարտավոր է նկատի ունենալ ոչ թե ընդհանրապես ընթերցողին, ունկնդրին, այլ կոնկրետ ընթերցողին և ունկնդրին:

Ընթերցողի կամ լսողի վրա ներգործելու հմտությունը պայմանավորված



է նրանով, թե հեղինակը կամ հռետորը որքանով է կարողանում ընտրել լեզվի պատկերավոր ու արտահայտիչ ձևեր, որոնք մատչելի ու հասկանալի, դիպուկ ու տպավորիչ լինեն տվյալ դեպքում: Լենինը խոսքի վարպետությունը, հրմտությունը կամ բարձր կուլտուրան համարում էր հենց այն, որ հեղինակը, հռետորը ամենալավ ձևով ազդեն ընթերցողի, լսարանի վրա, դարձնելով խոսքը ավելի համոզիչ, հնարավորին չափ հեշտ յուրացվող, ակնառու և տպավորիչ:

Պարզ ու մատչելի գրելու համար Լենինը խորհուրդ էր տալիս սովորել ժողովրդից, լսել նրան և այնուհետև լավ ուսումնասիրել նյութը, ընտրել փաստեր: Բացի դրանից անհրաժեշտ էր համարում ձեռք բերել խոր գիտելիքներ, մտքերը դարձնել պարզ և հստակ: Լենինը ուշադիր լսում էր բանվորին, գյուղացուն և իր խոսքի մեջ օգտագործում նրանց լեզվամտածողության ձևերը, հատկապես առածներն ու ասացվածքները, որոնք անվանում էր «իմաստուն առած», «հին պապենական իմաստություն», «ռուսական իմաստության առած», «իմաստուն առածի իմաստուն խորհուրդ»: Լենինը առածներ ու ասացվածքներ էր ընտրում նաև ռուս գրողների (Գոգոլ, Սալտիկով-Շչեդրին, Կռիլով, Չեխով) երկերից և իր լեզուն դարձնում ժողովրդի համար մատչելի ու դիպուկ:

Խոսքի կուլտուրայի աստիճանը որոշվում է նաև սեղմությամբ, որը նույնպես զբաղեցրել է Լենինին: Դրա ապացույցը ո՛չ միայն Լենինի գրավոր և բանավոր խոսքն է, այլև բազմաթիվ ուշագրավ և ուսանելի ասույթները, դիտողությունները խոսքը սեղմելու, հակիրճ դարձնելու վերաբերյալ: Խոսքի կուլտուրայի կատարելագործման այս պահանջը ևս բխում է մարքսիզմ-լենինիզմի բուն էությունից և անբաժանելի է խոսքի մյուս հատկանիշներից՝ պարզությունից ու մատչելիությունից: Խոսքը դարձնել դիպուկ, ազդեցիկ, խուսափել միտքը ծանրաբեռնող ավելորդություններից,— ահա Լենինի պահանջը գրական աշխատողներից:

Լենինն այն աստիճան մտահոգված էր խոսքի սեղմության հարցերով, որ խորհուրդ էր տալիս «տասը բառը սեղմելով երկու բառ դարձնել»: Նա խիստ ծաղրելով «36 տողանի պարբերությունները» և անվանելով «ծանր լեզու», պահանջում էր հնարավորին չափ կրճատել ավելորդաբանությունները և սեղմել խոսքը: «Քիչ բառերով շատ բանի մասին խոսելը» նշանակում է խոսքի բարձր կուլտուրա ունենալ:

Խոսքի սեղմության վերաբերյալ Լենինը շատ հետաքրքրական և օգտակար դիտողություններ է անում Պլեխանովին՝ նրա կազմած պարտիայի ծրագրի նախագիծը քննարկելիս: Լենինը Պլեխանովի կազմած ծրագրից դուրս է գցում բոլոր ավելորդ բառերն ու կրկնությունները: Օրինակ, պահանջում էր մի քանի անգամ կրկնվող «շատ թե քիչ լիակատար», «շատ թե քիչ բացահայտ», «շատ թե քիչ ծանր», «մեր ժամանակի ազատագրական շարժումը» և այլ արտահայտություններ դուրս գցել ծրագրի նախագծից, որովհետև դրանք խոսքը երկարացնում են, միտքը ծանրացնում և մշուշապատում, ուստի և թուլացնում ներգործությունը մասսաների վրա: Այստեղ դժվար չէ հասկանալ երկու գաղափարական-քաղաքական ուղղությունների դրսևորումը. մեկը պահանջում է հակիրճ ու պարզ ասել, իսկ մյուսը՝ խոսքը ձգձգելով, անորոշության մեջ է գցում ընթերցողին:

Մի օրինակ ևս։ Պլեխանովը գրում է. «Է՛լ ավելի է մեծանում վարձու աշխատանքի կախումը կապիտալից», իսկ Լենինը գտնում է, որ «վարձու աշխատանքը» պարզ ու կոնկրետ չէ, այլ դրա փոխարեն պետք է պարզապես ասել՝ «բանվորների», կամ՝ Պլեխանովի անբայ, անստորոգյալ նախադասությունները համարելով «մշուշապատ և հեղհեղուկ», շտկում էր, ավելացնում բայ, ստորոգյալ և դարձնում սեղմ ու դինամիկ։ Պլեխանովի լեզվին, ապա և մտածողությանը հատուկ էր, օրինակ, այսպիսի նախադասություն. «...տնտեսական նշանակություն ունեցող խոշոր ձեռնարկությունների ավելացում, փոքրերի թվի նվազում, նրանց դերի նեղացում երկրի հասարակական տնտեսական կյանքում»։ Բայական գոյականներով ծանրաբեռնված այս խոսքը (նեղացում, նվազում, ավելացում) Լենինին թվում էր մեռած, անկենդան ու մշուշապատ, դրա համար էլ տալիս է իր հակիրճ ու հստակ ձևակերպումը. «Մանր արտադրությունը գնալով դուրս է մղվում խոշորների կողմից»։

Չի կարելի, իհարկե, խոսքի այդ տարբեր կառուցվածքը չկապել մտածողության, նպատակադրման հետ։ Լենինի նպատակը միանգամայն պարզ էր ու հասկանալի՝ տալ այնպիսի մատչելի ու հստակ, սեղմ ու կենդանի ձևակերպում, որը գործուն լինի, արտահայտի ճշմարտությունը։ Քանի որ Պլեխանովը չի դիմում խոսքի պարզությանը, մտքի արտահայտման անմիջականությանը, այդ առումով էլ Լենինը նրբորեն նկատում է, որ այդ բառերը դիտավորյալ ընտրված են նրա համար, որ ընթերցողն այն տպավորությունն ստանա, որ իբր բնութագրվող պրոցեսը խիստ չէ, որ որոշակի բանով չի ավարտվում, անփոխարինելի պրոցես է։ Այնուհետև Լենինը գտնում էր, որ Պլեխանովի այդ լեզուն ռևոլյուցիոն պարտիայի լեզու չէ, այլ «ռուսական տարեգրությունների» լեզու։ Չի կարելի ասել, թե Պլեխանովը լավ չգիտեր լեզուն. նա հիանալի գիտեր, բայց, ինչպես ասացինք, նրա լեզուն զուրկ էր պատշաճ մատչելիությունից։

Մեր մամուլում, հրապարակախոսության մեջ լեզվի նման արատներ՝ անորոշություններ, ձգձգումներ, անկենդան ձևակերպումներ այնքան շատ կան, որ Լենինի այդ բոլոր դիտողություններն այսօր շատ մեծ նշանակություն ունեն խոսքի նման արատների դեմ պայքարելու գործում։ Հաճախ ասում ենք «մաքրման ենթարկեցին», «կատարեցին գոմի մաքրման աշխատանքը», «կատարում են անասունների կերակրում», «կովերի խնամքը կատարում են բարեխղճորեն» և այլն։ Մտածողության և խոսքի կառուցման այս ձևը ոչ մի կապ չունի ժողովրդի կենդանի, խոսակցական և ոչ էլ արդի գրական լեզվի հետ։ Հետևելով Լենինին, մենք պետք է նման մեռած, ձգձգված նախադասությունները դարձնենք դինամիկ, պարզ ու հստակ հայերեն։

Խոսքի կուլտուրան կատարյալ չի լինի, եթե պարզության և սեղմության հետ միասին չպահպանվի ճշտությունը։ Խոսքի ճշտությունը, այսինքն՝ բառերի ու արտահայտությունների ճիշտ ընտրությունն ու գործադրումը պայմանավորված են պարզությամբ և սեղմությամբ և հակառակը։ Սակայն առանց խոսքի ճշտության չի կարելի մտքերն ու զգացումները, նրանց նրբերանգները հաղորդել ընթերցողին։ Եվ պատահական չէ, որ Լենինը խոսքի կուլտուրայի հիմնական հատկանիշը համարում է ճշտությունը, բառերի ու արտահայտությունների տեղին, նպատակահարմար ընտրությունը։ Լեզվական ձևերի սխալ գործածությունը շատ էր զայրացնում Լենինին, որը նման դեպքերում բա-



ցականչում էր. «ոճը՞», «օգնեցե՞ք», «ռուսերեն չէ», «ջնջել», «ավելորդ է», «պարզ չէ», «ոճական տեսակետից հարմար չէ», «հրեշավոր է» և այլն։

Խոսքը ճիշտ ու դիպուկ դարձնելու համար անհրաժեշտ է մտքերի տրամաբանական հաջորդականության պահպանում, հիմնական մտքի և երկրորդականի իրարից զատում, հիմնականի շեշտում։ Լենինն այս մասին ևս բազմաթիվ դիտողություններ է արել իր խմբագրական աշխատանքի ընթացքում և ցուցումներ տվել խմբագիրներին։

Լենինը հիանալի կերպով հասկանում էր խոսքի մեջ բայի ոճական մեծ արժեքը, դերը և լավ գիտեր, որ խոսքին կենդանություն ու շունչ տվողը բայն է։ Ինչպես գիտենք, բայերով հարուստ խոսքը գործողություններով լի է և աշխույժ։ Այսպիսի խոսքի հիմքը, աղբյուրը ժողովրդական կենդանի խոսակցական լեզուն է։ Մյուս կողմից հասկանալի է, որ Լենինի նման մեծ դիալեկտիկ մտածողը չէր կարող աչքաթող անել նման ոճական երևույթները, որոնք էական նշանակություն ունեն խոսքի կուլտուրայի բարձրացման համար։

Լեզուն խեղաթյուրում, արհեստական ու անկենդան են դարձնում հանելուկային, դժվարությամբ կռահվող հապավումներն ու կրճատումները։ Մեր կյանքում շատ են կենդանությունից զուրկ հապավումներ, որոնք աստիճանաբար մուտք են գործում գրական խոսքի մեջ և հյութազրկում լեզուն։ Վ. Ի. Լենինը անմիջապես զգացել է խոսքի այս արատավոր կողմը։ Ուսանող նկարիչների հետ զրուցելիս նկատում է մի գիրք՝ Уновис վերնագրով և չի կարողանում կռահել իմաստը. ուսանողները բացատրում են՝ Утвердители нового искусства. «Դե՛, մտածեք, ընկերներ, ինչի՞ նման է դա, у-но-вис, ո՞վ կհասկանա դա»,—բացականչում է Լենինը։

Հայտնի է, որ Լենինը հեգնանքով է խոսում «յուժբում», «կոմչվանստվո» և այլ հապավումների մասին, որոնք մուտք էին գործում լեզվի մեջ։ Լենինը խիստ արհամարհանքով էր խոսում այն ժուռնալիստների մասին, որոնք իրենց թղթակցությունների մեջ տեղ էին տալիս մտացածին կրճատ ձևերին, նրանց հապավումներով խճողված խոսքը համարելով խժդժաբանություն, օլապյուկ (արհեստական լեզու)։ Լենինը պարտիայի VIII համագումարում հայտնել է, որ ինքը չի կարող ընտելանալ նույնիսկ «սովնարխոզ» բառին. այստեղից պարզ է դառնում, թե ինչի նման են մեր ԿԱՖ (կովաբուծական անասնապահական ֆերմա), ՏԱՄ (տեղական արդյունաբերության մինիստրություն), կամ՝ Ուկրկոմունէներգոպրոեկտ և հարյուրավոր նման հապավումներ, որոնք մուտք են գործել ո՛չ միայն պաշտոնական գրագրությունների, այլև մամուլի լեզվի մեջ։ Նման հապավումները ոչ մի կապ չունեն մեծ առաջնորդի պահանջած պարզ ու հստակ լեզվի հետ։

Լեզվի համար չկա ավելի վտանգավոր և խիստ արատավոր բան, որքան ֆրազաբանությունը, որը մեռցնում է խոսքի մեջ ամեն ինչ և խզում առաջացնում խոսքի և գործի միջև։ Դատարկ ֆրազաբանությունը, կեղծ հռետորական բառերն ու արտահայտությունները երբեմն իրենց արտաքին էֆեկտով գայթակղում են միամիտ մարդկանց և մոլորության մեջ գցում։ Քիչ չեն պատահում «դատարկ ֆրազի սիրահարներ», «ֆրազի հերոսներ», «ֆրազներով գործը փչացնողներ»։ Լենինը այդ վտանգավոր է համարում այն պատճառով, որ դրանց հեղինակները սնամեջ խոսքից այն կողմ չեն անցնում, կտրված են կյանքից ու գործից։ «Բոլորի սիրտը խառնում է ընդհանուր ֆրազ-

ներից,—գրել է Լենինը։ Նրանք բյուրոկրատիզմ են ծնում և քաջալերում են այն» (Երկեր, հ. 33, էջ 282)։

Մերկացնելով դասակարգային հակառակորդների ֆրազները՝ Լենինը դրանք համարում էր «խաբուսիկ զգեստավորումներ» և այդ պատճառով էլ կոչ էր անում անողոք վերաբերվել ֆրազի նկատմամբ, մերկացնել, դուրս քշել «ֆրազի ռևոլյուցիոներներին»։ Պրոլետարիատի մեծ առաջնորդը դասակարգային պայքարի անբաժանելի կողմերից մեկը համարում էր ֆրազի դեմ մղած պայքարը, գրելով նույնիսկ «Ֆրազներ և փաստեր», «Ֆրազների վնասի մասին», «Սրբապատկերներով թնդանոթների դեմ, ֆրազներով կապիտալի դեմ» հոդվածները, որոնք խոշոր դեր կատարեցին ֆրազյորներին մերկացնելու գործում։

Դատարկ ֆրազաբանությունից պակաս վնաս չեն տալիս խոսքի շաբլոնը, տրաֆարետը, այսինքն՝ բովանդակազուրկ, մաշված, շարունակ կրկնվող բառերն ու արտահայտությունները։ Լենինը զայրանում էր «ընդհանուր շաբլոնի», «դատարկ շաղակրատության» դեմ, որովհետև խոսքի շաբլոնը, դատարկաբանությունը գործին չեն օգնում, այլ ընդհակառակը, վնասում են։ Շաբլոնը ֆրազների նման ստեղծում է բյուրոկրատիզմ, գործի և խոսքի խզում և թուլացնում ներգործությունը մասսաների վրա։ Պատրաստի ձևակերպումները չեն բխում մտքի ու սրտի ռեալ պահանջներից, որովհետև դրանք կյանքից կտրված են։ Պարզ է, որ ոգի ու շունչ չունեցող խոսքը չի կարող ծառայել նպատակին, ուստի Լենինը պահանջում էր անողոք լինել խոսքի այդ վտանգավոր արատի դեմ։

Ուսումնասիրելով Լենինի հրապարակախոսության լեզվա-ոճական հարուստ գանձարանը, պրակտիկայում կիրառելով նրա դիտողությունները, մենք կարող ենք կատարելագործել մեր խոսքը, դարձնելով այն տպավորիչ, ազդու, հստակ ու գունագեղ։ Ներկայումս առավել ևս զգացվում է լեզվի՝ այդ հասարակական երևույթի, ոճը կատարելագործելու պահանջը։ Բազմերանգ, կենդանի և կոնկրետ ոճ,—մեր գաղափարական, քաղաքական նպատակադրման արտացոլման համար մեր գաղափարական, քաղաքական նպատակադրման արտացոլման հաձա մեր գաղափարական, քաղաքական նպատակադրման արտացոլման հա-

---

# ԼԵՆԻՆԻ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԵՐԵՆ (1917—1920 ԹԹ.)

## Ե. ՏՈՆԵՐՅԱՆ

Նախասովետական ժամանակաշրջանում լենինյան աշխատությունների առաջին անգամ հայերեն թարգմանվել ու բոլշևիկյան մամուլում լույս են տեսել դեռևս ռուսական առաջին ռևոլյուցիայի նախօրյակին։ Սակայն առավել մեծ չափով դրանք հրապարակվել են 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո։

1917 թվականի հայ բոլշևիկյան պարբերական մամուլի էջերում սիստեմատիկաբար լուսաբանվել են Վ. Ի. Լենինի կյանքն ու ռևոլյուցիոն գործունեությունը, ինչպես նաև հրապարակվել նրա բազմաթիվ աշխատությունները, հոդվածները, ճառերը։ Այդ անդրանիկ նյութերի թվին են պատկանում գյուղացիների դեպուտատների համառուսաստանյան համագումարի դելեգատներին ինդած Իլյիչի բաց նամակը, ինչպես և «Ընկեր Ն. Լենինի մասին», «Մի երես ռուս սոցիալ-դեմոկրատական կուսակցության պատմությունից» և «Լենինը և Տաճկահայաստանը» հոդվածները, որոնք լույս են տեսել «Պայքար» (1917 թ., №№ 39 և 41) և «Բանվորի կռիվը» (1917 թ., №№ 1 և 2) թերթերում։ Նրանց մեջ մանրամասնորեն շարադրված է մեծ առաջնորդի գործունեությունը՝ սկսած 1895 թվականի Պետերբուրգի «Պայքարի միությունից» մինչև 1917 թվականի հունիսյան օրերը, ինչպես նաև կալվածատիրական հողերն անհապաղ գրավելու, իմպերիալիստական պատերազմին վերջ տալու, ամբողջ իշխանությունը Սովետներին հանձնելու և ազգային հարցի մարքսիստական ծրագիրն իրագործելու խնդիրները։

1917 թվականի հուլիսյան դեպքերից հետո ուժեղացան հալածանքներն ու պրովոկացիոն գործողությունները բոլշևիկների, Վլադիմիր Իլյիչ Լենինի դեմ։ Ժամանակավոր կառավարությունն արգելել էր «Պրավդա» թերթի հրատարակումը, այդ իսկ պատճառով «Նովայա ժիզն» թերթի խմբագրությանն ուղարկած իր նամակում Վ. Ի. Լենինը դիմակազերծ է անում ռևոլյուցիայի ստոր կրպարտիչներին։ Այս նամակն իր ժամանակին լույս է տեսել երկրի մի շարք թերթերում, այդ թվում նաև Բաքվի «Սոցիալ-դեմոկրատ»-ում (1917 թ., № 12)։ Հետագայում ռեպրեսիաները ո՛չ միայն չդադարեցին, այլ ավելի սուր բնույթ ստացան։ Ժամանակավոր կառավարությունը Լենինին ձերբակալելու հրաման արձակեց։ Այդ պայմաններում 1917 թվականի հուլիսի 28-ին հրապարակված նոր նամակում («Նամակ «Пролетарское дело»-ի խմբագրությանը») Լենինը, մերկացնելով կոնտռռևոլյուցիայի ստոր մեքենայությունները, ցույց է տալիս թե ինչու նա չի ենթարկվել կառավարության հրամանին և ներկայացել բուրժուական դատարան։ Այդ նամակի համառոտագրությունը լույս է տեսել «Սոցիալ-դեմոկրատ»-ում (1917 թ., № 13)՝ «Ընկեր Լենինը ինչո՞ւ է խուսափում դատից» վերնագրով։ Շուշի քաղաքում լույս տեսնող բոլշևիկյան «Նեցուկ» թերթում (1917 թ., № 5) ամբողջությամբ լույս է տեսել նաև տրամաբանական մեծ ուժով գրված «Լոզունգների առթիվ» լենինյան հոդվածը։

Սկզբունքային հարցերի վերաբերյալ լուրջ տարաձայնությունների պատճառով «Պայքար» թերթից հեռացած բոլշևիկները (Ստ. Շահումյան, Ա. Միկոյան, Ս. Խանոյան, Ա. Մռավյան, Ա. Ամիրյան, Ա. Կարինյան և այլն) 1917 թվականի հունիսին հիմնադրում են «Բանվորի կռիվը» տպագիր օրգանը։ Նրա 68 համարներում պետեղված բազմաթիվ հոդվածների թվում 1917—1918 թվականներին հրապարակվել են նաև Վ. Ի. Լենինի մի շարք հոդվածներ։ Բարձր գնահատելով 1917 թվականի հոկտեմբերին առանձին բրոշյուրով լույս տեսած Վ. Ի. Լենինի «Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ» աշխատության մեջ առաջ քաշված հարցերը, «Բանվորի կռիվը» թերթի խմբագրությունը գլուխ առ գլուխ թարգմանաբար այն տպագրել է թերթի 1917 թվականի նոյեմբերյան ինը համարներում։

Դեռ 1917 թվականի հուլիսյան դեպքերից հետո Վ. Ի. Լենինը ընդհատակում գրում է և նոյեմբերին առանձին գրքով հրապարակում «Պե-

տություն և ռևոլյուցիա» նշանավոր աշխատությունը, որում նա պարզացրել է պետության մասին մարքսիստական ուսմունքը և նշել այն հիմնական խնդիրները, որոնք ծառանալու են պրոլետարիատի առջև ռևոլյուցիայի հաղթանակի ժամանակաշրջանում: Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո լենինյան այս աշխատության առաջաբանը և առաջին երկու գլուխները լույս են տեսել «Բանվորի կռիվը» թերթում (1918 թ., №№ 17, 18 և 19):

Նորաստեղծ Սովետական պետությունն առաջին իսկ օրերից ձեռնամուխ եղավ ազգային հարցի մարքսիստական ծրագրի իրականացմանը: Այդ ժամանակաշրջանի առաջին խոշոր փաստաթղթերից է «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որին հետևում է 1917 թվականի դեկտեմբերի 30-ին Վ. Ի. Լենինի ստորագրությամբ հրապարակված «Թուրքահայաստանի մասին» դեկրետը, որ լույս է տեսել «Բանվորի կռիվը» թերթում (1918 թ., № 17):

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթարշավի պայմաններում Սովետական պետության առաջ ծառացած էին շատ դժվարին պրոբլեմներ, այդ թվում՝ երկրի պաշտպանության, Սովետական կանոնավոր բանակի ստեղծման խնդիրները: «Բանվորի կռիվը» (1918 թ., № 23) հրապարակել է Լենինի նամակը՝ հասցեագրված բանակի զորացրման գծով համաբանակային համագումարին, ուր վստահ կերպով ասվում է, որ Սովետական կառավարությունն ի վիճակի կլինի երկրից դուրս վռնդելու իմպերիալիստներին և ջախջախելու ներքին հակառևոլյուցիոն ուժերին:

Ինչպես ամենուրեք, այնպես էլ Անդրկովկասում, բուրժուական ու մանրբուրժուական պարտիաները 1918—20 թվականներին հանդես էին գալիս բոլշևիկների հետ համընթաց քայլող բանվորների և գյուղացիների դեմ: Անհրաժեշտ էր դիմակազերծ անել հակառևոլյուցիոն այդ պարտիաներին և պարզաբանել բոլշևիկների վերաբերմունքը երկրի քաղաքական ու տնտեսական խնդիրների նկատմամբ: Այդ հարցերի պատասխանը հիանալիորեն շարադրված էր Բաքվի «Բանվորի խոսք» բոլշևիկյան թերթում (1918 թ., № 7) տպագրված Վ. Ի. Լենինի «Քաղաքական պարտիաները Ռուսաստանում և պրոլետարիատի խնդիրները» աշխատության մեջ:

1918 թվականի փետրվարի 23-ին Համառուսաստանյան Կենտգործկոմի նիստում Վ. Ի. Լենինը հանդես եկավ Գերմանիայի հետ նոր պայմաններով հաշտություն կնքելու հարցի վերաբերյա զեկուցումով. այդ ելույթի համառոտ հաշվետվությունը լույս է տեսել բոլշևիկների Կովկասյան և Թիֆլիսի կոմիտեների օրգան «Բանվոր» թերթում (1918 թ., № 4)՝ «Ընկեր Լենինի ճառի մասին» վերնագրով: Վերոհիշյալ թերթում (1918 թ., № 7) «Նամակ ազգային հարցի մասին» խորագրի տակ տպագրվել է Վ. Ի. Լենինի 1913 թվականի դեկտեմբերի 6-ին գրած նամակը՝ հասցեագրված Ստ. Շահումյանին: Այս նամակի հրապարակումը 1918 թվականի գարնան սկզբին ակտուալ էր այն պատճառով, որ, ինչպես երկրի մյուս վայրերում, այնպես էլ Անդրկովկասում, նացիոնալիստական ու մանրբուրժուական պարտիաները տարածում էին հերյուրանք, որ իբր բոլշևիկները դեմ են ազգերի ինքնորոշմանը, ֆեդերացիային և այլն:

Վ. Ի. Լենինն իր մեջ մարմնավորում և զուգակցում էր ռևոլյուցիոն հանճարեղ տեսաբանի, գործնական, առօրյա խնդիրներն ըմբռնելու ու արագորեն լուծելու խոշորագույն գործչի կերպարը: Այսպես, Բաքվում 1918 թվականի ապրիլից լույս տեսնող «Տեղեկատու» թերթը (№ 55) գրել է, որ 1918 թվականի ամռանը, Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի համար տնտեսական ու ռազմական ամենածանր ժամանակաշրջանում, Վ. Ի. Լենինը կարողացել է գտնել ազատ ժամ և ճառով հանդես գալ ինտերնացիոնալիստ-ուսուցիչների համառուսաստանյան համագումարում: Հակիրճ, բայց բովանդակալից այդ ճառի մեջ շարադրված են ուսուցիչների առաջ ծառացած խնդիրները, որոնք պրոլետարիատի հետ միասին հարթելու են սոցիալիզմի կառուցման դժվարին ուղին:

Մոսկվայի պրոֆմիությունների և ֆաբրիկա-գործարանային կոմիտեների IV կոնֆերանսում 1918 թվականի հունիսի 27-ին ընթացիկ մոմենտի մասին կարդացած զեկուցման մեջ Լենինն ընդգծել է, որ շարունակվող իմպերիալիստական պատերազմի հետևանքով Եվրոպայի և Ասիայի ժողովուրդների համար ստեղծվել են անտանելի պայմաններ: Առավել ծանր է Ռուսաստանի կացությունը, որի հաղթահարման համար Սովետական պետությունը ձեռնարկում է գործնական միջոցներ: Հայերեն «Կոմունիստ» (Մոսկվա) թերթը (1918 թ., № 3) իր ընթերցողներին ծանոթացրել է ինչպես այդ, այնպես էլ Վ. Ի. Լենինի «Մարգարեական խոսքեր» խորագրով հոդվածի հետ:

Բաքվի Կոմունայի օրգան «Տեղեկատուն» քայլ առ քայլ լուսաբանել և իր ընթերցողներին մանրամասնորեն ծանոթացրել է 1918 թվականի ամռանը Սովետական Ռուսաստանի համար ստեղծված ներքին ու միջազգային բարդ իրադրության մարքսիստական այն խոր վերլուծության հետ, որ տվել է Ժողկոմխորհի նախագահ Վ. Ի. Լենինը: Թերթը հայտնել է (1918 թ., № 80), որ գերմանական կառավարությունը 1918 թվականի հուլիսի 14-ին Սովետական կառավարությանն ուղարկած նոտայով պահանջել էր Մոսկվա թողնել զինվորական համազգեստով գերմանական մի գումարտակ, իբր թե պաշտպանելու գերմանական դեսպանության շենքը, որի առթիվ Վ. Ի. Լենինը Համառուսաստանյան Կենտգործկոմի հուլիսի 15-ի նիստում հանդես էր եկել մի հայտարարությամբ: Դրա մեջ ընդգծված է, որ այդ պահանջը չի բխում գերմանական կանցլերի ռայխստագում արած հայտարարությունից և նուրբ ձևով հասկացրել է, որ գերմանական կառավարության այդ նոր քայլը հավասարազոր է երկրի օկուպացիային, սպառնում է Ռուսաստանի անկախությանը:

«Տեղեկատու»-ն 1918 թվականի հուլիսի 27-ի համարում Վ. Ի. Լենինի, Յա. Սվերդլովի և Վ. Ավանեսովի ստորագրություններով հրապարակել է նաև «Ընկ. Լենինի Համառուսական Կենտրոն. գործադիր կոմիտեի 1918 թ. հուլիսի 15-ի նիստին հավանություն գտած դիմումը բանվորներին, գյուղացիներին և կարմիրբանակայիններին», որի մեջ շարադրված է Վ. Ի. Լենինի վերոհիշյալ հայտարարության համառոտագրությունը և ընդգծված է գերմանական իմպերիալիստների հնարավոր ոտնձգությունների դեպքում սոցիալիստական Հայրենիքը պաշտպանելու անհրաժեշտությունը:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթական երթը, լենինյան լուսավոր գաղափարները համակել էին Եվրոպայի, Ամերիկայի և Ասիայի աշխատավորներին, թափանցել բազմամիլիոն բանվորների, հասարակ մարդկանց սրտերը: Նրանցից շատերը հեռանում են սոցիալ-դեմոկրատական պարտիաներից և միավորվում նորաստեղծ կոմունիստական պարտիաների մեջ: Լենինյան հանճարը համախմբում է բոլոր կոմունիստներին և 1919 թվականի մարտին ստեղծում Կոմինտերնը: Անգնահատելի է նրա դերը ամբողջ աշխարհում ռևոլյուցիոն շարժումը ծավալելու, իմպերիալիզմի դեմ ճնշվածներին ոտքի հանելու, Երկրորդ Ինտերնացիոնալի դավաճաններին մերկացնելու գործում: Այդ խնդիրներն է շոշափում «Կարմիր դրոշակ»-ում (1919 թ., № 4) հրապարակված Վ. Ի. Լենինի «Երկրորդ Ինտերնացիոնալը և նրա տեղը պատմության մեջ» բովանդակալից աշխատությունը:

Ոգեշնչված Սովետական իշխանության հաղթանակի համար Ռուսաստանի բանվորների և չքավորագույն գյուղացիության մղած պայքարի հաջողություններով, Անդրկովկասի աշխատավորները նույնպես, բոլշևիկների ղեկավարությամբ, 1918—1920 թվականներին շարունակում էին հերոսական պայքարը մենշևիկյան, դաշնակցական և մուսավաթական կառավարությունների դեմ:

Բոլշևիկ Արշ. Մելիքյանի խմբագրությամբ 1918—1919 թվականներին Երևանում լույս տեսնող «Խոսք» թերթը, որը բազմաթիվ հարցերի հետ միասին լուսաբանել է նաև Վ. Ի. Լենինի գործունեությունը և շարադրել նրա մի քանի աշխատությունների բովանդակությունը: Այս թերթում (1918 թ., № 3), օրինակ, պատերազմի և հաշտության հարցերի վերաբերյալ Վ. Ի. Լենինի 1914—1918 թվականներին գրած հոդվածների և արտասանած ճառերի համառոտ բովանդակությունը շարադրելուց բացի հանգամանորեն խոսվում է նաև «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա» աշխատության մասին:

«Ն. Լենին. «Պետություն և հեղափոխություն» վերնագրի տակ «Խոսք»-ում (1918 թ., №№ 8 և 9, 1919 թ., №№ 1, 2, 3, 4, 5 և 7) գլուխ առ գլուխ ազատ կերպով շարադրել է «Պետություն և ռևոլյուցիա» գրքի բովանդակությունը: «Վերջին ժամ», «Երրորդ Ինտերնացիոնալը» և «Ինտերնացիոնալ» վերնագրերի տակ «Խոսք»-ում (1919 թ. մարտյան համարներում) հրապարակված նյութերում շարադրված են Կոմինտերնի առաջին կոնգրեսում Վ. Ի. Լենինի բացման ճառի ու «Բուրժուական դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մասին» թեմայով նրա զեկուցման հիմնական բովանդակությունը: 1919 թվականի մայիսի վերջին հունգարական բանվորներին հղած Վ. Ի. Լենինի ողջույնի վերջին մասը՝ «Հաստատ եղեք» վերնագրով, հրապարկվել է ՌԿՊ Աստրախանի կոմիտեի օրգան, Ա. Խումարյանի խմբագրությամբ լույս տեսնող «Կարմիր բանվոր» թերթում (1919 թ., № 9):

Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի ամենածանր օրերին, 1918 թվականի ամռանը և աշնանը Վ. Ի. Լենինը հանդես է եկել երկրի ներքին ու արտաքին դրության խնդիրներին վերաբերող և կառավարության տեսակետները պարզաբանող ելույթներով: Ամերիկյան «Յունայտեդ Պրես» գործակալության թղթակցի հարցերին Վ. Ի. Լենինը տվել է որոշակի, Սովետական Ռուսաստանի ժողովուրդների շահերից բխող պատասխաններ (տե՛ս «Պատասխան ամերիկյան ժուռնալիստի հարցերին»): Դրանք լույս են տեսել «Կարմիր բանվոր»-ում (№№ 14, 15 և 16)՝ «Ինչ պատասխանեց Լենինը բուրժուաներին» վերնագրով: Այդ նույն թերթում (№ 19) «Ընկեր Լենինի առաջին դասը» և «Ընկ. Լենինի ճառը անկուսակցականներին» խորագրերի տակ շարադրվել են Կոլչակի դեմ տարած հաղթանակի առթիվ աշխատավորներին հղած Լենինի նամակը, ինչպես և Մոսկվայի անպարտիական բանվորա-կարմիրբանակային կոնֆերանսում նրա արտասանած ճառը, որոնց մեջ շոշափվում են ռեսպուբլիկայի ռազ-

մական դրության, Կարմիր Բանակի ստեղծման ու նրա հաղթանակի, ինտերվենտների դեմ պայքարն է՛լ ավելի ուժեղացնելու խնդիրները:

«Պահակ» բոլշևիկյան թերթը պարբերաբար հոդվածներ է զետեղել Սովետական Ռուսաստանի տնտեսական հաջողությունների, քաղաքացիական կռիվներում ձեռք բերած հաղթանակների մասին: Բնորոշ են, օրինակ, «Լենինը սուբոտնիկների մասին» (1920 թ., № 1) և «Լենինի ճառը» (1920 թ., № 23):

1920 թվականի հուլիս-օգոստոս ամիսներին տեղի ունեցած Կոմինտերնի երկրորդ կոնգրեսում ազգային ու գաղութային հարցի վերաբերյալ Լենինի կարդացած զեկուցման համառոտագրությունը՝ «Գաղութային և ազգային հարցերին վերաբերող սկզբնական նախագիծ» վերնագրով լույս է տեսել Բաքվի **«Կոմունիստ»-ում (1920 թ.,** №№ 57 և 58): Վլադիմիր Իլյիչի մի այլ աշխատություն՝ «Ձախության երեխայական հիվանդությունը կոմունիզմում» վերնագրի տակ նույնպես լույս է տեսել հիշյալ թերթում (1921 թ., №№ 149—162):

Անդրկովկասի աշխատավորները բոլշևիկյան կազմակերպությունների գլխավորությամբ 1919—1920 թվականներին շարունակում էին հերոսական պայքարը երկրամասում Սովետական կարգերի հաստատման համար: 1920 թվականի ապրիլին այդ պայքարը Ադրբեջանում պսակվեց հաղթանակով: Նույն թվականի մայիսին բոլշևիկների գլխավորությամբ Հայաստանի աշխատավորների հերոսական ապստամբության պարտությունից հետո նոր ուժով ծավալված ռևոլյուցիոն պայքարը հաղթանակ բերեց հայ ժողովրդին: 1920 թվականի նոյեմբերի 30-ին Վ. Ի. Լենինին հղած իր հեռագրում Հայաստանի Ռևկոմի նախագահ Ս. Կասյանը հաղորդել էր Հայաստանում Սովետական կարգերի պատմական հաղթանակի մասին: Նույն թվականի դեկտեմբերի 2-ին Կասյանին հասցեագրած հեռագրում Վ. Ի. Լենինը գրել է՝ «Հանձինս ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»: Այդ ողջույնը տպագրվել է «Կարմիր աստղ» (Թիֆլիս), «Կոմունիստ» (Բաքու), «Կարմիր աստղ» (Կրասնոդար) և «Կոմունիստ» (Երևան) թերթերում:

Լենինյան գաղափարները հայ իրականության մեջ թափանցել են նաև բրոշյուրների ու գրքերի միջոցով: 1918—1920 թվականներին Մոսկվայում լույս է տեսել, օրինակ, Վ. Ի. Լենինի «Կարլ Մարքս — համառոտ կենսագրություն», «Թեզիսներ բուրժուական և պրոլետարական դեմոկրատիայի մասին», «Ի՞նչ պետք է լինի մեր կուսակցության անունը», «Երրորդ Ինտերնացիոնալի տեղը պատմության մեջ», «Իմպերիալիզմը, որպես կապիտալիզմի վերջին էտապ», «Քաղաքական կուսակցությունները Ռուսաստանում և պրոլետարիատի վերաբերմունքը», «Նամակ ամերիկյան բանվորներին», «Պետություն և հեղափոխություն», «Վ. Ի. Լենին (Ուլյանով) համառոտ կենսագրություն» և այլն:

Վ. Ի. Լենինի աշխատությունների գրավոր պրոպագանդային զուգակցվում էին և բանավոր խոսքը, դասախոսությունները, զեկուցումները: 1917—1920 թվականների ընթացքում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները հաճախ էին կազմակերպում դասախոսություններ, ուր պարզաբանվում էին լենինյան գաղափարները: «Բանվորի խոսք» շաբաթաթերթի «Կուսակցական կյանք» բաժնում (1918 թ., № 4), օրինակ, հաղորդվել է, որ Ա. Միկոյանը Բաքվի Բալաջարիի ակումբի շենքում 1918 թվականի փետրվարի 21-ին կարդացել է «Կպահե՞ն արդյոք բոլշևիկները պետական իշխանությունը իրենց ձեռքում» թեմայով դասախոսությունը, որը մեծ ուշադրությամբ ու գոհունակությամբ լսել են բազմաթիվ բանվորներ ու կանայք: Դասախոսությունից հետո բանվորները ձեռքից ձեռք էին խլում Վ. Ի. Լենինի «Կպահե՞ն արդյոք բոլշևիկները իրենց ձեռքում պետական իշխանությունը» բրոշյուրը:

Վ. Ի. Լենինի աշխատությունների 1917—1920 թվականներին կատարած թարգմանությունների ձեռագրերը չունենալու պատճառով դժվար է որոշել դրանց թարգմանիչների ով լինելը: Սակայն միանգամայն ակներև է, որ լենինյան գործերը թարգմանել են մի շարք ականավոր բոլշևիկներ, մասնավորապես՝ Ա. Միկոյանը, Ս. Խանոյանը, Վ. Տերյանը, Ռ. Դաշտոյանը, Ա. Կարինյանը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Հ. Կարախանյանը և ուրիշներ:

Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելուց հետո, 1920—1959 թվականներին Վ. Ի. Լենինի աշխատություններից հայերեն լույս է տեսել 321 անուն գիրք՝ շուրջ երկու միլիոն ընդհանուր տիրաժով: Լույս է տեսել Վ. Ի. Լենինի Ընտիր երկերը (6 հատորով), իսկ 1941—1959 թվականներին՝ Երկերի չորրորդ հրատարակության 37 հատորները:

Լենինյան աշխատություններով դաստիարակվել են ամբողջ սերունդներ. այդ ստեղծագործությունները շարունակում են հուզել, ներգործել, ոգեշնչել նաև ներկա, ինչպես և գալիք սերունդներին, որովհետև լենինյան գաղափարները հավերժ կենդանի են:

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԽՐՈՆԻԿԱ

## ԱՌԱՋՆՈՐԴԻ ՕՐԻՆԱԿՈՎ

*Վերջերս ՀԿՊ Շամշադինի շրջկոմն անցկացրեց սեմինար՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 90-ամյակին: Սեմինարին ներկա էին ավելի քան 150 հոգի. պարտիական և կոմերիտական սկզբնական կազմակերպությունների քարտուղարներ, կոլտնտեսությունների վարչությունների, գյուղսովետների գործկոմների նախագահներ, պրոպագանդիստներ: Սեմինարի մշակմանն էին ներկայացված Վ. Ի. Լենինի կյանքն ու աշխատանքային գործունեությունն արտացոլող մի շարք կարևորագույն հարցեր, որոնք ամփոփված էին «Լենինյան տիպի գործչի բնորոշ գծերը» թեմայի մեջ: Թեման մեծ հետաքրքրություն առաջացրեց սեմինարի մասնակիցների մոտ: Խոսելով Վ. Ի. Լենինի մասին, նրանք կոնկրետ օրինակներ էին բերում իրենց աշխատանքային գործունեությունից և դրանց հիման վրա ցույց տալիս լենինյան տիպի աշխատողի բնորոշ հատկությունները:*

*Առաջինը խոսք վերցրեց Ղրղի գյուղի պարտիական սկզբնական կազմակերպության բյուրոյի քարտուղար Ռ. Շահնազարյանը: Նա խոսեց լենինյան տիպի աշխատողին բնութագրող այնպիսի հատկությունների մասին, ինչպիսիք են նվիրվածությունը ժողովրդին և անսահման հավատը նրա նկատմամբ: Թերթելով Լենինի հերոսական կյանքի, գործունեության էջերը, Ռ. Շահնազարյանը ուշագրավ փաստերով նկարագրեց առաջնորդի անցած ուղին, նրա կյանքը, որն ամբողջովին նվիրված էր աշխատավոր ժողովրդի ազատագրության գործին:*

*— Մենք,— ասաց նա,— լենինյան ճանապարհով ընթանում ենք դեպի կոմունիզմ. այժմ իրականացնում ենք յոթնամյակի հոյակապ խնդիրները: Բայց անհանդուրժելի է մեր աշխատանքում թեկուզ չնչին շեղումներ լենինյան նորմերից, որ մենք երբեմն թույլ ենք տալիս: Քաշքշուկը, բյուրոկրատիզմը, անհետևողականությունը վնասում են ժողովրդի շահերին, մինչդեռ մենք դրանց դեմ չենք պայքարում, ինչպես այդ անում էր Լենինը:*

*Սկզբունքայնությունն աշխատանքում և անհաշտությունը թերությունների նկատմամբ հարցի մասին ելույթ ունեցավ Թովուզի գյուղական Սովետի Գործկոմի նախագահ Հ. Հայրապետյանը: Լենինը նշում էր, որ սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է, որի օգնությամբ նա ռևոլյուցիայի մարտերում վերցնում էր նոր, անառիկ դիրքեր: Սկզբունքային քաղաքականության շնորհիվ Լենինը չենթարկվեց ռեակցիայի տարիներին առաջացած խուճապին և բարձր պահեց պարտիականության դրոշը: Այն պահին, երբ II Ինտերնացիոնալի դրոշը խոնարհվեց կապիտալի առջև, Լենինը դարձյալ մեկն էր, որ իր սկզբունքայնությամբ հակադրվեց սոցիալ շովինիզմին և պացիֆիզմին, մերկացրեց դեղին ինտերնացիոնալի պարագլուխների դավաճանությունը:*

*Վ. Ի. Լենինը սովորեցնում էր անհաշտ լինել թերությունների նկատմամբ, ղեկավարել կոնկրետ, ամրապնդել կարգապահությունը, լինել սկզբունքային: Այնուհետև Հ. Հայրապետյանը լենինյան օրինակի ոգով անդրադառնում է իրենց աշխատանքներին: Մի՞թե թերությունների նկատմամբ անտարբեր վերաբերմունքի հետևանքը չէ, որ Թովուզի կոլտնտեսությունը տևականորեն ետ է մնում արտադրության մի շարք կարևոր բնագավառներում, խախտվում է աշխատանքային կարգապահությունը, թույլ են տրվում չարաշահումներ, հանրային ունեցվածքի շռայլումներ:*

*Ղրղի գյուղի կոլտնտեսության նախագահ Գ. Բաբայանը և շրջսովետի գործկոմի քարտուղար Ծ. Մասինյանը խոսեցին նորի ընկալման նախաձեռնության, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցման մասին: Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի գործունեության ներկա ոճը լենինյան գծի իրականացման փայլուն օրինակ է: Արդյունաբերության, գյուղատնտեսության, ժողովրդական կրթության և այլ բնագավառներում ՍՄԿՊ Կենտկոմի համարձակ միջոցառումների կենսագործումը բարձրացրեց տեղական աշխատողների նախաձեռնությունը նոր խնդիրների լուծման*

ապարեզում։ Մենք հրաժարվեցինք աշխատանքի հին մեթոդներից, սկսեցինք կիրառել ավելի առաջավոր ձևեր ու մեթոդներ, որոնց շնորհիվ արտադրության և կուլտուրայի բնագավառում հասանք լուրջ հաջողությունների։ Սակայն այս բոլորի հետ միասին դեռ քիչ ուշադրություն ենք հատկացնում մարդու կուլտուրային ու կենցաղին վերաբերող հարցերին։ Դեռևս մեզ մոտ կան այնպիսի ընկերներ, որոնք կարծում են, թե կարելի է մնալ առանց բարեկարգ ճաշարանների, բաղնիքների, ծննդատների, մանկամսուրների, բուժական և այլ կարևոր կենցաղային հիմնարկների։ Կենցաղի և կուլտուրայի հարցերը պետք է մտահոգեն լենինյան տիպի աշխատողին։

Աշխատանքում և անձնական կյանքում լենինյան պահանջկոտությանն էր նվիրված շրջսովետի գործկոմի նախագահ Ս. Հարությունյանի ելույթը։ Ցայտուն օրինակներով լուսաբանելով Վ. Ի. Լենինի կյանքի և աշխատանքի փայլուն էջերը, նա միաժամանակ ցույց տվեց, որ մի շարք հարցերում պարտիական և սովետական աշխատողները հանդես չեն բերում լենինյան պահանջկոտություն, որի հետևանքով առանձին հիմնարկություններում ու կոլտնտեսություններում չկա անհրաժեշտ կարգապահություն։ Կապի գրասենյակում չի վերանում տեական քաշքշուկը, շրջսպառկոոպը բախտի քմահաճույքին է թողել աշխատավորների մատակարարման գործը, գյուղական Սովետների աշխատանքներում կան թափթփվածություն և այլ երևույթներ, որոնք խորթ են աշխատանքի լենինյան ոճին։

Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ Ի. Միրզոյանը խոսեց լենինյան բարոյական վեհ գծերի մասին։ Կանգ առնելով կոմունիստական բարոյականության առանձին հարցերի և հին բարքերի մնացուկների՝ խուլիգանության, հարբեցողության, չարաշահումների, անբարոյականության և այլ երևույթների վրա, նշեց վերջիններիս դեմ անհաշտ պայքար մղելու անհրաժեշտությունը։

Վերջում ելույթ ունեցան շրջանային թերթի խմբագիր Ս. Փալանդուզյանը, Հախում գյուղի միջնակարգ դպրոցի դիրեկտոր Ի. Մանուչարյանը, որոնք խոսեցին ղեկավարության լենինյան կոնկրետության և խոր գործիմացության, ռևոլյուցիոն զգոնության մասին։

Սեմինարի աշխատանքներն ամփոփեց պարտիայի շրջկոմի քարտուղար Կ. Ուզումյանը։

---




Սրբագրիչ՝ Ա. ԱԱՐՅԱՆ,
թողարկիչ՝ Բ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան
ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел 2—56—92

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. (գլխավոր խմբագիր), ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

ՎՖ 07996 Պատվեր 948 Տիրաժ 10400 Գինը 2 ռ. 50 կ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ։ Ստորագրված է տպագրության 5/IV 1960 թ.։

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։


